## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։






# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1 ՀՈՒՆՎԱՐ. 1968
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении




Բովանդակություն

# Содержание



# ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ

Ժողովրդական տնտեսության կարգացման ներկա վիճակն ակնհայտորեն ցույց է տալիս, որ սոցիալիստական էկոնոմիկայի պլանավորման և կառավարման կարգը հիրավի չէր համապատասխանում սոցիալիստական մեծ առաջընթացի պահանջներին: Ահա թե ինչու հարկ եղավ անցնելու տնտեսական նոր ռեֆորմի, որն այլ խնդիրների լուծման հետ մեկտեղ, լայն ասպարեզ է բացում տնտեսական օրենքների գործադրման և տնտեսավարների անհատական նախաձեռնության կարգացման համար: Ինչ խոսք, որ դա մեծապես կնպաստի մեր տնտեսության բոլոր ճյուղերի համամասնական ու արդյունավետ կարգացմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներում ժողովրդական տնտեսության կառավարման տնտեսական բնույթի մեթոդների կատարելագործման հարցը սերտորեն առընչվում է կառավարման տերիտորիալ սկզբունքից՝ ճյուղային կառավարման անցնելու հետ: Այժմ մինիստրությունների միջոցով արդյունաբերության ճյուղային կառավարումն իրագործվում է մի կողմից կառավարման կենտրոնացմամբ, իսկ մյուս կողմից՝ ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության կարգացմամբ:

Ժողովրդական տնտեսության միասնական պլանն է, որ ուղղություն է տալիս բոլոր ձեռնարկությունների ու կազմակերպությունների գործունեությանը: Հենց այս առումով մեծագույն նշանակություն է ստանում տնտեսության պլանավորման մեթոդների կատարելագործման հարցը, պլանավորում, որի կարևոր նախապայմաններից է՝ առանձին ձեռնարկությունների, ճյուղերի և ամբողջ ժողովրդական տնտեսության միասնական պլանի ցուցանիշների ճիշտ կոորդինացումը, պլանավորման իրավասությունների հստակ սահմանազատումը և դրանց փոխադարձ կապերը: Մյուս կողմից, ժողովրդական տնտեսության և նրա առանձին օղակների կառավարման հաջողությունը մեծապես պայմանավորված է առանձին ձեռնարկությունների աշխատանքային կապով, դրանց գործունեությանը տրվող համապետական նշանակությամբ: Ինքնին հասկանալի է, որ տնտեսության առանձին օղակները կարող են պլանաչափ գործել, եթե անշեղ կիրառվի յուրաքանչյուրի գիտականորեն հաստատված աշխանքային ռեժիմը:

Անհրաժեշտ է նշել, որ ժողովրդական տնտեսությունը բազմաթիվ կազմակերպությունների ու ձեռնարկությունների գումարը չէ լոկ, այլ փիթխարի մի ամբողջություն, որի կարգացումն ընթանում է սոցիալիզմի տնտեսական օրենքներով: Պլանավորման մեջ այդ օրենքների պահանջների կենսագործումը որոշ-

վում է կենտրոնացած պլանավորմամբ: Ահա թե ինչու մեր կուսակցությունը
մեծ նշանակություն տալով սոցիալիստական ձեռնարկությունների նախաձեռ-
նության կարգացմանը, անհետաձգելի խնդիր է համարում՝ ավելի խոր թափան-
ցելու տնտեսական օրենքների էության մեջ, ճանաչելու դրանց գործողության
մեխանիզմը, պլանավորման պրակտիկայում այդպիսիք օգտագործելու նպա-
տակով: Այս առումով իրոք անհրաժեշտ է դառնում կենտրոնական պլանավո-
րող օրգանների և ձեռնարկությունների իրավասությունների, ինչպես և դրանց
հարաբերությունների սահմանազատման հարցը տնտեսական կառավարման
ոլորտում:

Հայտնի է, որ 50-ական թվականներից սոցիալիստական շինարարության
պրակտիկայում սկսեցին կանգվածաբար կիրառվել ապրանքային արտադրու-
թյան, տնտեսական հաշվարկի, գնագոյացման և մի շարք այլ տնտեսական կա-
տեգորիաներ: Նշված ժամանակաշրջանում այդ հարցերի շուրջ երկրում տեղի
ունեցան գիտական բանավեճեր, որոնց բուն արդյունքներն իրենց արտացո-
լումը գտան ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան և սեպտեմբերյան պլե-
նումների ու կուսակցության XXIII համագումարի որոշումներում: Մասնավո-
րապես սեպտեմբերյան պլենումի որոշումներում գիտականորեն հիմնավորվեց
արդյունաբերության պլանավորման և տնտեսական խթանման նոր կարգը:

Կիրառվող ռեֆորմը, հիրավի, էապես փոխում է արդյունաբերական ձեռ-
նարկությունների գործունեության պլանավորման ու կառավարման կարգը և
վերևից սահմանած ղեկավարման սիստեմը: Այսուհետև այն ընդգրկելու է այն-
պիսի ցուցանիշներ, որոնք կսահմանեն յուրաքանչյուր ձեռնարկության տեղը
ժողովրդական տնտեսության սիստեմում, կխթանեն արտադրության արդյունա-
վետությունը, կնպաստեն կոլեկտիվի շահագրգռվածության բարձրացմանը:

Այժմ ամբողջ խնդիրն այն է, որպեսզի ձեռնարկությունները և տնտեսա-
կան կառավարման բոլոր օղակները մեկընդմիշտ իրենց գործունեության ոլոր-
տից բացառեն վարչարարության հետքերը և տնտեսությունը վարեն *միմիայն*
*տնտեսական օրենքների անշեղ կենսագործմամբ:* Միայն այդ ճանապարհով
կամրապնդվեն տարբեր ձեռնարկությունների տնտհաշվարկային հարաբերու-
թյունները, և պլանները կապմելիս բանիմացորեն կկուգակցվեն ձեռնարկու-
թյան և ողջ ժողովրդական տնտեսության շահերը: Դեռ ավելին, այդպիսով աշ-
խատավարձի և շահույթի միջև կստեղծվի անմիջական կապ, որոնց կուգակ-
ցումը մեծապես կնպաստի թե՛ ձեռնարկության և թե աշխատավորների առ-
օրյա շահերի խթանմանը:

Սակայն, այս մեծ խնդիրների լուծումը պահանջում է, որպեսզի վերադաս
օրգանները ձեռնարկություններին իջեցնեն այնպիսի հիմնավորված և պատճա-
ռաբանված պլաններ, որոնք իրականում խրախուսեն արտադրության համա-
կողմանի և նորմալ կարգացմանը: Իսկ այդ անելու համար անհրաժեշտ է տնտե-
սական ձեռնարկությունների գործունեության գնահատման չափանիշը սահմա-
նելիս հաշվի առնել իրացված արտադրանքի ծավալը, դրա տեսակների ընդար-
ձակումը, կենտրոնացված կապիտալ ներդրումների ծավալը, արտադրակարո-
ղությունների և ֆոնդերի գործարկումը կենտրոնացված ներդրումների հաշվին,
նոր տեխնիկայի անկանգ ներդրումը, հումքի, նյութերի ու սարքավորումների
նորմալ մատակարարումը, աշխատավարձի ֆոնդի ամրակայումը, շահույթի
նորմալ աճը: Ահա այն ազդակները, որոնց միջոցով և օգնությամբ պլանավորող
ու կառավարող մարմինները կոչված են գնահատելու ձեռնարկությունների
ամենօրյա գործունեությունը:



Հայտնի է, որ ձեռնարկությունների համար սահմանված ցուցանիշների
այս նոր սիստեմի հիմքում ընկած են մասնավորապես արտադրանքի և շա-
հույթի վճռական ազդակները, որոնք իրոք նպաստելու են հանրային արտա-
դրության արդյունավետության և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման
անհետաձգելի խնդիրների լուծմանը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի սեպտեմբերյան պլենումը նշեց, որ ժողո-
վրրդական տնտեսության և, առաջին հերթին, արդյունաբերության կարգաց-
ման պլանների որոշ ցուցանիշներ ճիշտ չեն արտացոլում տնտեսական պրո-
ցեսներն ու արտադրության արդյունքները: Այստեղ ամենից առաջ խոսքը վե-
րաբերում է այսպես կոչված համախառն արտադրանքին, որն իր կազմից բա-
ցառում է մի շարք տնտեսական և արժեքային հասկացություններ, որով և
հստակ պատկերացում չի տալիս մեկ տնտեսության իրական վիճակի վերա-
բերյալ: Գաղտնիք չէ, որ համախառն արտադրանքի ցուցանիշը հաճախ ձեռ-
նարկություններում ստեղծում է վատառողջ տրամադրություն և ղեկավարու-
թյունը ջանում է թողարկել նյութատար ու թանկ արտադրանքը, մի հանգա-
մանք, որը չի նպաստում ոչ այդ ձեռնարկության և ոչ էլ ամբողջ ժողովրդական
տնտեսության կենսական շահերին:

Ահա թե ինչու կուսակցությունը նպատակահարմար գտավ սահմանել
այնպիսի ցուցանիշներ, որոնք առավել հստակ և ամենակողմանի պատկերա-
ցում տան ձեռնարկությունների իրական վիճակի վերաբերյալ և նպաստեն
տնտհաշվարկի պահանջներին: Իրացմամբ ավարտվում է արտադրության և
շրջանառության պրոցեսը, որից հետո վերջնականապես հայտնի է լինում
ստացվող շահույթի մեծությունը: Շահույթի ցուցանիշը մեծապես կխթանի ար-
տադրանքի որակի բարձրացմանը և ողջ ժողովրդական տնտեսության հարա-
ճուն վերելքին:

Սոցիալիստական ձեռնարկությունների պլանները սահմանող օրգան-
ները, կուսակցական և տնտեսական կազմակերպությունները պետք է ամեն-
օրյա հոգատարությամբ վեր առնեն իրենց ենթակայության ձեռնարկությունների
վիճակը վերևում նշված ցուցանիշների տեսանկյունով, հատկապես չմռռանա-
լով շահույթի, ասորտիմենտի, արտադրանքի սորտայնության, գերնորմատիվ
պաշարների անտեղի կուտակման և այլ տնտեսական հարցերը, որոնց ճիշտ
լուծմամբ է պայմանավորված արտադրության նորմալ առաջընթացը:

Արտադրանքի իրացման ցուցանիշն արտադրության ռիթմն ապահովելու
տեսակետից ունի միաժամանակ կազմակերպական նշանակություն: Արտա-
դրանքն սպառողներին ժամանակին առաքելու համար պահանջվում է արտա-
դրամասերում սահմանել ամենօրյա գրաֆիկ և նյութատեխնիկական մատակա-
րարման պլանաչափ կազմակերպում: Պլանային այդ ցուցանիշի դերը կարող է
բարձրանալ միայն պայմանագրային ու վճարման կարգապահության խստիվ
կիրառումով: Էլ չենք խոսում այն մասին, որ իրացված արտադրանքի ցուցա-
նիշը հնարավորություն է ընձեռում բացահայտելու հասարակական արդյունքի
իրացման ռեալ պայմանները: Չպետք է մոռանալ, որ արտադրանքը հասարա-
կական ընդունելություն է գտնում կամ իրացվում է, երբ այն իր որակով, քա-
նակով ու արժեքով համապատասխանում է հասարակության պահանջներին:
Միայն այս դեպքում է, որ արտադրանքի իրացմամբ ապրանքը վերածվում
է փողի, որը մեկ ցույց է տալիս, թե որ չափով ճիշտ է բաշխված հանրային աշ-
խատանքը, որ չափով կենդանի ու առարկայացած աշխատանքային ծախսում-
ները համապատասխանում են հանրորեն անհրաժեշտ նորմաներին, որոնք պլա-

նավորված և բալանսավորված են վերադաս օրգանների կողմից: Եվ քանի որ ձեռնարկության դեմքը որոշվում է նրա թողարկած արտադրանքի նկատմամբ եղած պահանջարկով, ապա այստեղից պարզ է դառնում, թե որքան մեծ է նրա իրացման նշանակությունը:

Տնտեսական նոր ռեֆորմը պահանջում է տնտեսավարներից միայն արժեքային ցուցանիշով չառաջնորդվել, այլ հարկավոր է ի նկատի առնել և արտադրական սպառումը. ոչ թե արտադրանք առհասարակ, այլ որոշակի, ժողովրդի սպառողական պահանջմունքները բավարարող արտադրանք: Ահա թե ինչու անհրաժեշտ է պլանավորված և հիմնավորված ապրանքատեսակների ապրանքացանկի ճշգրիտ պլանավորումը: Ահա թե ինչու արտադրանքի ծավալը բնութագրող արժեքային ցուցանիշները կատարելագործելու հետ մեկտեղ, անհրաժեշտ է կատարելագործել նաև արտադրանքի ծավալը բնութագրող բնեղեն ցուցանիշները, որոնք նյութական հաշվեկշիռների հիմքն են կազմում և պլանային օրգանների կողմից օգտագործվում են ապրանքացանկը և ծավալը որոշելու համար: Սրանք հարցեր են, որոնց ճիշտ ըմբռնումը և առավել քան հետևողական կենսագործումը կապահովի տնտեսական ռեֆորմի խոշոր նպատակների իրագործումը:

Այժմ ձեռնարկություններին իբրև դիրեկտիվ ցուցանիշ տրվելու է միայն արտադրանքի հիմնական ասորտիմենտի ապրանքացանկը, իսկ արտադրանքի շատ տեսակների թողարկումը որոշելու են ձեռնարկությունները, իհարկե, ելնելով սպառողների պատվերներից: Մասնավորապես անձնական սպառման առարկաների վերևից առաջադրվող ապրանքացանկը լինելու է սահմանափակ:

Սոցիալիստական տնտեսության զարգացման արդի էտապում մեծ նշանակություն է ձեռք բերում թողարկվող արտադրանքի որակը, առանց որի որևէ կերպ հնարավոր չէ պլանների կատարումը համարել իրական և օգտավետ: Չպետք է մոռանալ, որ մեր տնտեսության տեխնիկական ներկա բազան մեծ առավելություններ ունի թողարկվող արտադրանքն ավելի բարձր որակով մասսաներին մատուցելու համար: Սակայն, մինչև այսօր էլ մի շարք տնտեսավարներ հաճախ անուշադրության են մատնում ձեռնարկության գործունեության գնահատման այդ էական ցուցանիշները:

Կուսակցական կազմակերպությունները պետք է կազմակերպական, տնտեսական և դաստիարակչական բոլոր գործոնների կիրառումով հասնեն այն բանին, որ յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվ անշեղորեն առաջնորդվի տնտեսական ռեֆորմի նորագույն սկզբունքների ոգով՝ ոչ միայն շատ արտադրել, այլև համաշխարհային ստանդարտին համապատասխան արտադրել: Այսպիսին է մեր կուսակցության կամքը, սա է սպառող լայն զանգվածների արդարացի պահանջը:

Նոր պայմաններում գործող ձեռնարկությունների համար հետայսու որոշիչ ցուցանիշ է լինելու աշխատավարձի ֆոնդի կայուն պահպանումը, որը ձեռնարկությունների ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը կուղղի արտադրության արդյունավետության բարձրացման հունով:

Արդյունաբերական ձեռնարկություններում այժմ գործող վարձատրման սիստեմը պայմանավորված չէ ձեռնարկության եկամտաբերության աստիճանով: Այս դեպքում աշխատավարձն ու եղած զանազան հավելումները և պարգևատրումները պատշաճ չափով չեն շահագրգռում աշխատողներին բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը: Դրան խանգարում է նաև ըստ արտադրանքի չափի բաշխվող աշխատավարձի ֆոնդը, որը մոտավոր անց-



յալում զրկում էր ձեռնարկության աշխատողներին պարգևատրելու հնարավորությունից: Մինչդեռ այսուհետև շահույթը և պարգևատրումը կդառնան ձեռնարկությունների տնտեսական խթանումն ու աշխատողների նյութական շահագրգռվածությունը օրգանապես կապակցող օղակ:

Ինչ վերաբերում է յուրաքանչյուր աշխատողի աշխատավարձի չափին, ապա այն այսուհետև պետք է սահմանվի, ելնելով տարիֆային դրույքներից և ռոճիկներից, որոնք որոշվում են կենտրոնացված կարգով: Դրանք կարող են սահմանվել վերադաս մարմինների կողմից, նպատակ ունենալով սիստեմատիկորեն բարձրացնելու աշխատավարձի նվազագույն չափը, փոքրացնելու տարբերությունները:

Այժմ արդեն ակնհայտ է բոլորին, որ տնտեսական ռեֆորմի իմաստը հանգում է նրան, որ հասարակական արտադրության արդյունավետությունը բնորոշող հիմնական ցուցանիշը՝ շահույթն է, որով և պայմանավորված է ձեռնարկության եկամտաբերությունը: Տնտեսագետների շրջանում տարածված այն նախապաշարմունքները, թե շահույթը սոցիալիզմին հատուկ տնտեսական կատեգորիա չէ և ոչ էլ պլանավորման առարկա, լիովին հերքվեց սոցիալիստական շինարարության պրակտիկայով:

Հիրավի, ի՞նչ է շահույթը և ինչո՞վ է պայմանավորված դրա գոյությունը: Շահույթը տնտեսական կատեգորիա է. որում մարմնավորված է սովետական քաղաքացու հավելյալ արդյունքը կամ նրա մի մասը՝ ապրանքային արտադրության պայմաններում: Հայտնի է նմանապես, որ շահույթը կապիտալիզմի ժամանակ հավելյալ արժեքի այն մարմնավորումն է, որը շահագործողական հարաբերություններ է արտահայտում: Վերացնելով կապիտալիստական այդ շահույթը, սոցիալիզմը սակայն չի վերացնում շահույթն ընդհանրապես: Սոցիալիստական ապրանքային հարաբերությունների պայմաններում նա արտադրության պրոցեսում շահույթն արժեմեծացման չափ է և որպես այդպիսին մի կարևոր լծակ՝ սոցիալիստական արտադրությունը պլանավորելու համար: Դժբախտաբար մինչև վերջերս սոցիալիստական պլանավորման պրակտիկայում այդ լծակը անհրաժեշտ չափով չէր օգտագործվում:

Արտադրության արդյունավետության տնտեսական չափանիշը՝ շահույթը՝ առավել լիակատար չափով է բնութագրում արտադրածախսերի և արդյունքների հարաբերակցությունը: Թեև չափազանցություն կլիներ շահույթը դիտել որպես սոցիալիստական արտադրությունը կարգավորող ցուցանիշ: Մեր էկոնոմիկայի պայմաններում շահույթի ամբողջ մասսան հավելյալ արդյունքի թանձրացյալ կերպարանքով պատկանում է իրենց՝ արտադրողներին: Ոչ շահույթը և ոչ էլ հավելյալ արդյունքի որևէ մասը չի կարող սոցիալիստական արտադրության նպատակը լինել. նրա դերը սահմանափակ է, այն ծառայում է որպես աշխատանքի ծախսման հարաբերական արդյունավետության չափ: Այստեղ պետք է հիշել և այն, որ սոցիալիստական ձեռնարկության շահույթի ներգործությունն արտադրության վրա որոշվում է սոցիալիզմի տնտեսական օրենքների գործողությամբ, որովհետև այստեղ արժեքի օրենքի գործողությունն նա ենթարկված է սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքին:

Պլանավորման և տնտեսական խթանման նոր պայմաններում շահույթի մեծությունը պայմանավորված է իրացված արտադրանքի անհատական ինքնարժեքով և գնի հարաբերակցությամբ: Եթե արտադրանքը դժվար է իրացվում, իսկ թողարկվածը շատ է, ապա շահույթ չի ստացվում: Շահույթի առավելությունն այն է, որ նրա միջոցով են դրսևորվում ձեռնարկության

արտադրական քանակական ու որակական կողմերը: Մյուս կողմից շահույթը դառնում է ձեռնարկությունների հիմնական ֆոնդերի վերարտադրության աղբյուր: Այստեղից հետևում է, որ սոցիալիստական արտադրաֆոնդերը կարող են աճել շահույթի աճման տեմպերին համընթաց. որքան մեծ լինեն այդ ֆոնդերը, այնքան բարձր կլինի ձեռնարկության աշխատազինվածությունը և աշխատանքի արտադրողականությունը: Այս ամենը ենթադրում է սահմանված ֆոնդերի կատարյալ օգտագործում: Ուստի որևէ ճյուղում կամ ձեռնարկությունում չպետք է տեղի ունենա ֆոնդերի ավելորդ կուտակում, հակառակ պարագային դրանք թերի կօգտագործվեն, որի հետևանքով կպակասի հավելյալ արդյունքի կանգվածը:

Այսպիսով, հավելյալ արդյունքի և արտադրաֆոնդերի մեծությունը կապված են միմյանց հետ: Սոցիալիստական հասարակության մեջ հավելյալ արդյունքը շահույթի ձև ընդունելով հանդես է գալիս որպես աշխատանքի արտադրողականության բարձրացման ընդհանրացնող ցուցանիշ: Այդ միևնույն շահույթը արտադրաֆոնդերի օգտագործման, սոցիալիստական արտադրության արդյունավետության ցուցանիշն է, բայց և միաժամանակ աշխատավորների բարեկեցության և կուլտուրական վերելքն ապահովող ռեալ գործոն:

Կուսակցության ծրագրում նշված է. «Միասնական ժողովրդա-տնտեսական պլանի շրջանակներում այսուհետև ևս կընդլայնվեն տեղական օրգանների ու ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունն ու իրավունքները»: Ի կատարումն այս դրույթի, ՍՄԿԿ Կենտկոմը և Մինիստրների սովետն իրենց որոշումներում ընդգծել են ձեռնարկությունների ինքնուրույնության բարձրացման անհրաժեշտությունը: Այսուհետև շահույթը, ինչպես նաև տնտեսական մի շարք կատեգորիաներ դառնում են մեր տնտեսական պլանների չափանիշները, նրանց կենսագործման ցուցանիշները: Շահույթի միջոցով զուգակցվում են ձեռնարկության և ամբողջ հասարակության շահերը:

Պլանավորման և կառավարման նոր սիստեմի պայմաններում ամեն մի ձեռնարկություն հնարավորություն է ստանում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ճանապարհով հասնել մեծ շահութաբերության, որն ամբողջովին համապատասխանում է հասարակության շահերին:

Տնտեսական ռեֆորմի արմատավորմամբ այժմ ավելի քան բարդանում և բազմակողմանի է դառնում ձեռնարկությունների ղեկավարման ու կառավարման գործը: Կուսակցական կազմակերպությունները, որոնք կոչված են տոն և ընթացք տալու կոմունիզմի շինարարության վիթխարի գործին, պետք է ավելի խոր կերպով վինվեն սոցիալիստական տնտեսության օրենքների իմացությամբ, մարքսիստական տնտեսագիտության կատարյալ տիրապետմամբ:

Սովորել՝ տնտեսական օրենքներով, պլանավորման գիտական սկզբունքներով, շուկայի պահանջարկի ու առաջարկի հարաբերակցության օրենքի հիման վրա կառավարել տնտեսությունը: Սա է այժմ բոլոր կոմունիստների, և հատկապես տնտեսությունը վարող կոմունիստների առաջնահերթ խնդիրը: Այդ խնդրի հաջող լուծումը պահանջում է տնտեսությունը վարող կուսակցական ակտիվի մտավոր աշխարհի կատարյալ հարստացում, նրա մտահորիզոնի ընդլայնում և նորագույն տեխնիկայի ու գիտությունների կատարյալ տիրապետում:

Ահա թե ինչից է կախված տնտեսական ռեֆորմի՝ կուսակցության կոլեկտիվ կամքի հաջող իրագործումը:



ԹՈՎՄԱՍՅԱՆ Ա. Թ.

Վաստակավոր իրավաբան

# ԼԵՆԻՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՕՐԻՆԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՐԴԱՐԱԴԱՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*Սոցիալիստական օրինականությունը ՍՍՀՄ-ում գործող օրենքների և մյուս օրենսդրական-իրավական ակտերի համակողմանի ու բոլորանվեր իրականացման ռեժիմն է, սովետական դեմոկրատիայի էական տարրերից մեկը: Դա պետական իշխանության օրգանների, պաշտոնատար անձանց, հասարակական կազմակերպությունների և քաղաքացիների կողմից ՍՍՀՄ, միութենական և ավտոնոմ հանրապետությունների սահմանադրությունների, վերջիններիս հիման վրա հրատարակվող մյուս օրենքների և ենթաօրենսդրական ակտերի ճշգրիտ պահպանումն ու արմատավորումն է: Իրականացնել այդ օրինականությունը, նշանակում է՝ երաշխավորել ինչպես ամբողջությամբ վերցրած սոցիալիստական հասարակական հարաբերությունների, այնպես էլ սովետական քաղաքացիների իրավունքների ու արտոնությունների անձեռնմխելիությունն այն բոլոր դեպքերում, երբ դրանց դեմ ոտնձգություն է կատարվում կամ երբ դրանք իրական վտանգի տակ են դրվում:*

*Սոցիալիստական օրինականությունը Սովետական պետության պետական գործունեության կարևորագույն միջոցներից մեկն է, համաժողովրդական պետության ֆունկցիաների իրականացման ու զարգացման անսասան մեթոդն ու սկզբունքը: Այն ապահովում է սահմանված իրավակարգի կայունությունը, ամրապնդում է պետական և աշխատանքային կարգապահությունը, նպաստում կոմունիստական հասարակության կառուցման համաշխարհային պատմական գործին:*

*Սոցիալիստական օրինականությունը քաղաքական-իրավական հսկայական ուժ է, որի միջոցով համաժողովրդական պետությունը պատմականորեն ճնշել է իր թշնամիների դասակարգային դիմադրությունը: Ներկայումս այն իր սուր ծայրով ուղղված է լրտեսների, դիվերսանտների, մարդասպանների, հանրային բարիքը հափշտակողների, կաշառակերների, խուլիգանների դեմ, աշխատանքային կարգապահությունը ոտնահարողների և խախտողների դեմ: Այդ օրինականությունը սովետական քաղաքացիների մեջ արմատավորում է նոր իրավագիտակցություն, որն իր կոչումով ու էությամբ հակադր-*

վելով բուրժուական իրավագիտակցությանը, ուղղված է մանր բուրժուական սանձարձակության դեմ, առանձին մարդկանց վարքագծում նկատվող անարխիական հակումների, որոշ մարդկանց գիտակցության մեջ տակավին գոյություն ունեցող և վտանգավոր ձևերով դրսևորվող կապիտալիզմի մնացուկների դեմ:

Սոցիալիստական օրինականության հետ սերտորեն առնչվում է սովետական արդարադատությունը: Վերջինս համաժողովրդական պետության պետական գործունեության ձևերից մեկն է:

Մեր պետության պատմության մեջ արդարադատությունը միշտ էլ կոնկրետ խնդիրներ է ունեցել և որոշակի նպատակներ առաջադրել. պաշտպանել ՍՍՀՄ-ում սահմանված հասարակական ու պետական կարգը, տնտեսության սոցիալիստական սիստեմը, հանրային սոցիալիստական սեփականությունը, քաղաքացիների քաղաքական, աշխատանքային, բնակարանային և անձնական կամ գույքային իրավունքներն ու շահերը, պետական հիմնարկությունների, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, կոոպերատիվ և մյուս հասարակական կազմակերպությունների ու միավորումների իրավունքներն ու շահերը: Այդ պարտականությունը, հասկանալի է, իրականացվել ու իրականացվում է բացառապես իրավական միջոցներով, այսինքն՝ դատական նիստերում գործերը քննելով և դրանք օրենքների պահանջներին լիովին համապատասխան լուծելով:



Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակով ստեղծված սովետական պետության համար կենսականորեն կարևոր էին կայուն օրենսդրական-իրավաբանական ակտեր և դրանց վրա հենվող անսասան օրինականություն: Անհրաժեշտ էր նոր սկզբունքներով կառուցված իսկական արդարադատություն, որի իրականացմամբ պաշտպանվեին աշխատավորների պետությունը և քաղաքացիների ընդհանրական շահերը: Սովետական պետությունը նման օրենսդրության և արդարադատության ստեղծման գործին ձեռնարկեց իր գոյության հենց առաջին օրերից, որի մեծ նախաձեռնողն ու կազմակերպիչն էր Վ. Ի. Լենինը: Նրա անմիջական ջանքերով ու ղեկավարությամբ պատմական անհամեմատ կարճ ժամկետում վերացվեց նախահեղափոխական Ռուսաստանի ամբողջ օրենսդրությունը և փոխարենը ստեղծվեց սովետական համապարփակ նոր օրենսդրություն, որի հիմնական ակտերը կազմվեցին մեծ առաջնորդի գործուն մասնակցությամբ:

Հանրահայտ է իրոք այն տիտանական աշխատանքը, որ Լենինը կատարեց սովետական առաջին սահմանադրության օրենքների, քաղաքացիական, աշխատանքային, հողային, քրեական, քրեական-դատավարության, քաղաքացիական-դատավարության օրենսգրքերի և բազմաթիվ առանձին օրենսդրական-իրավական ակտերի ստեղծման գործում: Նա անմիջական մասնակցություն ունեցավ սովետական իրավունքի ձևավորման պատմական պրոցեսին, անձամբ գրեց, ուղղեց, խմբագրեց մեր պետության կարևորագույն դեկրետների, օրենսգրքերի և մյուս օրենսդրական ակտերի նախագծերը:

Վ. Ի. Լենինը հատուկ ուշադրություն էր դարձնում այն բանին, որ ընդունված օրենքները ձևակերպվեն զգուշությամբ, մանրակրկիտ, առանց հապշտապ ուղղումների: Այս վերջինների գոյությունը նա անհանդուրժելի էր համարում: 1921 թվականի օգոստոսի 27-ին Փոքր ժողկոմսովետին հասցեա-



գրած նամակում նա գրում է. «Ուղարկելով Մոսկվայի սովետի նախագահության բանաձևը, խնդրում եմ Փոքր ժողկոմսովետին ու նախագահին և բոլոր անդամներին, առանձնապես ընկ. Գոյխբարգին, որպես իրավաբանի, կրկնակի ուշադրություն դարձնել դեկրետների տեքստի ավելի զգույշ, մանրակրկիտ պատրաստման վրա: Անվերջ ուղղումներն անհանդուրժելի են» (В. И. Ленин, О социалистической законности, М., 1958 г., стр. 656):

Հոկտեմբերի հենց առաջին օրերից մեծ առաջնորդը վիթխարի նշանակություն է տալիս սոցիալիստական օրինականության համակողմանի ամրապնդման ու պահպանման և սովետական արդարադատության ճիշտ իրականացման գործին: Դրանով է բացատրվում, որ դեռևս 1918 թվականի նոյեմբերին սովետների Համառուսաստանյան VI արտակարգ համագումարը Լենինի նախաձեռնությամբ հատուկ որոշում ընդունեց հեղափոխական օրինականության մասին: Այդ որոշման մեջ ասվում էր՝ Հեղափոխական պայքարի մեկ տարում Ռուսաստանի բանվոր դասակարգը մշակեց ՌՍՖՍՀ օրենքների հիմունքները, որոնց ճիշտ պահպանումն անհրաժեշտ է Ռուսաստանում բանվորների և գյուղացիների իշխանության հետագա զարգացման ու ամրապնդման համար: Որոշման մեջ հանրապետության բոլոր քաղաքացիներին, բոլոր օրգաններին, այդ թվում դատարաններին և տրիբունալներին, բոլոր պաշտոնատար անձանց կոչ էր արվում խստորեն պահպանել ու կատարել կենտրոնական իշխանության հրատարակած ու հրատարակվող օրենքները, որոշումները և կարգադրությունները: Որոշման համաձայն օրենքով չնախատեսված միջոցների գործադրումը թույլատրվում էր միայն բացառիկ դեպքերում, երբ դրանք առաջանում էին քաղաքացիական պատերազմի և հակահեղափոխության դեմ մղվող անողոք պայքարի արտակարգ պայմանների թելադրանքով՝ ծայրահեղ անհրաժեշտությամբ: Նման միջոցների կիրառումը սակայն, յուրաքանչյուր անգամ պետք է հիմնավորվեր ու փաստարկվեր (տե՛ս СУ РСФСР, 1918 г. № 90): Այսպես դրվեց սովետական օրենքների կատարման և հեղափոխական օրինականության պահպանման հարցը հոկտեմբերի հենց առաջին տարիներին:

Վ. Ի. Լենինը սովետական օրենքների ճիշտ կատարումը համարում էր թշնամական ուժերի դեմ տարվող հաղթանակի նախապայման, և, ընդհակառակը, այդ օրենքների խախտման մեջ մեծագույն վտանգ ու չարիք էր տեսնում. «Կոլչակին և Դենիկինին մինչև վերջ ոչնչացնելու համար անհրաժեշտ է պահպանել խստագույն հեղափոխական կարգ, անհրաժեշտ է սրբությամբ պահպանել սովետական իշխանության օրենքներն ու առաջադրանքները և բոլորով հետևել դրանց կատարմանը» (Երկեր, հ. 29, էջ 691) (ընդգծումը մերն է— Ա. Թ.):

Վ. Ի. Լենինը բազմիցս վճռականորեն ընդգծում էր, որ «Ամենափոքր օրինազանցությունը, սովետական կարգի ամենափոքր խախտումն արդեն սողանցք է, որ անմիջապես կօգտագործեն աշխատավորների թշնամիները,— մի կետ է Կոլչակի և Դենիկինի հաղթանակների համար: Հանցագործություն է մոռանալ, որ կոլչակովշչինան սկսվեց մի փոքրիկ անզգուշությունից չեխոսլովակների նկատմամբ, առանձին գնդերի փոքրիկ անհնազանդությունից» (Երկեր, հ. 29, էջ 692):

Հանճարեղ առաջնորդը հատուկ ուշադրություն էր նվիրում սովետական արդարադատությունն իրականացնող օրգանների՝ նորաստեղծ դատարանների գործունեությանն ու նպատակներին: Նա այդ օրգանների առաջ

վճռական խնդիր էր դնում. դատական իրավական միջոցների գործադրմամբ ո՛չ միայն պայքարել շահագործողների դեմ, որոնք փորձում են վերականգնել իրենց տիրապետությունը, այլև ապահովել կարգապահության և ինքնակարգապահության խստագույն անցկացում աշխատավորության շրջանում: Այդ ամենի հետ մեկտեղ Լենինը սովետական արդարադատության և այն իրականացնող օրգանների գործունեության մեջ տեսնում է դաստիարակչական խնդիրներ: «Նոր դատարանը,— գրում էր նա,— ամենից առաջ հարկավոր էր շահագործողների դեմ պայքարելու համար, որոնք փորձում էին վերականգնել իրենց տիրապետությունը կամ պաշտպանել իրենց արտոնությունները, կամ ծածուկ անցկացնել, խաբեությամբ ստանալ այդ արտոնությունների այս կամ այն մասնիկը: Սակայն, բացի դրանից, դատարանների վրա, եթե նրանք իրոք կազմակերպված են սովետական հիմնարկությունների սկզբունքով, դրվում է մի այլ, ավելի կարևոր խնդիր: Այդ խնդիրն է՝ ապահովել աշխատավորության կարգապահության և ինքնակարգապահության ամենախիստ գործադրումը» (Երկեր, հ. 27, էջ 257): Դատարանները ոչ միայն անհրաժեշտ են հանցագործների նկատմամբ պետական հարկադրանք կիրառելու, այսինքն՝ հասարակական բարձր վտանգավորություն ներկայացնող արարքներ կատարած անձանց պատժելու համար, այլև անհրաժեշտ են մարդկանց դաստիարակելու և վերադաստիարակելու համար:

Լենինը համապատասխան օրգաններին ու պաշտոնական անձանց, այդ թվում դատարաններին ու դատավորներին, միշտ նախազգուշացնում էր օրենքները պարտադիր կիրառելու անհրաժեշտության մասին: Նա արդարադատության ճիշտ իրականացման գործում նշանակություն էր տալիս միայն այն օրենսդրական ակտերին, որոնք գործնականում կիրառվում էին և այդպիսով հանրորեն օգտակար դեր խաղում հասարակական ու պետական կյանքում, իսկ բոլոր այն օրենքները, որոնք, հրատարակված լինելով, ձևականորեն համարվում էին գործող օրենքներ, բայց չէին կիրառվում, համարում էր թղթի կտորներ:

Նա սովետական օրենքների խախտման թողտվության միտքն անգամ, անկախ խախտման փաստի շարժառիթներից, հանցագործություն էր համարում. «Դեկրետներ շրջանցել չի կարելի, միայն այդպիսի առաջարկության համար դատի են տալիս (Ленинский сборник, т. 35, стр. 60):

Վլադիմիր Իլյիչը սոցիալիստական օրինականության արմատավորման և սովետական արդարադատության իրականացման նախապայմաններից մեկը համարում էր այն, որ աշխատավորները խելացիորեն օգտվեն գործող օրենքներից և այդ օրենքները զենք դարձնեն դատապարտելի, այդ թվում հանցավոր երևույթների ու արարքների դեմ պայքարելու համար: Առանց այդ պայքարի, առանց մասսաների վճռական օգնության, միևնույն է, գործը առաջ չի գնա, օրինականությունը չի ամրապնդվի և արդարադատությունն իր անթերի իրականացումը չի գտնի: Դեռևս 1921 թվականի հոկտեմբերին քաղլուսվարների համառուսաստանյան II համագումարում իր տված զեկուցման մեջ նա հարցը հենց այդպես էլ դնում էր. «Սովետական օրենքները շատ լավ օրենքներ են, որովհետև բոլորին հնարավորություն են տալիս կռվելու բյուրոկրատիզմի ու ձգձգումների դեմ, մի հնարավորություն, որ ո՛չ մի կապիտալիստական պետության մեջ չեն տալիս բանվորին ու գյուղացուն: Իսկ ի՞նչ. արդյոք օգտվո՞ւմ են այս հնարավորությունից: Համարյա ո՛չ ոք: Եվ ո՛չ միայն գյուղացին, այլ նույնիսկ կոմունիստների վիթխարի տոկոսը չի կարողանում



օգտվել սովետական օրենքներից՝ ձգձգումների, բյուրոկրատիզմի կամ այնպիսի... երևույթի դեմ պայքարելու համար, ինչպիսին կաշառակերությունն է: Ի՞նչն է խանգարում պայքարել այդ երևույթի դեմ: Մեր օրենքնե՞րը: Մեր պրոպագանդա՞ն: Ընդհակառակը: Օրենքները գրված են ինչքան ուզես: Իսկ ինչո՞ւ հաջողություն չունենք այս պայքարում: Որովհետև միայն պրոպագանդայով չի կարելի մղել այս պայքարը, իսկ այն ավարտել կարելի է, եթե միայն ինքը՝ ժողովրդական մասսան, օգնում է (Ընդգծումը իմն է.—Ա. Թ.): Մեզանում կոմունիստների կեսից ոչ պակասը չի կարողանում պայքարել այս երևույթի դեմ, էլ չխոսելով այնպիսիների մասին, որոնք խանգարում են պայքարելուն» (Երկեր, հ. 33, էջ 68—69):

Բայց որպեսզի աշխատավորական լայն մասսաները հետևողական պայքար տանեն արդարադատության ճիշտ իրականացման և օրինականության պահպանման ու ամրապնդման համար, նրանք պետք է համապատասխան դաստիարակություն ստանան: Այդ պատճառով էլ Լենինը անդադրում պահանջում էր մասսաներին դաստիարակել օրենքների պահպանման ոգով:

Մեր սովետական պետությունը մշտական հոգ է տարել սովետական մարդու, նրա իրավունքների ու օրինական շահերի համակողմանի պաշտպանության մասին: Վ. Ի. Լենինը դեռևս 1921 թվականին մատնացույց էր անում, որ բոլոր քաղաքացիներին պետք է հավաստել ու զինել իրենց իրավունքների համար տարվող աշխատանքի անխուսափելի հաջողության համոզմամբ ու հավատով:

Վ. Ի. Լենինը գիտականորեն ապացուցեց օրինականության և արդարադատության դասակարգային էությունը: Նա ցույց տվեց, որ դրանք ոչ թե մեկընդմիշտ տրված, բոլոր ժամանակների ու պայմանների համար անփոփոխ հասկացություններ են, այլ կոնկրետ-պատմական հասկացություններ: Նա բացահայտեց սոցիալիստական օրինականության և արդարադատության սկզբունքային տարբերությունը բուրժուական օրինականությունից ու արդարադատությունից:

Պետության և իրավունքի մարքսիստական-լենինյան տեսության համաձայն տարբեր դարաշրջաններում կատարվող սոցիալական հեղափոխությունների միջոցով ստեղծվում է նոր պետություն, նոր իրավունք և դրան համապատասխան՝ նոր օրինականություն:

Դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ իրավունքն ու օրինականությունը տարբեր նպատակներ և խնդիրներ են իրականացնում տարբեր հասարակական ֆորմացիաներում, իսկ երբեմն էլ այդ ֆորմացիաների զարգացման տարբեր էտապներում: Պետական և իրավական մտքի պատմությանը հայտնի են ոչ թե ընդհանրապես իրավունք, արդարադատություն և օրինականություն, այլ հայտնի են ստրկատիրական, ֆեոդալական, բուրժուական և սոցիալիստական իրավունք, արդարադատություն ու օրինականություն:

1910 թ. Երկու աշխարհ հոդվածում Վ. Ի. Լենինը հիմնովին բացահայտում է բուրժուական օրինականության բուն կոչումը և ցույց տալիս, որ իմպերիալիզմի դարաշրջանում անգամ ինքը՝ բուրժուազիան, ճիգեր է գործադրում ազատվելու իր իսկ ստեղծած օրինականությունից. «Բուրժուազիայի ստեղծած օրինականության օգտագործման դարաշրջանը փոխարինվում է մեծագույն հեղափոխական ճակատամարտերի դարաշրջանով, ընդ որում այդ ճակատամարտերը ըստ գործի էության ամբողջ բուրժուական օրինականության, ամբողջ բուրժուական հասարակարգի խորտակումը կլինեն, իսկ

ըստ ձևի պետք է սկսվեն (և սկսվում են) բուրժուազիայի գլխավորույս ճիգերով ազատվել իր իսկ ստեղծած և իրեն համար անտանելի դարձած օրինականությունից» (Երկեր, հ. 16, էջ 405)։

Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթությամբ ստեղծված սոցիալիստական իրավունքը արմատապես տարբերվում է շահագործողական բոլոր պետությունների իրավունքի սիստեմներից։ Մեր պետությանն օրգանապես հատուկ են կառավարման դեմոկրատական ձևերը, որոնց պահպանմամբ շահագրգռված է ողջ ժողովուրդը։ Այս նշանակում է, որ միայն այդ պետության մեջ կարելի է գործը կազմակերպել ու տանել այնպես, որ օրինականությունն արմատավորվի ու պահպանվի և ճշգրիտ արդարադատությունն իր իրականացումը գտնի։ Այս միտքը կարմիր թելի նման անցնում է Լենինի մի շարք աշխատություններում։

Հոկտեմբերի պայծառ այգաբացի հենց առաջին օրը, 1917 թվականի նոյեմբերի 7-ին, «Բնակչությանը» հուչակավոր կոչի մեջ նա գրում էր. «Ընկեր-աշխատավորներ։ Հիշեցեք, որ այժմ դուք ինքներդ եք կառավարում պետությունը։ Ոչ ոք Ձեզ չի օգնի, եթե դուք ինքներդ չմիանաք և պետության բոլոր գործերը ձեր ձեռքը չվերցնեք... Համախմբվեցեք ձեր սովետների շուրջը։ Ամրացրեք նրանց։ Ինքներդ գործի անցեք ներքևից, չսպասելով ոչ ոքի։ Սահմանեցեք խստագույն հեղափոխական կարգ, անխնա ճնշեցեք անարխիայի փորձերը՝ հարբեցողների, խուլիգանների, հակահեղափոխական յունկերների, կոռնիլովականների և նմանների կողմից» (Երկեր, հ. 26, էջ 359—360)։ Մեծ առաջնորդի այս պատմական դիմումն ըստ էության հեղափոխական օրինականության պահպանման և ամրապնդման կոչ էր անցած այդ հերոսական ժամանակներում։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ սոցիալիստական պետության զարգացման ընթացքում տնտեսական և հասարակական-քաղաքական պայմանները հրամայողաբար պիտի թելադրեն ավելի ու ավելի եռանդուն դնել սոցիալիստական օրինականության արմատավորման հարցը։

Նա կենսականորեն անհրաժեշտ էր համարում կազմակերպել պետական իշխանության մի այնպիսի օրգան, որի վրա դրվեր սովետական սոցիալիստական օրինականության համակողմանի պահպանման խնդրի լուծումը, օրինախախտումների դեմ պայքարելու և դրանց կանխման ու խափանման պետական բարձր կարևորություն ունեցող ֆունկցիան։ Նրա մեծ ջանքերով և անձնական մասնակցությամբ այդ օրգանը ստեղծվեց։ Դա սովետական դատախազությունն էր։ Այն հիմնվեց 1922 թվականի մայիսին ցարական Ռուսաստանի ջախջախված ու հողմացրիվ արված դատախազության փոխարեն։

Դատախազության ստեղծման, նրա կոչման ու ֆունկցիաների հարցում ժամանակին լուրջ տարաձայնություններ առաջացան։ Ոմանք գտնում էին, թե այդ օրգանը պետք է կառուցվի երկակի ենթարկման սկզբունքով, որն առհասարակ սահմանված էր պետական մյուս բոլոր օրգանների համար, այսինքն՝ նրա ենթարկումը կենտրոնին, հանձին համապատասխան ժողկոմատի, մյուս կողմից՝ իշխանության տեղական օրգաններին։ Ոմանք էլ, ընդհակառակը, գտնում էին, որ օրինականությունը իր հիմքով միասնական է, ուրեմն միասնական պետք է լինի նաև նրա պահպանման համար կազմակերպվող օրգանը և, որ կարևորն է, այն պետք է ենթարկվի միայն կենտրոնին, իսկ իշխանության տեղական օրգաններին՝ երբեք։ Կարիք զգացվեց մեծ առաջնորդի կատեգորիկ միջամտությանը։ Կուսակցության Կենտկոմի քաղբյուրոյին հասցեա-



գրած. «Երկակի» ենթարկման և օրինականության մասին» իր հայտնի նամակում նա տվեց սովետական դատախազության կազմակերպման ու գործունեության սպառիչ տեսությունը։ Որովհետև «...օրինականությունը չի կարող լինել Կալուգայի և Կազանի օրինականություն, այլ պետք է լինի միասնական համառուսաստանյան և նույնիսկ միասնական՝ սովետական հանրապետությունների ամբողջ ֆեդերացիայի համար» (Երկեր, հ. 33, էջ 430) այդ պատճառով էլ սովետական դատախազությունը պետք է կառուցվի մեկ միասնական սիստեմով ու ենթարկվի միայն իր կենտրոնին։

Պատմական այդ ժամանակներում նկատվում էին վտանգավոր երևույթներ։ Տեղական իշխանությունները հաճախ ընդունում էին այնպիսի որոշումներ և անում էին այնպիսի կարգադրություններ, որոնք ակներևաբար հակասում էին սովետական իշխանության կենտրոնական օրգանների, օրինակ, ՌՍՖՍՀ-ի կենտգործկոմի և ժողկոմսովետի ընդունած օրենքներին ու դեկրետներին։ Նման երևույթները կյանքում աններդաշնակություն մտցնելով խոչընդոտում էին սովետական կարգի հաղթական երթը։ Այս կապակցությամբ Վ. Ի. Լենինը նորաստեղծ դատախազության վրա վերին աստիճանի կարևոր պարտականություն դրեց. «Դատախազը պատասխանատու է այն բանի համար, որ տեղական ո՛չ մի իշխանության ո՛չ մի որոշում օրենքից չշեղվի. և միայն այս տեսակետից է, որ դատախազը պարտավոր է բողոքարկել ամեն մի անօրինական որոշում... պարտավոր է միայն միջոցներ ձեռք առնել, որ ամբողջ հանրապետության մեջ հաստատվի օրինականության բացարձակապես միատեսակ ըմբռնում...» (Նույն տեղը, էջ 431—432)։

Մեծ Հոկտեմբերի առաջին օրերին, 1917 թվականի դեկտեմբերի 7-ին, ՌՍՖՍՀ ժողկոմսովետի որոշմամբ կազմակերպվեց համառուսաստանյան արտակարգ հանձնաժողով՝ Ֆ. է. Ձերժինսկու գլխավորությամբ։ Այդ օրգանը, սովետական ժողովրդի ամենաակտիվ պաշտպանությամբ, բազմաթիվ դավադրություններ, ապստամբություններ ու խռովություններ ջախջախեց, հազարավոր հակահեղափոխականներ վնասազերծվեցին։ Ներքին և արտաքին հակահեղափոխությունը կատարյալ ոռնոց բարձրացրեց այն բանի համար, որ իբր այդ օրգանը և նրա գործիչները մարդկանց պատժում են կամայական կերպով, առանց մեղքի և հանցանքի։ Սա բացահայտ զրպարտություն էր սովետական պետության այդ կարևոր օրգանի հասցեին։

Կյանքը ցույց տվեց, որ համառուսաստանյան արտակարգ հանձնաժողովի օրգաններն իրենց պատմական միսիան՝ հակահեղափոխության դեմ մղվող պայքարը, իրագործում էին ոչ կամայական կերպով, այլ միայն ու բացառապես սովետական իշխանության օրենքների, որոշումների, դեկրետների և օրինական կարգադրությունների հիման վրա։

Վ. Ի. Լենինը միաժամանակ գրում էր, որ ավելորդ խստությունը, անտեղի բռնությունը և անհիմն պատիժները, միևնույնն է, ցանկալի արդյունքի չեն հասցնի և վնասից բացի ոչ մի օգուտ չեն բերի, դրանցով կոտնահարվեն օրինականության և արդարադատության բոլոր սկզբունքները. «Կան պայմաններ, որոնց ժամանակ բռնությունը և՛ անհրաժեշտ է և՛ օգտակար և կան պայմաններ էլ, որոնց ժամանակ բռնությունը ոչ մի արդյունք չի կարող տալ» (Երկեր, հ. 29, էջ 51)։

Վ. Ի. Լենինը անդադրում ընդգծում էր, որ անհրաժեշտ է զանազան հանցագործություններ կատարող անձանց նկատմամբ նշանակվող պատիժները զուգորդվեն բնակչության մեջ լայն բացատրական, դաստիարակչական աշ-

խատանքի հետ։ Նա բարձր էր գնահատում հասարակայնության դերը օրինախախտումների, մանավանդ, հանցավոր օրինախախտումների դեմ մղվող պայքարում, կարևոր նշանակություն տալիս այն բոլոր երաշխիքներին, որոնք սահմանված էին օրենքով՝ հանուն քաղաքացու շահերի, հանուն նրա քաղաքացիական ազատությունների ու իրավունքների։ Նա պահանջում էր կրկնակի, եռակի ուշիմություն ցուցաբերել ամեն անգամ, երբ խոսքը վերաբերում է մարդկանց կալանավորման ու դատի տալու հարցերին։

Անհրաժեշտ է մատնանշել, որ իր բազմաթիվ աշխատությունների մեջ Լենինը սոցիալիստական օրինականությունն ու սովետական արդարադատությունն իրականացնող օրգանների առաջ որոշակի և կոնկրետ խնդիրներ է դրել։ Նրա ցուցումների համաձայն այդ նոր արդարադատությունն ու օրինականությունը իրենց սուր ծայրով պետք է ուղղվեն պետական վտանգավոր հանցագործությունների, հանրային սոցիալիստական սեփականության հափշտակումների, քաղաքացիների կյանքի, առողջության, ազատության, պատվի և արժանապատվության նկատմամբ կատարվող ոտնձգությունների, կաշառքի, խուլիգանության, բյուրոկրատիզմի և քաշքշուկի դրսևորումների դեմ։ 1918 թվականի դեկտեմբերի 7-ին Ֆ. Է. Ձերժինսկուն հասցեագրած երկտողում Վ. Ի. Լենինը կատեգորիկ պահանջում էր արտակարգ միջոցների դիմել հակահեղափոխական տարրերի նկատմամբ։

Մեծ առաջնորդի աշխատությունների ուսումնասիրությունը ցույց է տալիս, թե ինչպիսի սրությամբ է նա դնում հանրային բարիքի պաշտպանության հարցը։ «Հողի մասին դեկրետում» նա գրում է, որ բռնագրավված և ժողովրդին պատկանող գույքի որևէ փչացում հայտարարվում է ծանրագույն հանցագործություն և այն պետք է պատժվի հեղափոխական դատարանի կողմից։

Վ. Ի. Լենինը սոցիալիստական օրինականության ամրապնդման ու պահպանման և սովետական արդարադատության ճիշտ իրականացման համար պայքարող օրգաններից պահանջում էր ամենաանողոք միջոցների դիմել կաշառքի գործերով։ Նա խստորեն դատափետում էր այն դատարաններին, որոնք կաշառակերների նկատմամբ մեղմ դատավճիռներ էին կայացնում։ Նա առաջարկեց դեմոնստրատիվ արագությամբ օրենք ընդունել, որով կաշառակերության, կաշառատվության և կաշառակերության միջնորդության համար սահմանվի բանտարկություն, ոչ պակաս քան տասը տարի ժամանակով, և նրա պահանջի հիման վրա դեռևս 1918 թվականի մայիսին նման օրենք ընդունվեց։ Այսպես էր դնում Վ. Ի. Լենինը կաշառքի դեմ տարվող պայքարի հարցը, որովհետև խորապես ըմբռնում էր, որ «...եթե կա մի այնպիսի երևույթ, ինչպիսին կաշառքն է, եթե կաշառքը հնարավոր է, ապա քաղաքականության մասին խոսք չի կարող լինել։ Այստեղ քաղաքականությանը մերձեցում անգամ չկա, այստեղ չի կարելի քաղաքականություն կենսագործել, որովհետև ձեռնարկած բոլոր միջոցները կախված կմնան օդի մեջ և բացարձակապես ո՛չ մի հետևանքի չեն հասցնի» (Երկեր, հ. 33, էջ 72—73)։

Մեծ առաջնորդը այդ նույն օրգանների առաջ խնդիր էր դնում խիստ հետապնդել և պատժել նաև խուլիգաններին։

Սովետական պետության հիմնադիրը զայրույթով և արգահատանքով է նշավակում բյուրոկրատիզմն ու քաշքշուկը։ Նրա աչքում այդ արարքները, ինչպես նաև պաշտոնական դիրքի չարաշահումը իշխանություն կամ պաշտոն ունեցող և ժողովրդի լիազորությամբ վստահված անձանց կողմից, սովետական պետության դեմ ուղղված ամենավտանգավոր հանցագործություններն



են, սոցիալիստական օրինականության, քաղաքացիների իրավունքների և շահերի ամենակոպիտ խախտումները։ Պետական ապարատի տարբեր օղակների գործունեության մեջ բյուրոկրատիզմի թեկուզ ամենափոքր դրսևորումը Վլադիմիր Իլյիչը դիտում էր իբրև իշխանության չարաշահման և քաղաքացիների իրավունքների ոտնահարման աղբյուր։ Նա անհրաժեշտ էր համարում դատի տալ և պատժել բյուրոկրատներին, որոնք հարկադրում են բանվորին և գյուղացուն հինգ կամ վեց անգամ հիմնարկ գալ և վերջապես դրանից հետո են բարեհաճում նրան տալ ինչ-որ ձևականորեն ճիշտ պատասխան։

Անհրաժեշտ է ընդգծել, որ սոցիալիստական օրինականության խիստ պահպանման ու ամրապնդման և սովետական արդարադատության ճիշտ իրականացման մասին լենինյան դրույթները կարմիր թելի նման անցել են ՍՄԿԿ համագումարների, կոնֆերանսների և կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումների ընդունած որոշումներում ու բանաձևերում։ Դրանք իրենց իրավաբանական արտացոլումն են գտել մեր համաժողովրդական պետության օրենսդրական բազմաթիվ ակտերում, ինչպես և ՍՍՀՄ և միութենական ու ավտոնոմ հանրապետությունների սահմանադրություններում։ Կուսակցությունը և սովետական պետությունը միշտ անդադրում պահանջել ու պահանջում են, որ օրինականությունը խստիվ կերպով արմատավորվի և արդարադատությունը ճշտորեն իրականացվի, որ պատժվեն բոլոր նրանք, ովքեր այդ կարևոր բնագավառներում հարկ եղած վճռականությամբ իրենց չեն դրսևորում։ Թույլ տրված ապօրինությունները մեր փառապանծ կուսակցության ու նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի ջանքերով վերացվեցին, սխալները շտկվեցին և արդարադատության իրականացումը ճիշտ հունի մեջ մտավ։

Թե ինչպես են սոցիալիստական օրինականության արմատավորման և նոր արդարադատության անթերի իրականացման պահանջները արտացոլվել կուսակցական փաստաթղթերում և մեր օրենսդրական-իրավաբանական ակտերում, ցույց են տալիս հետևյալ փաստերը։ 1919 թվականի մարտին կուսակցության VIII համագումարը «Միջակ գյուղացիության նկատմամբ ունեցած վերաբերմունքի մասին» իր հայտնի բանաձևում ընդգծեց սովետական իշխանության դեկրետների պահպանման անհրաժեշտությունը բանվոր դասակարգի՝ գյուղացիության հետ ունեցած կայուն դաշինքի քաղաքականությունը կյանքում հետևողականորեն կիրառելու համար։ Համագումարն առաջարկեց խիստ պատժել այն անձանց, ովքեր կմեղադրվեն կամայական գործողությունների, այսինքն՝ կենտրոնական պետական իշխանության օրգանների ճշգրիտ ցուցումների վրա չհիմնված բռնագրավումների և նման ապօրինությունների մեջ։ Համագումարի բանաձևը դրա հետ միասին նշում էր, որ սովետական իշխանության այն ներկայացուցիչները, որոնք իրենց թույլ են տալիս ոչ միայն ուղղակի, այլ թեկուզ և անուղղակի հարկադրանք գործադրել գյուղացիներին կոմունաներում միացնելու նպատակով, պետք է ենթարկվեն խիստ պատասխանատվության և հեռացվեն գյուղում աշխատելուց։

Համառուսաստանյան կուսակցական XI կոնֆերենցիան, որը տեղի ունեցավ 1921 թվականի դեկտեմբերին, քաղաքացիական կռիվների հաղթական ավարտից քիչ առաջ, իր որոշումներից մեկում մեկընդմիշտ ընդգծեց. «...հերթական խնդիրն է՝ կյանքի բոլոր բնագավառներում հեղափոխական օրինականության խիստ սկզբունքների արմատավորումը»։ ՍՄԿԿ XX համագումարը կուսակցության Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցման մասին ընդունած իր որոշման մեջ ուղղակի մատնանշեց. «Համագումարը լի-





*վին հավանություն է տալիս սոցիալիստական օրինականության ամրապընդ-
ման, սովետական սահմանադրությամբ երաշխավորված քաղաքացիների իրա-
վունքների խիստ պահպանման ուղղությամբ ՍՄԿԿ Կենտկոմի իրականացրած
միջոցառումներին և կուսակցական ու սովետական բոլոր օրգաններին պար-
տավորեցնում է աչալուրջ կերպով կանգնել օրինականության պաշտպանու-
թյան դիրքերում, վճռաբար և խիստ կասեցնել անօրինականության, կամա-
յականության, սոցիալիստական իրավակարգի խախտման ամեն մի դըր-
սևորում»։*
*Սոցիալիստական օրինականության ամրապնդման և սովետական ար-
դարադատության անխախտ իրականացման պահանջը ամենայն վճռականու-
թյամբ առաջ է քաշվում կուսակցության նոր ծրագրում։ Ծրագիրը մասնա-
ցույց է անում, որ «աշխատողի անբարեխղճությունը, իշխանությունը չարա-
շահելը պետք է վճռականորեն խափանվեն ու խստիվ պատժվեն, անկախ-
անձնավորությունից։ Սովետական մարդկանց պարտքն է պաշտպանել օրի-
նականությունը և իրավակարգը, անհանդուրժողականություն ցուցաբերել չա-
րաշահումների նկատմամբ և պայքարել դրանց դեմ»* (ՍՄԿԿ ծրագիրը, էջ
*127)։ Դրա հետ միասին ծրագիրը նշում է այն հիմունքները, որոնց հիման
վրա իրականացվում է սովետական սոցիալիստական արդարադատությունը։
ՍՍՀՄ, միութենական և ավտոնոմ հանրապետությունների սահմանա-
դրությունների և մյուս կարևորագույն օրենսդրական ակտերի մեջ նույնպես
կարմիր թելի նման անցնում է սոցիալիստական օրինականությանապահով-
ման և արդարադատության անսխալ իրականացման կատեգորիկ պահանջը։
Վ. Ի. Լենինը ամենայն խորաթափանցությամբ լուծեց օրինականության
և նպատակահարմարության փոխհարաբերության պրոբլեմը։ Նա իրավացի-
կերպով գտնում է, որ մեր երկրում ընդհանրապես անթույլատրելի է օրի-
նականությունը հակադրել նպատակահարմարությանը և դրանց մեջ ինչ-որ
անհամատեղելի անջրպետ դնել։
Առաջնորդը բազմիցս մատնացույց է արել օրինականության և կուլտու-
րականության սերտ կապը։ Որքան բարձր է հասարակական կյանքում օրի-
նականության իրական պաշտպանության աստիճանը, որքան արմատավոր-
ված է տվյալ երկրում օրինականության ռեժիմը, այնքան բարձր է կուլտու-
րականության մակարդակը և ընդհակառակը։
Նա կոչ էր անում սովորել կուլտուրապես պայքարել օրինականության
համար և չմոռանալ սրա սահմանները հեղափոխության մեջ։ Նա զայրույթով
էր արտահայտվում տեղական ազդեցությունների մասին և մատնանշում,
որ այդ ազդեցությունները կուլտուրականության և օրինականության մեծա-
գույն թշնամիներն են։
Սովետական պետության հիմնամյակը միաժամանակ սոցիալիստական
օրինականության հաղթական երթի և սովետական արդարադատության ճիշտ
իրականացման հիսուն ամյակն էր։ Այդ հարցերի մասին լենինյան վիթխարի
ժառանգության ուսումնասիրությունը մեր օրերում հսկայական տեսական ու
գործնական նշանակություն ունի։ Այն մեծապես կօգնի սովետական մարդ-
կանց իրավագիտակցության բարձրացմանը, երկրում օրինականության, պե-
տական կարգապահության և իրավակարգի ամրապնդմանն ու բարգավաճ-
մանը։ Այն հսկայական չափով կնպաստի, որ սովետական քաղաքացիների
մոտ է՛լ ավելի բարձրանա քաղաքական զգոնությունը։*

ԱԼԵՔՍԱՆՅԱՆ Տ. Ա.

Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# ԱՐԴԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՍՈՑԻՈԼՈԳԻԱՅԻ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

*XX դարի առաջին կեսին բուրժուական փիլիսոփայությունն ու սոցիոլոգիան մինչև վերջ դրսևորեցին իրենց ռեակցիոն գծերը և դրանով էլ հենց օտարացան պատմական գիտությանը։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո վերջնականապես ակնհայտ դարձավ այդ փիլիսոփայության և սոցիոլոգիայի դատապարտվածությունը։ Ժամանակակից բուրժուական սոցիոլոգիայի հակակոմունիստական բնույթը, սոցիալական առաջավոր հեղաշրջումների նկատմամբ բացահայտ թշնամությունը, կապիտալիստական կարգերի կույր պաշտպանությունը նրան վերածեցին հակագիտական, անհեթեթ, հակաբանական թեորիաների հավաքածուի։ Այս ամենը արդի բուրժուական սոցիոլոգիայի և առանձնապես էմպիրիկ սոցիոլոգիայի խոր ճգնաժամի արտահայտությունն է։ Իշխանության գլուխ կանգնած մոնոպոլիստական միավորումների պատվերով սոցիալական պրոբլեմների ուսումնասիրումը, սոցիոլոգիան քաղաքականության աղախին դարձնելը, սոցիոլոգիայի հակաժողովրդական, հակադեմոկրատական բնույթը, ռասայականության, կոսմոպոլիտիզմի պրոպագանդան և այլն, էլ ավելի խորացրին արդի բուրժուական սոցիոլոգիայի ճգնաժամը։*

***

*Արդի բուրժուական ամբողջ սոցիոլոգիայի և, առանձնապես, ամերիկյան սոցիոլոգիայի զարգացման վիճակն ու հեռանկարները բնութագրված են ամերիկյան, անգլիական, ֆրանսիական և բուրժուական շատ այլ սոցիոլոգների աշխատություններում։ Այդ տեսակետից բնորոշ է հատկապես «Ժամանակակից սոցիոլոգիական թեորիան իր ժառանգության ու փոփոխության մեջ» խորագիր կրող ստվարածավալ ժողովածուն, որը լույս է տեսել ամերիկյան հրատարակությամբ, 1957 թվականին Նյու-Յորքում և թարգմանվել է ռուսերեն 1961 թվականին։ Ժողովածուն բուրժուական տարբեր երկրների մի մի շարք աչքի ընկնող սոցիոլոգների կոլեկտիվ ստեղծագործությունն է։*

*Գրքի գլխավոր թեզիսը հռչակում է. «Մենք չգիտենք, թե ուր ենք գնում, բայց մենք գտնվում ենք ճանապարհին»։ «Այդ արտահայտված կամ չարտահայտված զգացումը արտացոլում է մեր ամենօրյա գործունեության շատ տե-*

սակները ոչ միայն այստեղ, Միացյալ Նահանգներում, այլև ամբողջ աշխարհում»:

Այստեղից հետևում է, որ բուրժուական սոցիոլոգները չգիտեն, թե ուր են գնում, չգիտեն հատկապես ինչպիսի ճանապարհի վրա են կանգնած, թեև գտնվում են ճանապարհին: Այդ ուղին անորոշ, անհայտ ու անհեռանկար է: Ավելին, այդ ուղին ապագայի նկատմամբ ոչ մի հույս չի ներշնչում: Անվստահությունը, պեսիմիզմը, նիհիլիզմը համակել են սոցիոլոգների ու քաղաքագետների, փիլիսոփաների ու բնագետների զգալի մասին: Նույնիսկ այնպիսի քաղաքական գործիչ, ինչպիսին Ջոն Ֆոստեր Դալեսն էր, իր «Պատերազմ թե խաղաղություն» գրքում գրում է. «Ինչ-որ վատ բան է կատարվում մեր երկրի հետ... Անհանգիստ լինելու աղբյուրը նյութական բնույթ չի կրում: Մեզ պակասում է իսկական ու դինամիկ հավատը, իսկ առանց դրան մեզ քիչ թե շատ ոչ ոք չի օգնի»: Այդ նույն ոգով է արտահայտվում Կոլումբիայի համալսարանի պրեզիդենտ Գրեյսոն Կիրկը. «Մեր ամբողջ պատմության ընթացքում մենք առաջին անգամ անվստահ ենք ապագայի նկատմամբ»: «Ո՞վ կհամարձակվեր ժխտել Ամերիկայի Միացյալ Նահանգների հեռանկարային վեհությունը դարի առաջին քառորդում, ո՞վ կարող է նման բան հաստատորեն պնդել այժմ՝ դարի կեսին»,— նկատում է անգլիական սոցիոլոգ Ռոբերտ Հեյլբրոուները:

Այսպես, ամենուրեք անվստահություն ապագայի նկատմամբ: «Որտե՞ղ ենք, ի՞նչ ճանապարհի վրա ենք,— հարցնում է փիլիսոփայող բիոլոգ Տուրե Ֆոն Իկսկյուլը:— Ի՞նչ ապագա է խոստանում ներկան, որ պրոգրեսի նկատմամբ հավատի դարաշրջանի հետ միասին անցյալին է թողել այն ամենը, ինչ մեզ թվում էր կայուն ու հաստատուն: Եվ առհասարակ մենք ապագա ունե՞նք»:

Խոր տագնապ ապրելով կապիտալիստական հասարակության ապագայի համար, շատ սոցիոլոգներ հուսահատվում են, կորցնում հեռանկարը, ընկնում պեսիմիզմի գիրկը: Ո՞րն է ճանապարհը: Ո՞րտեղ ենք մենք: Ահա այն հարցերը, որոնց պետք է պատասխանեն հուսահատ սոցիոլոգները: Բայց ժամանակակից շատ սոցիոլոգներ ի վիճակի չեն պատասխանելու դրանց: Նրանք ոչ միայն չեն ըմբռնում ներկան, այլև կտրված են անցյալից, չեն հասկանում նաև ապագան: Ավելին, նրանց թեորիաները պիտանի չեն արդի հասարակության շարժման տենդենցը հասկանալու համար:

Ի վիճակի չլինելով պատասխան տալու դարաշրջանի հարցերին, նրանք փորձում են վերակենդանացնել հին, իր դարն ապրած, արդիականությունը հասկանալու համար քիչ պիտանի թեորիաները: Առկա են շատ թեորիաներ, սոցիոլոգիական շատ դպրոցներ, որոնք, սակայն, բոլորովին էլ չեն բավարարում կապիտալիստական հասարակության որոշ ոլորտի մարդկանց: Այդ ոլորտը թերևս մինչև վերջ չի հիասթափվել գոյություն ունեցող սոցիոլոգիական թեորիաներից, բայց որոնում է և ըստ երևույթին մեծ հույսեր չի կապում այդ որոնումների հետ, որովհետև քիչ է վստահում սոցիոլոգների կողմից ապագայի կանխատեսման հավաստիությանը: Նրանց մնում է միայն ընդունել, թե «Քանի որ մենք գտնվում ենք ճանապարհին, մենք կարիք չունենք ըստ երևույթին ուշադրություն դարձնելու այն բանի վրա թե, ուր ենք գնում»:

Այս ամենից հետո բոլորովին էլ զարմանալի չէ, որ բուրժուական սոցիոլոգների որոշ մասը կապիտալիստական հասարակության զարգացման



հարցը, այն հարցը, թե ուր է գնում այդ հասարակությունը, համարում է «անօրինական, ավելորդ և նույնիսկ վտանգավոր: Մենք մերժում ենք կանխագուշակումը,— ասում են նրանք,— այո, թերևս դա հարկավոր էլ չէ: Կարևոր է, որ գոնե մոտակա ապագայում կույր չլինենք: Առաջշարժման համար չկան մեծ հեռանկարներ: Հասարակության մեջ կատարվում է փոփոխություն, մենք չգիտենք, թե ուր է տանում մեզ այդ փոփոխությունը»: Այսպես, օրինակ, արդի սոցիոլոգներից մեկը՝ Կարլ Պոպերը, ընդունում է, որ «մենք չենք կարող կանխատեսել մարդկային պատմության ապագա ընթացքը», որովհետև «չենք կարող ստեղծել պատմական զարգացման գիտական տեսություն, որը գիտական կանխատեսման հիմք ծառայի»: Իսկ մեկ ուրիշ սոցիոլոգ՝ Ռայմոն Արոն պնդում է, որ ճանաչելի է միայն պատմական առանձին գործողությունների իմաստը, իսկ ամբողջ պատմության իմաստը՝ երբեք: Պատմության իմաստը և նպատակն անիմանալի են: Հայտնի պատմաբան Թոյնբին այնքան է քամահրում պատմության էությունը, որ այն անվանում է աստվածային կանխագծումների անընդհատ կատարում: Մարդկությունը ընդունակ է ընկալել աստվածային այդ պլանի միայն առանձին մասերը և այլն: Այդ ասույթների մեջ պատմական ֆատալիզմը և ագնոստիցիզմը հանդես են գալիս համատեղ:

***

Արդի բուրժուական սոցիոլոգիայի գլխավոր արատներից մեկը սոցիալական կյանքի երևույթների ուսումնասիրման ժամանակ պատճառականության և օրինաչափության գիտական հասկացություններից հրաժարվելն է: Պատճառականությունը և օրինաչափությունը «հակապատմական» և «թեոլոգիական» հայտարարելով, պատճառականության ու օրինաչափության կատեգորիաները փոխարինելով «սոցիալական ինտեգրացիա», «կորելյացիա» և «ֆունկցիա» հասկացություններով, նրանք դրանով ոչ միայն որոշակի տեսական շփոթություն մտցրին սոցիոլոգիայի մեջ, այլև այն զրկեցին իր հիմնական հասկացություններից, փոխեցին սոցիոլոգիական հետազոտության նպատակներն ու խնդիրները, սոցիոլոգիան մղեցին կեղծ գիտական ու հակապատմական ուղին:

Սոցիալական պրոցեսները, ասում են նրանք, հոգեբանական պրոցեսներ են, այդ պատճառով ավելի քիչ են ենթարկվում հսկողության, քան այն պրոցեսներն ու օբյեկտները, որոնց հետ գործ ունեն բնական գիտությունները: Սոցիալական պրոցեսը բազմակողմանի է, ինդիվիդուալ, նրա մեջ տեղի են ունենում այնպիսի երևույթներ, ինչպես գրգիռն ու ռեակցիան, գնահատումը, մոտիվները, ցանկությունները, իմպուլսները, անհատների ու խմբերի իդեալները, որոնք չեն ենթարկվում հետազոտության և չունեն պատճառական-պայմանավորված ու օրինաչափ բնույթ: Ոչ միայն հոգեբանական, այլև հասարակական բոլոր երևույթները հետազոտման ենթակա չեն, դրանք չի կարելի գրաֆիկորեն պատկերել, ենթակա չեն չափման, ստուգման: Սոցիալական պրոցեսները ստատիկ չեն, այլ դինամիկ, ուստի նրանց մեջ չի կարելի բաց անել «ունիվերսալ հարաբերություններ», այսինքն օրենքներ: Մերժելով հասարակական երևույթների օրինաչափ և պատճառական-պայմանավորված բնույթը, բացասելով հասարակական երևույթների իմացության նկատմամբ գիտական մեթոդների կիրառման հնարավորությունը, ամերիկյան սոցիոլոգ Էլվուդը որպես հասարակական երևույթների իմացության գըլ-

խավոր մեթոդ, առաջարկում է այսպես կոչված «գիտական ֆանտազիան»։
«Սոցիոլոգիայի առարկայի բնույթի հետևանքով — գրում է նա,—գիտական
ֆանտազիան այդ բնագավառում սոցիալական պրոցեսների մեջ թափանցե-
լու մեր անհրաժեշտ մեթոդն է»։ Սոցիալական գիտության տարբերիչ գիծը,—
շարունակում է նա,— այն է, որ նա «երևակայական» է։ Սոցիալական պրոբ-
լեմները «գուշակելու» համար Էլվուդը հանձնարարում է իդեալիստական հո-
գեբանության սուբյեկտիվ մեթոդներ։ Այդ նույն ոգով է հանդես գալիս
արևմտա-գերմանական սոցիոլոգ Խ. Շելսկին։ Նա, ինչպես և Էլվուդը, գըտ-
նում են, որ հասարակական զարգացման ոչ մի օրենք գոյություն չունի։ Դեռ
ավելին, նա ժխտում է պատմական դեպքերի գնահատման օբյեկտիվ չափա-
նիշը։ «Օբյեկտիվ չափանիշներ,— ասում է նա,—գոյություն ունենալ չեն կա-
րող»։ Հասարակության բնորոշ առանձնահատկությունը, ըստ նրա, անորո-
շությունն է։ Հասարակական երևույթների գնահատումը կախված է ոչ թե օբ-
յեկտիվ օրենքներից, այլ սուբյեկտիվ էմոցիաներից և մարդու խորհրդածու-
թյուններից։

Իհարկե, գիտական երևակայությունը և սուբյեկտիվ էմոցիաները, մար-
դու խորհրդածությունները կարևոր մոմենտներ են ոչ միայն հասարակական,
այլև բնական երևույթների իմացության պրոցեսում, բայց այդ երևույթների
իմացության գործում միայն գիտական երևակայությամբ կամ սուբյեկտիվ
խորհրդածությամբ հեռուն չես գնա։ Իրենք՝ գիտական կանխատեսումներն ու
սուբյեկտիվ խորհրդածությունները պետք է ելնեն բնության և հասարակու-
թյան երևույթների մասին որոշակի, հավաստի գիտելիքներից։ Երևակայու-
թյունը չի կարող գիտական լինել, եթե այն չի ելնում իրականությունից։
Սուբյեկտիվ խորհրդածությունը չի կարող հասնել հավաստի ճշմարտություն-
ների, եթե զուրկ է գիտական նախադրյալից։ Պրակտիկան ցույց է տվել, որ
իմացության պրոցեսում զուտ երևակայությունը անզոր է, սուբյեկտիվ խոր-
դածությունը՝ անպտուղ։ Այն սոցիոլոգիան, որը հիմնվում է երևակայության,
կամ զուտ խորհրդածության վրա, առանց օբյեկտիվ նախադրյալների, տուրք
է տալիս ֆիդեիզմին, հրաժարվում է գիտական իմացությունից։ Դրանումն է
հենց ժամանակակից բուրժուական սոցիոլոգիայի թույլ կողմերից մեկը։
Բուրժուական սոցիոլոգիայի համար բնորոշ այդ գիծը ոչ միայն ժխտում է
հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները, այլև անվստահություն
է սերմանում դեպի սոցիալական գիտությունը։ Սոցիալական կյանքի երևույթ-
ների նկատմամբ այդպիսի մոտեցման հետևանքով հավատը հասարակական
պրոգրեսի նկատմամբ, որ մի ժամանակ տիրապետող էր բուրժուական գա-
ղափարախոսության մեջ, ապրում է իր խոր ճգնաժամը։ Պրոգրեսի գիտական
թեորիայի փոխարեն քարոզվում է անկումայնություն, հոռետեսություն։
Մարդկային միտքը դիտվում է որպես անուժ ու անօգնական մի բան։

Հասարակական երևույթների պարզ հարցերը մթագնելու գործում քիչ
դեր չեն խաղում Բերտրան Ռասելի «ռելյատիվիստական թեորիան» և Ժորժ
Գուրվիչի հասարակության այսպես կոչված «հիպեր-էմպիրիկական», «դիա-
լեկտիկական», «գերռելյատիվիստական» թեորիան։ «Հիպեր-էմպիրիկական»
սոցիոլոգիայի էությունն այն է, որ «պատճառականության հարաբերությու-
նը արմատապես դեն է նետվում, որպես անընդունելի սոցիալական երևույթ-
ների նկատմամբ»։ Ինքը՝ Գուրվիչը բազմիցս ընդգծել է, որ «չկա ավելի ան-
պտուղ բան, քան պատճառական օրենքները սահմանել ցանկանալը»։ Սոցիա-
լական սիստեմի ներսում տարբեր հարաբերությունները պարզելու համար,



գրում է նա, հարկավոր է մոտենալ ոչ թե պատճառականության տեսակետից,
այլ ֆունկցիոնալ սոցիոլոգիայի տեսակետից։

Այսպիսով, ֆունկցիոնալ սոցիոլոգիան դեն է նետում պատճառական
հարաբերությունը և հետազոտման հիմք է վերցնում փոփոխական ֆունկ-
ցիաները։ Այսպես կոչված «Փոփոխական ֆունկցիոնալ» սոցիոլոգիայի տե-
սակետից սոցիալական կյանքում բոլոր փոփոխությունները կատարվում են
ոչ թե պատճառա-հետևանքային հարաբերությունների ձևով, այլ բազմաթիվ
գործոնների փոփոխության հետևանքով, գործոններ, որոնք իրենց նշանա-
կությամբ շատ տարբեր են։ Ոչ մի գործոն, ասում են «հիպեր-էմպիրիկական»
սոցիոլոգիայի կողմնակիցները, փոխգործողության պրոցեսում սոցիալական
օրենք կամ հիմնական սոցիալական օրենք չի կարող կոչվել։ Հասարակական
կյանքի գործոններից և ոչ մեկը՝ քաղաքական, կրոնական, տնտեսական.
տեխնիկական և այլն, չի կարող կոչվել վճռական, հիմնական։ Դրանք բոլորը
փոփոխական-ֆունկցիոնալ են, հարաբերական են և այդ պատճառով բացա-
ռում են ամեն տեսակի «հաստատուն օրենքներ»։

Գուրվիչի այդ «հիպեր-էմպիրիկական» սոցիոլոգիայի մեջ ամեն ինչ հա-
րաբերական է, չկա ոչ պատճառ, ոչ էլ հետևանք, չկան գլխավոր որոշիչ գոր-
ծոններ, օրենքներ, հիմնական կապեր։ Նա պրոպագանդում է բացարձակ
ռելյատիվիզմ։ Միանգամայն ճիշտ են այդ տեսության մարքսիստական քննա-
դատները, երբ պնդում են, որ գործոնների թեորիան չի պատասխանում այն
արմատական հարցին, թե ո՞ր «գործոնն» է առաջնային, հիմնական, գլխա-
վոր և ո՞ր «գործոնը»՝ երկրորդական ու ստորադաս։ Ի՞նչն է առաջնայինը։
Հասարակական կեցությո՞ւնը, թե՞ գիտակցությունը. նյութակա՞ն, թե՞ հոգե-
վոր կյանքը՝ կրոնական, բարոյական, իդեոլոգիական հարաբերությունները։

Ի հակադրություն հասարակության զարգացման հակագիտական այդ
կոնցեպցիայի մարքսիզմն ուսուցանում է, որ այն մարդիկ, որոնք մերժում
են տնտեսական օրենքների, պատճառ-հետևանքային հարաբերությունների
օբյեկտիվ բնույթը, ըստ էության ժխտում են գիտությունը։ Մարքսիզմը սո-
վորեցնում է, որ հասարակության տնտեսական կյանքում օբյեկտիվ օրի-
նաչափությունների գոյության ժխտումը հանգեցնում է քաոսի և պատահակա-
նությունների տիրապետության, այն բանին, որ մարդիկ միշտ էլ ստրկական
կախման մեջ կլինեն այդ պատահականություններից։ Մարդիկ չէին կարո-
ղանա ոչ միայն հասկանալ, այլև պարզապես գլուխ հանել պատահականու-
թյունների այդ քաոսից։

Ծայր աստիճան գռեհկացնելով հասարակության մասին գիտությունը,
ժամանակակից բուրժուական սոցիոլոգները սոցիալական փոփոխություննե-
րի գլխավոր պատճառը համարում են ամեն ինչ՝ «ոգին», «սերը», «կրոնը»,
«հավատը», «ռասան», «բնազդը», «հանգիստը», «հաջողությունը», «մեծ ան-
հատներին», «լիդերներին», «դեմոկրատիան», «միապետությունը», «դիկ-
տատուրան», մի խոսքով ինչ կամենաք, ընդհուպ մինչև շրթներկն ու
լվացքի օճառը։ Այսպիսով, բուրժուական ռեակցիոն սոցիոլոգները ցնորա-
միտ վերաբերմունք են հանդես բերում հասարակական երևույթների վեր-
լուծման նկատմամբ։ Նրանք հեշտությամբ հերքում են, հաստատում, հորի-
նում, միայն թե ժխտեն մարքսիզմը։ Նրանց նշանաբանն է, որքան ավելի
շատ է հասարակության մասին հակագիտական գրականությունը, այնքան
ավելի շատ է քաոսը մարդկանց գիտակցության մեջ։

Ժխտելով հասարակության օբյեկտիվ տնտեսական օրենքների գոյությունը

և դրանց իմացության հնարավորությունը, ռեակցիոն սոցիոլոգները ուշադրությունը կենտրոնացնում են անձի ինդիվիդուալ խառնվածքի ու հակումների ուսումնասիրման վրա, փնտրում են ծնողների ու զավակների խառնվածքի նմանություն, փորձում են կապիտալիստական հասարակության մարդու ոճրագործությունը բացատրել անձի խառնվածքով կամ ծնողներից ժառանգած գծով: Նրանք փորձում են ապացուցել, որ մարդու անձնական դժբախտության պատճառը, նրա ոճրագործության աղբյուրը որոշ օրգանների գործունեության խախտումն է, մարդու խառնվածքը, հակումները և այլն:

Նրանք կարևոր նշանակություն են տալիս անհատի ժառանգական գծերին՝ հասարակության մեջ նրա տեղը որոշելու համար: «Անհատը հասարակության խթանների ազդեցության տակ ժառանգած գծերի կազմակերպումն է ու մշակումը»: Այլ կերպ ասած, հասարակության մեջ վերջնականապես մշակվում և ձևավորվում են անձի ժառանգած բոլոր գծերը: Այստեղից հետևություն, որ անձի ոճրագործության կամ երջանկության աղբյուրը ծնողներից ժառանգած գծերն են:

Անհետաքրքիր չէ նաև երջանկության՝ բուրժուական սոցիոլոգների ըմբռնումը: Բոգարդուսն, օրինակ, իր ընթերցողներին հավատացնում է, որ երջանիկ կարող է լինել նա, ով հակված է ինքնախորացման, հայեցողության, խոհականության, այսինքն՝ հնազանդ է բախտին: Ժամանակակից սոցիոլոգիան, հատկապես ամերիկյան սոցիոլոգիան, զբաղվում է այնպիսի պրոբլեմներով, ինչպիսիք են՝ ում կարելի է անվանել խաբեբա, հիմար, տարօրինակ և այլն:

Որքան էլ տարօրինակ է, ֆիզիկայի, քիմիայի, բիոլոգիայի, աստղագիտության ու աստրոֆիզիկայի և այլ բնագավառներում կատարված մեծագույն հայտնագործությունները ժամանակակից բուրժուական աշխարհըմբռնման մեջ ճգնաժամ են առաջացրել: Առաջին հայացքից պարադոքս թվացող այդ երևույթը տեղի ունի հատկապես այն պատճառով, որ բուրժուական փիլիսոփայությունը և սոցիոլոգիան հրաժարվել են բնության և հասարակության երևույթների՝ գիտության բացահայտած նոր օրինաչափությունների գիտական վերլուծությունից: Բուրժուական փիլիսոփայությունն իր մետաֆիզիկայի և սոփեստության ծանրությամբ ճնշում է գիտական միտքը և դրանով իսկ նախապատրաստում իր վերջնական կործանումը:

Մինչդեռ գիտական հայտնագործությունները բացահայտում են բնության և հասարակության դիալեկտիկական օրենքները, բուրժուական փիլիսոփայությունը փորձում է մթագնել գիտության հետևությունները, դրանով իսկ ստեղծում է գաղափարների գիտական թեորիաների ճգնաժամ: Այս իմաստով կապիտալիզմի պայմաններում նրա սեփական հայտնագործությունները հակասում են նրա մտքի սեփական ուղիներին և դրսևորում են առաջ գնալու իր անընդունակությունը, նրա պրակտիկան սպառվում է նեղ մասնագիտացման մեջ: Նրա թեորիան կազմալուծվում է ֆրագմենտների մեջ, այն չի հավատում գիտության ընդհանուր գիտական տեսությանը, ապաստարան է փնտրում ագնոստիցիզմի, իդեալիստական աբստրակցիաների մեջ:



Բուրժուական սոցիոլոգիայի բնորոշ գիծը մնում է գաղափարների, ուղղությունների և դպրոցների տարընթացությունը: Գաղափարների այդ քաոսի միջից պարզորոշ նկատվում է նրա ռեակցիոն, հակագիտական բուրժուա-ջատագովական բնույթը: Հակակոմունիզմը դրա գլխավոր բովանդակությունն է: Դա այն գլխավոր գաղափարն է, որը ցեմենտում է բուրժուական սոցիոլոգիայի բոլոր ռեակցիոն հոսանքները: Դեպի այդ նպատակը տարբեր դպրոցները տարբեր ուղիներով են գնում:



Առանձին սոցիոլոգներ (Քելլեր, Բառնս, Շպանն, Բոգարդուս և ուրիշներ) պահանջում են վերադառնալ սոցիոլոգիական մտքի զարգացման մինչկապիտալիստական ժամանակաշրջանին: Սոցիոլոգիան պետք է ետ վերադառնա դեպի հնագույն ժամանակները. «Սոցիոլոգիական մտքի աղբյուրների որոնումների մեջ դեպի Կոնտը ետ վերադառնալուց հրաժարվելու ոչ մի հիմք գոյություն չունի»: Իսկ մեկ այլ խումբ սոցիոլոգներ (Սմոլլ, Ֆոն Բելով, Բակս) արհամարհանք են տածում դեպի նախկին սոցիոլոգիական միտքը, և առանձնապես, XIX դարի սոցիոլոգիական միտքը, գտնելով, որ հին Հռոմի փողոցի մարդու, որը պնդում է, թե աշխարհը հանգչում է Ատլասի ուսերի վրա, և XIX դարի պրոֆեսորների միջև տարբերությունը շատ քիչ է: Այդ կոնցեպցիայի կողմնակիցները XIX դարի սոցիոլոգիան համարում էին գռեհիկ, անհուսալի և անպատասխանատու:

Դուրս նետելով անցյալի մեխանիստական սոցիոլոգիական թեորիաներից նրա մատերիալիստական գծերը, որոշ սոցիոլոգներ գնացին իդեալիստական ու մետաֆիզիկական սոցիոլոգիայի թավուտները, մեխանիցիզմը փոխարինեցին թելեոլոգիական և մորալիստական կոնցեպցիաներով, իսկ ուրիշները նոր ծածկույթի տակ վերականգնեցին ռեակցիոն էմպիրիզմը, փորձեցին ստեղծել «նոր սոցիալական ֆիզիկա» և սկսեցին սոցիոլոգիայի մեջ ջանասիրաբար մետաֆիզիկորեն կիրառել «երկրաչափական ու քանակական մեթոդներ»: Մոդա դարձան սուբյեկտիվ իդեալիստական ծայրահեղ կոնցեպցիաները՝ պրագմատիզմը, օպերացիոնալիզմը, տրամաբանական պոզիտիվիզմը և այլն: Սոցիոլոգիական հետազոտությունների մեջ շեշտը դրվում էր սոցիալական էքսպերիմենտների, նույնիսկ սոցիոլոգիայի քվանտացման վրա: Տեսական սոցիոլոգիայի նկատմամբ գոյություն ունեցող ատելությունը սահմաններ չգիտի, փաստամոլուցքը մղվեց սոցիոլոգիայի առաջավոր գիծը: Սոցիոլոգիական մտքի դեգրադացիան լուրջ տագնապ է առաջացրել շատ մտածողների մոտ: Նրանք, սոցիոլոգիայի բախտով անհանգստացած, ասում են՝ «Բայց ի՞նչ քարտեզների և ի՞նչ կողմնացույցի օգնությամբ սոցիալական մտքի պատմաբանը կկարողանա գաղափարների այդ լաբիրինթոսում որոշել իր ուղին: Ի՞նչ չափանիշով նա պետք է օգտվի նրա խնդրին վերաբերող նյութերի ընդհանուր մասսայից հարկավոր փաստերն ընտրելու ժամանակ: Եվ նա ընդհանրապես ինչպես պետք է որոշի, թե որն է նրա խնդիրը»:

Քաոսն ու տարընթացությունները այստեղ սահման չունեն: Իսկ սոցիոլոգիական թեորիաների գիտական չափանիշների բացակայությունն էլ ավելի է ուժեղացնում այդ քաոսն ու տարընթացությունը: Տեղի է ունենում սոցիոլոգիական գիտության լիակատար քայքայում:

Տեսական սոցիոլոգիայի քայքայման մասին են վկայում Արևմտյան Եվրոպայի երկրների՝ Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի շատ սոցիոլոգներ: Այսպես, անգլիական սոցիոլոգ Սպրոտը «Սոցիոլոգիան Անգլիայում» աշխատության մեջ վկայում է, որ «սոցիոլոգիան Անգլիայում մի կիրառական գիտություն է, որը կապված է ընթացիկ իրադարձությունների հետ»: Սոցիոլոգ Հունար Մյուրդալը կոչ է անում ձեռնպահ մնալ (տիրող խավերի—Տ. Ա.) գործնական առաջադրանքներին ուղղակի մասնակցելուց: Էլ ավելի վճռական

հանդես է գալիս սոցիոլոգ Տ. Գ. Մարշալը. «Չպե՞տք է արդյոք զբաղվենք մի
ինչ-որ մեծ բանով, քան փաստեր փնտրելն է, փաստեր, որոնց կարիքը զգում
են քաղաքական գործիչները և կառավարողները»: Տեսական սոցիոլոգիան
մեր երկրում անտեսվում է, բացահայտ ասում էր Ու. Ջ. Գ. Սպրոտտը:
Կասկածից վեր է, որ ոչ միայն ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում,
Գերմանիայում, այլև կապիտալիստական բոլոր երկրներում սոցիոլոգիան
դարձել է տիրապետող դասակարգերի աղախին և դրանով իսկ նա ինքն իրեն
դատապարտել է մահվան:

***

Այն հարցը, թե ի՞նչ է սոցիոլոգիան, ինչպիսի՞ք են նրա հետազոտման
մեթոդները, հատկապես ի՞նչ է հետազոտում, ունի՞ արդյոք հետազոտման
որոշակի առարկա, արդյո՞ք բնորոշվել են բուն սոցիոլոգիայի կատեգորիա-
ների ու օրենքների հասկացությունը՝ ժամանակակից սոցիոլոգիայի հուզող
հարցերն են: Հասկանալի է, որ առանց այդ հարցերը լուծելու չի կարելի
սպասել, որ բուրժուական սոցիոլոգիան կկարողանա որևէ չափով մոտենալ
հասարակական երևույթների գիտական հետազոտմանը: Համարյա բոլորի
կողմից ընդունված է,— ասում է ամերիկյան սոցիոլոգ Ալվին Բոսկովը,—
որ սոցիոլոգիա նշանակում է սոցիալական կյանքի ոչ հստակ, բայց հստա-
տուն հետազոտում: «Մարդկանց մեծ մասը սոցիոլոգիան բնորոշում է բնակ-
չության, սոցիալական ապահովության, հանցագործությունների դեմ պայ-
քարի, ամուսնացողների համար կոնսուլտացիայի «կիրառական» բնագավառ-
ների տերմիններով» և այլն: Սոցիոլոգիայի, որպես գիտության այդ բնորո-
շումը, քննադատվում է հենց Բոսկովի կողմից, որովհետև,— ասում է նա,—
այդ բնորոշման ամենաթռուցիկ վերլուծությունից պարզվում է, որ սոցիոլո-
գիայի հենց մասնագետների մոտ առարկայի էության, նրա հիմնական ա-
ռանձնահատկության զարգացման տենդենցի ըմբռման հարցում հստակու-
թյունն ու միասնականությունը բացակայում են: Այսպես, օրինակ, Ալվին Բոս-
կովը և Շերմերհորնը սոցիոլոգիան տարբերելով հասարակական մտքից, այն
բնորոշում են որպես «գիտություն մարդկանց փոխադարձ հարաբերություն-
ների մասին»:

Հասարակական կյանքի առանձին ոլորտների ուսումնասիրումը, առան-
ձին թեմաների ու պրոբլեմների մշակումը նպատակահարմար են և կարող են
օգնել սոցիոլոգիական գիտության զարգացմանը միայն այն ժամանակ, երբ
առանձին օղակները ուսումնասիրվում են զարգացման ընդհանուր շղթայի
մեջ: Բայց երբ հասարակական երևույթներն ուսումնասիրվում են առանձին-
առանձին, առանց հաշվի առնելու ընդհանուր օրինաչափությունները, այն
օրինաչափությունները, որոնք գործում են հասարակական կյանքի խոր
ոլորտներում և որոշում են ամբողջ հասարակության զարգացման բնույթը,
այդ ժամանակ սոցիոլոգիան դառնում է ինչ որ կամենաք, վերանում է նրա
գիտականությունը և հասարակության երևույթների էությունը բացահայտե-
լու և ճանաչելու փոխարեն էլ ավելի մթագնում դրանց էությունը:
Գոյություն ունեն սոցիոլոգիայի բազմաթիվ, շատ բան խոստացող, բայց
վերացական սահմանումներ, որոնց մեջ որպես սոցիոլոգիայի հիմնական
խնդիր առաջ է քաշվում անհատի բանականության դերի ուսումնասիրումը,
բանականություն, որ նրանց կարծիքով «ստեղծագործության և ճշմարիտ լի-
ների կենտրոնն է»: Այստեղ ամեն ինչ գլխիվայր է դրված: Անհատի



բանականությունը դառնում է հասարակական զարգացման թե հիմքը և թե
չափանիշը, և հասարակական կեցության ու հասարակական գիտակցության
հարաբերակցության պրոբլեմը վճռվում է իդեալիստորեն:

Դեռևս մոդա է, առանձնապես ամերիկյան սոցիոլոգիայի մեջ, Մաքս
Վեբերի կոնցեպցիան, որի համար սոցիոլոգիան սոսկ գիտություն է հասա-
րակական գործողության մասին, ինչպես և գիտություն անհատների վարքի
մասին: Մարդկանց վարքագի՞ծ: Ինչո՞վ է որոշվում մարդկանց վարքագիծը,
ի՞նչն է առաջ մղում նրանց, ինչպիսի՞ն է անհատների փոխգործողությունների
օրինաչափությունների բնույթը, ի՞նչ բան է հասարակական գործողությունը,
ի տարբերություն անհատների գործողությունների: Այդ բոլոր հարցերը մնում
են չպարզաբանված, որովհետև դրանք մեկնաբանվում են սուբյեկտիվ իդեա-
լիստական միկրոսոցիոլոգիայի դիրքերից: Մաքս Վեբերի տեսակետին,
սակայն, նրա մի այլ երանգով շատ նման է Լեոպոլդ ֆոն Վիզեի տեսակետը:
Նա նույնպես փորձում էր սիստեմավորել սոցիալական տիպերը և սահմանեց,
որ հասարակությունը բաղկացած է «ամբոխից, խմբերից և վերացական կո-
լեկտիվներից»:

Ինչպես Մաքս Վեբերի, այնպես էլ ֆոն Վիզեի «սոցիալական գործողու-
թյան» կոնցեպցիան մարդկային վարքագծի աբստրակտ, կյանքից կտրված
տեսություն է, դատարկ սխեմա, ըստ որի իբր ընթացել և ընթանալու է հա-
սարակության զարգացումը: Գիտությանը հայտնի է, որ սոցիոլոգիական
սխեմաները, առավել ևս կամայական, վերացական սխեմաները, երբեք չեն
նպաստել հասարակական երևույթների գիտական իմացության զարգացմա-
նը: Սխեմաները միշտ նեղացնում են հասարակական կյանքի իսկական պրո-
ցեսները, մնացնում են ռեալ պատմության բովանդակության հարստությու-
նը, պատմությունը քաշում են նեղ շրջանակների մեջ և այնպես են աղճատում,
որ բուն պատմությունից ոչինչ չի մնում, բացի մերկ սխեմաներից:

***

Ժամանակակից բուրժուական սոցիոլոգիային հատուկ է նաև սոցիոլո-
գիայի մետաֆիզիկական բաժանումը՝ տեսականի և կիրառականի, որը
հասցրել է պրակտիկայի ու տեսության խզմանը և ապա դրանց հակադրմա-
նը: Բուրժուական սոցիոլոգիայի մեջ տեսության և պրակտիկայի իդեալիս-
տական խզումը մշտապես հանգեցնում էր մի կողմից՝ պատմական օրինա-
չափությունների, պատմական պրոցեսների միստիֆիկացման, իսկ մյուս
կողմից՝ գռեհիկ էմպիրիզմին, հասարակության կյանքի երևույթների գռեհ-
կացման, վուլգարիստական տեսությունների ստեղծմանը: Հասարակա-
կան երևույթները նրանց կողմից քննարկվում են ոչ թե որպես բնապատմա-
կան պրոցես, որը ենթարկվում է ճշգրիտ գիտական հետազոտման, այլ ընդ-
հակառակը, իրար հետ ոչնչով չկապակցվող պատահական փաստեր, որոնք
անիմանալի են: Սոցիոլոգիական թեորիաների մեջ ագնոստիցիզմը դառնում
է ընդհանուր երևույթ:

Տեսության և պրակտիկայի խզումը և դրանց հակադրումը վերջ ի վերջո
հանգեցրեց փիլիսոփայության և սոցիոլոգիայի միասնության ժխտմանը, սո-
ցիալական փիլիսոփայությունը՝ բուն սոցիոլոգիային, սոցիոլոգիական տե-
սությունը սոցիալական փիլիսոփայությանը հակադրելուն, անտեսելով նրանց
միասնությունը և տարբերությունը:

«Սոցիալական տեսության» մետաֆիզիկական հակադրումը «սոցիալական փիլիսոփայությանը» բխեցվում է այն բանից, որ իբր դրանցից առաջինը՝ «սոցիալական տեսությունը», հետապնդում է միայն «գիտական նպատակներ», այսինքն՝ «հետազոտում» և «ճանաչում», իսկ երկրորդը՝ սոցիալական փիլիսոփայությունը, միայն «գնահատում է նշանակությունը» կամ «ապագայի սոցիալական վարքագծի» կանխատեսման նշանակությունը։ Այս տարբերությունները որոշ սոցիոլոգներ այնքան են բացարձականացնում, որ հանգում են այն անհեթեթ պնդմանը, թե իբր կարող է լինել գիտություն, որի առարկան «զուտ գնահատումը» և «կանխատեսումն է» և գիտություն, որի առարկան կարող է լինել «հետազոտումը և ճանաչումը»։ Այդպիսի, թող թույլ տրվի ասել, «գիտությունը» փիլիսոփայական իմաստով, այլ բան չէ, քան գնահատման կանտյան միստիկական ուսմունքի նորագույն ձևը, ըստ որի մարդիկ կեցության գնահատմանն են հասնում միայն էմոցիոնալ կերպով և այդ գնահատմանը տալիս են միայն բարոյական նշանակություն, որտեղ բարոյական գնահատումը հանդես է գալիս իբրև «մաքուր բարիք», կամ «մաքուր ձև» և հավակնում է ընդհանրական նշանակություն ունենալ։ Սովորական, առօրյա մեկնաբանման իմաստով «գնահատման» և «կանխագուշակման» այդ տեսությունը ավելի շատ նման է խիրոմանտիայի։

Ժամանակակից բուրժուական սոցիոլոգիան կարող էր մասամբ խուսափել սոցիոլոգիական այդ «մոլորություններից» ու խառնաշփոթություններից, եթե այն որևէ չափով ունենար «հասարակություն» հասկացության գիտական որոշ ըմբռնում ու մեկնաբանում։ Ի՞նչ բան է հասարակությունը, ինչպիսի՞ հասարակություններ են լինում, հասարակությունը արդյո՞ք պատմական երևույթ է, սոցիոլոգիական գիտության կատեգորիաներն ու հասկացություններն ունե՞ն արդյոք օբյեկտիվ բնույթ, ռեալություն, թե զուտ կամայական հորինվածքներ են, որոնք ստեղծվել են զուտ պրակտիկ նպատակների համար։ Այդ բոլոր հարցերը, որոնք մեծ տարածում ունեն ժամանակակից բուրժուական սոցիոլոգիայում, գիտական պատասխան չեն ստանում։ Հասարակության հասկացության գիտական ու միասնական ըմբռնման բացակայությունը նպաստում է հակագիտական բնորոշումների երևան գալուն։

Հասարակության գիտական բնորոշման ճանապարհին լուրջ պատնեշ են նաև ինդիվիդուալիստական ու վոլյունտարիստական թեորիաները հասարակության մասին։ Քանի որ,— ասում են այդ թեորիայի կողմնակիցները,— հասարակության մեջ բոլոր գործողությունները կատարվում են անձերի, անհատների շարժման միջոցով, գործողություններ, որոնք հարուցվում են անհատների տարբեր շահերով, ուստի հասարակությունը յուրաքանչյուր տվյալ պահին առանձին անձերի ջանքերի գումարի արդյունք է, անձեր, որոնք ձգտում են հասնել իրենց պահանջմունքների որոշակի բավարարման։

Այսպիսով, «հասարակություն» հասկացության ամեն մի բնորոշում վաղօրոք զրկվում է ամեն մի իմաստից, քանի որ չկան ընդհանուր սոցիալական պրոբլեմներ, քանի որ բոլոր պրոբլեմները կապված են միայն անձնական հարաբերությունների հետ, «անձնական հավասարումների» հետ։ Սակայն ժամանակակից բուրժուական սոցիոլոգիայում դա հասարակության մասին միակ կոնցեպցիան չէ։ Այսպես, օրինակ, Դյուրհեյմը հասարակության էությունը տեսնում է «բարոյական կարգի պարտականությունների կամ օրենքի մեջ»։ Մաքս Վեբերի համար հասարակությունը «օրինական կարգերի որոշ կերպանավորում է»։ Պարետոն հասարակությունը քննարկում է այնպիսի սոցիալական սիստեմի օրինակով միայն, որտեղ մարդկային վարքագծերի հիմքում ընկած են ոչ ռացիոնալ ուժերը, որոնք ենթակա չեն իմացության։ Գիդինգսը բոլոր հասարակությունները բաժանում է երկու տեսակի, հասարակություն, որը «հիմնված է բնազդների վրա» և հասարակություն, որը «հիմնված է ռացիոնալ կապերի վրա»։ Որոշ մարդկանց համար հասարակությունը մարդկային խոր հոգեբանական միավորումներ է խմբերի մեջ, մյուսների համար՝ առանձին մարդկանց զուտ մեխանիկական կոնգլոմերատ։ «Հասարակություն» հասկացությունը բուրժուական սոցիոլոգիական մտքի մեջ այնքան անորոշ է դարձել, որ ժամանակակից շատ սոցիոլոգներ արդեն խոսում են այդ հասկացության մասին, որպես վերացական հասկացության, որը իրականության մեջ ոչ մի բանի չի համապատասխանում։

Ինչպես տեսնում ենք, հասարակություն հասկացության բուրժուական սոցիոլոգիական բնորոշումները խայտաբղետ են, հակասական, այնքան հակասական, որ նույնիսկ մերժում են մեկը մյուսին՝ հիմնովին կամ մասնակի։ Հենց դրանում է դրսևորվում նրա տեսական և պրակտիկ սնանկությունը։



Վերևում շարադրվածը մեզ հիմք է տալիս պնդելու, որ բուրժուական ամբողջ սոցիոլոգիան, և ժամանակակիցն առանձնապես, խորապես էկլեկտիկ է։ Բուրժուազիան դասակարգային սահմանափակության, ռեակցիոնության պատճառով, որպես իր դարն ապրած դասակարգ, այլևս ընդունակ չէ ստեղծելու փիլիսոփայության ու սոցիոլոգիայի հետևողական գիտական կոնցեպցիա։ Հասարակության մասին մոնիստական տեսություն ստեղծելու բուրժուական որոշ սոցիոլոգների փորձերը այդ պատճառներով ձախողվել են։

Հետևողական գիտական սոցիոլոգիան չէր կարող համապատասխանել ոչ բուրժուական դասակարգի ոգուն, ոչ էլ բուրժուազիայի քաղաքական հաստատությունների պահանջներին։ Էկլեկտիկական սոցիոլոգիան հեշտ ու «անհիվանդագին» և բուրժուազիայի համար որոշ օգտակարությամբ զուգակցում է զանազան գաղափարական ուղղությունները։ Բուրժուազիայի շահերին են ծառայում ոչ միայն այն սոցիոլոգները, որոնք քարոզում են «ունիվերսալ օրենքների» իդեալիստական թեորիաները, ընդհանրապես հասարակության, ընդհանրապես պրոգրեսի «լայն» թեորիաները, առանց պատմական պրոցեսի կոնկրետ վերլուծության, այլև նրանք, ովքեր մերժում են հասարակական զարգացման օրինաչափությունները, պահանջում են միայն փաստերի «ուսումնասիրում», արհամարհանքով են վերաբերվում ընդհանուր թեորություններին ու հիպոթեզներին։ Բուրժուական սոցիոլոգիան չի խորշում ֆատալիստական կոնցեպցիաներից ու հրապուրվում է հասարակության մասին վոլյունտարիստական թեորիաներով։ Ավելին, բուրժուական սոցիոլոգիայում կան շատ դպրոցներ ու հոսանքներ, որոնք փորձեր են անում մատերիալիզմը զուգակցել իդեալիզմի հետ։ Այդ տեսակետից, Լենինի դիպուկ արտահայտությամբ, բացառիկ կերպով հարմար է սուբյեկտիվ սոցիոլոգիան, որտեղ կարող են հանգիստ գոյակցել թե՛ իդեալիզմը, թե՛ մետաֆիզիկան, թե՛ էգոիզմը, «թե փոքրամասնության բռնի ենթարկումը մեծամասնությանը», թե «ամբողջ աշխատավոր ժողովրդին կազմակերպելու սոցիալ-դեմոկրատական իդեալը»։ Իսկ քաղաքականության բնագավառում այդ սոցիոլոգիան կարող է արդարացնել թե բուրժուական լիբերալիզմը և թե քողարկված ֆաշիզմը։

ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ.

# ԳԼԽԱՎՈՐ ՈՒՂԻՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՈՒՄՆ Է

Բնակչության աճը, նրա պահանջմունքների աննախընթաց բարձրացու-
մը, ինչպես նաև թեթև ու սննդի արդյունաբերության զարգացման կապակ-
ցությամբ դրանց հումքային բազայի ընդարձակումը հրամայաբար թելա-
դրում են լայն չափերով ավելացնելու գյուղատնտեսական մթերքների ար-
տադրությունը: Դա ժողովրդա-տնտեսական հույժ կարևոր նշանակություն
ունեցող խնդիր է, որը միշտ գտնվել ու գտնվում է կոմունիստական կուսակ-
ցության և սովետական կառավարության ուշադրության կենտրոնում: Այդ
խնդիրը հատուկ սրությամբ է դրվում այժմ, կոմունիստական շինարարու-
թյան ժամանակաշրջանում, երբ «Հզոր արդյունաբերության հետ մեկտեղ
ծաղկուն, բազմակողմանիորեն զարգացած և բարձր մթերատու գյուղատնտե-
սության ստեղծումը կոմունիզմի կառուցման պարտադիր պայմանն է»
(ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, Երևան, 1962 թ. էջ 497):

Կուսակցության ծրագրային այդ պահանջի կատարման գործում որոշիչ
դեր է պատկանում գյուղատնտեսության հետևողական ինտենսիվացմանը,
որը զարգացման ժամանակակից էտապում մղվում է առաջին պլանի վրա, և
դա հասկանալի է: Չէ՞ որ ինտենսիվացումն այն վճռական լծակն է, որի օգ-
նությամբ հնարավոր է մշակվող միավոր հողատարածությունից ավելի շատ
բերք ստանալ և մեծ չափով իջեցնել արտադրվող մթերքների ինքնարժեքը:

Իհարկե, դրան ամենից առաջ կարելի է հասնել գյուղատնտեսական ար-
տադրության ամենակարևոր միջոցի՝ հողի բերրիության բարձրացման և հո-
ղագործության առաջավոր ձևերի արմատավորման շնորհիվ: Կա և խնդրի
մյուս կողմը: Գյուղատնտեսական նպատակներով օգտագործվող հողատարա-
ծությունները սահմանափակ են, հետևաբար սահմանափակ են նաև նոր հո-
ղերի յուրացման հաշվին բուսաբուծական և անասնաբուծական մթերքների
արտադրության ավելացման հնարավորությունները: Այստեղից հետևում է
եղած հողերի հոգատար պահպանման և նրանց յուրաքանչյուր հեկտարի
արդյունավետ օգտագործման անհրաժեշտությունը բոլոր տնտեսությունների
համար: Իսկ հողի արդյունավետ օգտագործումը, մեր կարծիքով, ենթադրում
է երկու պայման՝ ա) տվյալ հողա-կլիմայական պայմաններում բարձր եկա-
մուտ տվող և շահույթ ապահովող գյուղատնտեսական կուլտուրայի մշակում.
բ) հողագործության ինտենսիվացման աստիճանի և նրա տնտեսական ար-



դյունավետության բարձրացում, այսինքն՝ միավոր հողատարածությունից
ստացվող եկամտի գերազանցումը լրացուցիչ ներդրումներից:

Առաջնակարգ նշանակություն տալով գյուղատնտեսության հետագա ին-
տենսիվացմանը, Սովետական Միության Կոմունիստական Կուսակցության
XXIII համագումարը Կենտկոմի հաշվետու զեկուցման առթիվ ընդունած իր
բանաձևում նշեց, որ «Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավե-
լացման գլխավոր ուղին արտադրության մեքենայացման, էլեկտրիֆիկացման
ու քիմիացման կայուն բազայի վրա գյուղատնտեսության հետևողական ին-
տենսիվացումն է, ինչպես նաև բնական անբարենպաստ պայմաններ ունե-
ցող գոտիներում մելիորացիայի լայն զարգացումը» (ՍՄԿԿ XXIII համագու-
մարի նյութերը, Երևան, 1967 թ. էջ 303):

Այդ միջոցառումների իրականացման համար կատարվում են անհրա-
ժեշտ կապիտալ ներդրումներ, նյութական ու աշխատանքային լրացուցիչ
ծախսեր, որոնք, վերջին հաշվով, ապահովում են ընդլայնված վերարտա-
դրությունը: Դրա կարևորությունը պատկերացնելու համար նշենք, որ գյու-
ղատնտեսության զարգացման հուսալի, բարձր ու գիտականորեն հիմնավոր-
ված տեմպերը, որ նախատեսված են կուսակցության XXIII համագումարի՝
ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյա պլանի դի-
րեկտիվներում, կարող են ապահովվել միայն գյուղատնտեսության ընդլայն-
ված վերարտադրության դեպքում: Իսկ ընդլայնված վերարտադրությունը, որ
տեղի է ունենում սոցիալիզմի տնտեսական օրենքների համաձայն, սերտորեն
առնչվում է գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման հետ:
Վերջինս ընդլայնված վերարտադրության ազդակներից մեկն է, աշխատան-
քի արտադրողականության բարձրացման կարևոր պայմանը:

***

Մեր երկրում գյուղատնտեսության ինտենսիվացումը կատարվում է պլա-
նային կարգով, պետության անմիջական օգնությամբ և մասնակցությամբ:
Ելնելով ամբողջ ժողովրդի շահերից և նրա աճող պահանջմունքների բավա-
րարման անհրաժեշտությունից, սովետական պետությունն իր գոյության ըն-
թացքում, առանձնապես գյուղատնտեսության սոցիալիստական վերակառու-
ցումից հետո, հսկայական միջոցներ է տրամադրել գյուղատնտեսական ար-
տադրությունը էքստենսիվ ուղուց ինտենսիվ ուղու վրա փոխադրելու համար:
Բավական է նշել, որ ՍՍՀՄ արդյունաբերությունն արտոնյալ պայմաններով
գյուղին մատակարարել է (մինչև 1966 թվականի վերջը) 1,700 հազար տրակ-
տոր (ֆիզիկական միավոր), 5400 հազար հացահատիկային կոմբայն (ֆի-
զիկական միավոր), 1013 հազար բեռնատար ավտոմեքենա, շատ գործիքներ,
միլիոնավոր տոննաներով հանքային պարարտանյութեր և այլն: Պետական
միջոցներով կառուցված են բազմաթիվ ջրանցքներ ու ջրամբարներ, որոնց
ջրով ոռոգվում են միլիոնավոր հեկտարներով հացահատիկային, տեխնիկա-
կան ու կերային կուլտուրաների ցանքատարածությունները:

Սովետական պետության տրամադրած միջոցների և մեքենայացված
խոշոր կոլեկտիվ տնտեսությունների առավելությունների շնորհիվ աստիճա-
նաբար բարձրացավ մեր գյուղատնտեսության ինտենսիվացման մակարդա-
կը: Սա էլ իր հերթին նպաստեց աշխատանքի արտադրողականության բարձ-
րացմանը՝ գյուղատնտեսության համախառն ու ապրանքային արտադրանքի

ավելացմանը: Այդ բնագավառում հաջողությունները նշանակալից են ինչպես Սովետական Միության մյուս եղբայրական հանրապետություններում, այնպես էլ Սովետական Հայաստանում, ուր ցանքատարածությունների ընդարձակման ու դրանց մշակության ինտենսիվացման շնորհիվ 1966 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացել է 4,2 անգամ, իսկ նրա ապրանքային մասը միայն մեկ տարում՝ 1966 թվականին, առանց ներգյուղական շրջանառության, հացահատիկային կուլտուրաների գծով կազմել է 60,4, բանջարեղենինը՝ 133,2, շաքարի ճակնդեղինը (գործարանային)՝ 115,1, կարտոֆիլինը՝ 42,0, բոստանային կուլտուրաներինը 67,9, մսինը (սպանդանոցային քաշով)՝ 28,2, կաթինը և կաթնամթերքներինը (կաթի վերածած)՝ 169,6, բրդինը՝ 3097 հազար տոննա, ձվինը՝ 84,7 միլիոն հատ (տե՛ս «Экономика и культура Армении к 50 летию великого Октября». Ереван, 1967 г., стр. 121, 126):

Գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ հաջողություններն ավելի մեծ կլինեին, եթե միավոր հողատարածությանն ընկնող արտադրաֆոնդերի աճի հետ միասին ապահովվեր նրանց ռացիոնալ օգտագործումը և արտադրության արդյունավետության բարձրացումը: Այդպիսի պայմաններում, բնականաբար, արտադրաֆոնդերի աճին կուղեկցեր անհրաժեշտ չափով ֆոնդահատույցը: Սա չափազանց կարևոր հանգամանք է, եթե նկատի ունենանք, որ արտադրաֆոնդերի և ֆոնդահատույցի համապատասխանաբար աճը, նրանց փոխադարձ կապի պահպանումը և միասնաբար գործադրումը մեծապես նպաստում են գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման տեմպերի արագացմանը, հետևաբար և, համախառն արտադրանքի նշանակալից ավելացմանը: Բայց, ցավոք, իրականում այդպես չեղավ: Բանն այն է, որ վերջին 25 տարում (1940—1965 թվականներին) ՍՍՀՄ գյուղատնտեսության արտադրաֆոնդերն աճեցին 4 անգամ, իսկ համախառն արտադրանքը՝ հազիվ երկու անգամ: Դա հիմնականում հետևանք էր ցածր բերքի, անասնապահության մթերատվության դանդաղ աճի, արտադրության աշխատողների անձնական նյութական շահագրգռվածության անտեսման, ինչպես նաև շատ տեղերում գյուղատնտեսության ղեկավարման գործում թույլ տրըված սխալների ու թերությունների:

Գյուղատնտեսության բնագավառում եղած թերություններն ու սխալները վերացնելու և արտադրության ինտենսիվացման ճանապարհով բուսաբուծական ու անասնաբուծական մթերքների արտադրությունը խոշոր չափերով ավելացնելու համար ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումը և կուսակցության XXIII համագումարը համապատասխան որոշումներ ընդունեցին: Հետևողականորեն կենսագործելով այդ որոշումները, հանրապետության գյուղատնտեսության աշխատողները, նախորդ տարիների համեմատությամբ, աչքի ընկնող չափերով բարձրացրին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը: Բավական է ասել, որ 1966 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, հանրապետության միայն կոլտնտեսությունների համախառն արտադրանքը (պետական գներով գնահատված) աճեց 23,1 տոկոսով: Աճեց նաև նրանց ապրանքային արտադրանքը, որն իր արտահայտությունն է գտնում դրամական մուտքի մեջ: Այսպես. 1964 թվականի 102,4 միլիոն ռուբլու փոխարեն հանրապետության կոլտնտեսությունների դրամական բոլոր մուտքերը 1966 թվականին կազմեցին 118,8 միլիոն ռուբլի:



Դրանք առաջին հաջողություններն են և կարող էին ավելին լինել, եթե բոլոր կոլտնտեսությունները արտադրության ինտենսիվացման ուղղությամբ լուրջ քայլեր անեին, առաջավորների օրինակով այն դնեին պատշաճ աստիճանի վրա և հետևողականորեն բարձրացնեին նրա աստիճանը:

***

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման աստիճանը չափվում է տարբեր ցուցանիշներով: Դրանց մեջ գլխավորը արտադրության ուղղակի ծախսերն են, ինչպես նաև միավոր հողատարածության մշակման համար գործադրված հիմնական ու շրջանառու արտադրաֆոնդերը: Այստեղ պակաս կարևոր նշանակություն չունեն յուրաքանչյուր հեկտարից ստացվող համախառն արտադրանքի չափը և նրա ինքնարժեքը: Վերջինս գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման արդյունավետության կարևոր ցուցանիշներից է: Առանց այդ ցուցանիշի հնարավոր չէ շատ թե քիչ հստակ պատկերացում կազմել տվյալ տնտեսության գործունեության, նրա շահութաբերության և զուտ եկամտի մասին: Այստեղից հետևում է, որ գյուղատնտեսության ինտենսիվացման տնտեսական արդյունավետությունը հիմնականում որոշվում է յուրաքանչյուր հեկտարից ստացվող բնամթերքի քանակով և նրա ինքնարժեքի չափով: Ծախսված աշխատանքի ծավալը, իհարկե, նույնպես պետք է հաշվի առնել, չնայած նրան, որ հավասար պայմաններում այն հաճախ տարբեր արդյունք է տալիս:

Տվյալ պարագայում գյուղատնտեսության ինտենսիվացման արդյունավետության աստիճանը ցույց տանք ստացված բնամթերքի փաստացի քանակով. այսպես՝

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը հանրապետության կոլտնտեսություններում՝ յուրաքանչյուր հեկտարից (միջին հաշվով, ցենտներով) *

| Թվական-ներ | Հացահատ. կուլտուրան. | Շաքարի ճակնդեղ | Բանջարե-ղեն | Բոստանային կուլտ. | Կարտո-ֆիլ | Խաղող | Ծխախոտ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1958 | 9,5 | 248 | 155 | 113 | 93 | 51,7 | 12,7 |
| 1964 | 10,6 | 249 | 202 | 168 | 111 | 23,4 | 18,0 |
| 1965 | 11,7 | 303 | 215 | 165 | 111 | 63,4 | 17,3 |
| 1966 | 12,7 | 267 | 202 | 174 | 81 | 67,0 | 16,3 |

Աղյուսակում բերված տվյալները ցույց են տալիս, որ 1958 թվականի համեմատությամբ գյուղատնտեսական նշված կուլտուրաների բերքատվությունը բարձրացել է (բացառությամբ խաղողի, որի համար 1964 թվականը անբարենպաստ եղանակների հետևանքով ոչ բերքատու տարի էր): 1965 և 1966 թվականներին բերքատվությունը բարձրացել է նաև 1964 թվականի համեմատությամբ: Միայն որոշ բացառություն է կազմում ծխախոտը, որի պլանտացիաների մի մասի կարկտահարության և ցրտահարության պատ-

* «Народное хозяйство Армянской ССР в 1964 г.» (Статистический ежегодник), 1965 г., стр. 93.

«Экономика и культура Армении к 50-летию великого октября» (Статистический сборник) 1967 г., стр. 161.

ճառով յուրաքանչյուր հեկտարի բերքը 1—1,7 ցենտներով ցածր էր 1964 թվականից: Աղյուսակից նկատելի է նաև, որ 1966 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, որոշ չափով ցածր է շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի և բանջարեղենի բերքը: Դա նույնպես բնական անբարենպաստ եղանակների, իսկ որոշ կոլտնտեսություններում՝ ցանքատարածությունների վատ մշակման հետևանք է:

Եթե գյուղատնտեսական առանձին կուլտուրաները նկատի չունենանք և ընդհանուր բուսաբուծության գծով վերցնենք վերջին երկու տարվա (1965—1966 թթ.) բերքատվության միջին ցուցանիշները, ապա հաջողությունները ակնհայտ են:

Որպես դրա ապացույց բերենք հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը: Վերջին տարիներին որոշակիորեն բարելավվեց հացահատիկային կուլտուրաների սերմնաբուծությունը և լայնորեն օգտագործվեցին այնպիսի սերմեր, ինչպես, ասենք «Բեզոստայա—1»-ը, որը մեր պայմաններում հեկտարից տալիս է մինչև 30 ցենտներ բերք: Դրա հետ միասին ընդարձակվեց ոռոգման ցանցը, ավելացվեց հանքային և օրգանական պարարտանյութերի օգտագործումը, վարը համարյա ամբողջապես կատարվեց տրակտորներով, ցանքը՝ շարքացաններով, իսկ բերքահավաքի 87 տոկոսը՝ կոմբայններով: Այս ամենի շնորհիվ հանրապետության բազմաթիվ կոլտնտեսություններ հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացան 15—24 ցենտներ բերք:

Մեր ուսումնասիրած ժամանակաշրջանում հանրապետության կոլտնտեսություններում հացահատիկի արտադրությունն աճել է նաև ուղղակի կարգով ծախսված մարդ-օրվա հաշվով: Այսպես. ՀՍՍՀ վիճակագրական կենտրոնական վարչության հաշվարկումների համաձայն 1964 թվականին մեկ մարդ-օրվա դիմաց միջին հաշվով արտադրվել է 57 կիլոգրամ, 1965 թվականին՝ 62, իսկ 1966 թվականին՝ 68 կիլոգրամ հացահատիկ: Այս ցուցանիշն առավել բարձր է առանձին շրջաններում: Օրինակ. Վեդու շրջանի կոլտնտեսություններում 1966 թվականին մեկ մարդ-օրում (միջին հաշվով) արտադրվել է 132, Հոկտեմբերյանի շրջանում՝ 134, Էջմիածնի շրջանում՝ 136, Կալինինոյի շրջանում՝ 127 կիլոգրամ հացահատիկ և այլն:

Իսկ ամբողջ հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարի միջին բերքը, ինչպես ցույց ենք տվել վերը բերված աղյուսակում, 1966 թվականին կազմել է 12,7 ցենտներ, որը 1958 թվականի համեմատությամբ բարձր է 3,2, իսկ 1964 թվականի համեմատությամբ՝ 2,1 ցենտներով: Հետաքրքրական է նաև հետևյալ համեմատությունը. հանրապետության կոլտնտեսությունները 1964 թվականին կատարել են 157,7 հազար հեկտար հացահատիկային կուլտուրաների ցանք և ստացել 1664 հազար ցենտներ բերք, իսկ 1966 թվականին կատարել են 147,4 հազար հեկտար ցանք, որից ստացել են 1873 հազար ցենտներ բերք:

Ինչպես տեսնում ենք, 1966 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների ցանքը 10,3 հազար հեկտարով պակասել է, բայց 209 հազար ցենտներով շատ բերք է ստացվել:

Բազմաթիվ կոլտնտեսություններում հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման հետ միասին զգալիորեն իջել է արտադրված հացահատիկի ինքնարժեքը: Բավական է ասել, որ 1966 թվականին հանրապետության 6 կոլտնտեսությունում արտադրված հացահատիկի յուրաքանչյուր



ցենտների ինքնարժեքը կազմել է՝ 2—4 ռուբլի, 17-ում՝ 4—5, 30-ում՝ 5—6, 66-ում՝ 6—8 ռուբլի: Հացահատիկի ինքնարժեքը ցածր է այն կոլտնտեսություններում, ուր ցանքերի մշակումն ու բերքահավաքը ամբողջապես մեքենայացված է և, բացի դա, ոռոգման ու պարարտացման միջոցով յուրաքանչյուր հեկտարից ստանում են 18 ցենտներից բարձր բերք:

Հացահատիկի և ընդեղենի (ներառյալ նաև եգիպտացորենը) բերքատվությունը բարձրացնելու և ինքնարժեքն իջեցնելու շնորհիվ հանրապետության 463 կոլտնտեսության համար տվյալ կուլտուրաների մշակությունը շահավետ է եղել: Այդ կուլտուրաների ինքնարժեքը կազմել է 11025 հազար, իսկ իրացման գումարը՝ 23434 հազար ռուբլի: Նման օրինակներ կարելի է բերել գյուղատնտեսական մյուս կուլտուրաների գծով, որոնց մշակումը շատ ու շատ կոլտնտեսությունների համար շահավետ է:

Բայց կան նաև ոչ քիչ թվով այնպիսի կոլտնտեսություններ, ուր մյուսների համեմատությամբ գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը բարձր է: Այսպես. 1966 թվականին մեկ ցենտներ հացահատիկի ինքնարժեքը Սիսիանի շրջանի կոլտնտեսություններում կազմել է 9,07 ռուբլի, իսկ նրա հարևան Գորիսի շրջանում՝ 11,13 ռուբլի, ծխախոտի մեկ ցենտների ինքնարժեքը Ալավերդու շրջանի կոլտնտեսություններում կազմել է 31,63, իսկ Նոյեմբերյանի շրջանում՝ 40,02 ռուբլի, բրդի մեկ ցենտների ինքնարժեքը Ապարանի շրջանի կոլտնտեսություններում կազմել է 395,35 ռուբլի, իսկ Թալինի շրջանում՝ 524,71 ռուբլի և այլն: Հանրապետության շրջանների ու նրանց կոլտնտեսությունների մեծ մասում խիստ տարբերություն կա նաև անասնաբուծական մթերքների ինքնարժեքի մեջ: Դա, ինչ խոսք, միայն բնակլիմայական պայմաններով չի կարելի բացատրել: Ինքնարժեքի տարբերությունները, մեր կարծիքով, առաջին հերթին արտադրության վատ կազմակերպման, հիմնական ու շրջանառու ֆոնդերի ոչ ռացիոնալ օգտագործման, տնտեսությունների անբավարար մասնագիտացման և նման այլ պատճառների հետևանք է, որը պետք է անհանգստացնի տեղական կուսակցական ու սովետական օրգաններին, կոլտնտեսությունների ղեկավարներին ու արտադրության աշխատողներին: Նրանք պետք է կտրուկ միջոցների դիմեն այդ լուրջ թերությունը վերացնելու և հանրային տնտեսության շահութաբերությունն ավելացնելու համար:



Չնայած առանձին թերություններին, ինչպես մենք ցույց ենք տվել, հանրապետության կոլտնտեսություններում վերջին տարիներին ընդհանուր առմամբ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը զգալի չափով ավելացել է: Դա սերտորեն կապված է աշխատանքի արտադրողականության բարձրացման հետ, առանց որի գյուղատնտեսության ինտենսիվության մասին խոսք լինել չի կարող:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործոնների շարքում վճռական նշանակություն ունեն արտադրական հիմնական ֆոնդերը, յուրաքանչյուր հեկտարին ընկնող դրանց ծավալի ընդարձակումը: Արտադրական հիմնական ֆոնդերի մեծացումը, բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը, գյուղատնտեսության ինտենսիվացման մակարդակը, խոշոր ազդակ է բուսաբուծության և անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման համար: Բայց, չնայած դրան, մինչև 1965 թվականը խոշոր

խզում գոյություն ուներ արտադրական հիմնական ֆոնդերի և աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի միջև: Որպես կանոն, ինչպես հանրապետության ողջ գյուղատնտեսության, այնպես էլ կոլտնտեսային արտադրության մեջ հիմնական ֆոնդերը սիստեմատիկաբար (այն էլ զգալի չափով) աճում էին, բայց աշխատանքի արտադրողականության բարձրացումը դրանց (արտադրողական հիմնական ֆոնդերի) համեմատությամբ խիստ ետ էր մնում:

Այդպիսի վիճակին վերջ տալու նպատակով 1965 թվականից սկսած նախ լուրջ հսկողություն սահմանվեց եղած տեխնիկայի արդյունավետ օգտագործումն ապահովելու և, միաժամանակ, լրացուցիչ միջոցներ առանձնացվեց մեքենայական պարկի հզորությունն ավելացնելու համար: 1966 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, տրակտորների թիվը (15 ձիաուժի վերածած) ավելացավ 12, կոմբայններինը՝ 9 տոկոսով և այլն, որոնք հնարավորություն տվին ընդարձակելու դաշտային աշխատանքների մեքենայացման ծավալը: Դրա հետ միասին բարելավվեց արտադրության կազմակերպումն ու կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության սիստեմը, ինչպես նաև առաջավոր փորձի ու գիտության նվաճումների արմատավորումը:

Այս միջոցառումների շնորհիվ կոլտնտեսություններում բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը և զգալիորեն պակասեց գյուղատնտեսական արտադրության հիմնական տեսակների գծով մեկ ցենտներ արտադրանքի վրա ծախսված մարդ-օրերը: Այդ ուղղությամբ կատարված հաշվարկումները ցույց են տալիս, որ 1966 թվականին, 1964 թվականի համեմատությամբ (բացի շաքարի ճակնդեղի, բանջարեղենի և պտուղների), գյուղատնտեսական կուլտուրաների և անասնաբուծական մթերքների արտադրության գծով աշխատանքի արտադրողականությունը միջին հաշվով բարձրացել է մոտ 9—20 տոկոսով: Դրա շնորհիվ նշված ժամանակաշրջանում հանրային տնտեսությունների համախառն արտադրանքը (հետևապես նրանց եկամուտները) ավելացել են 13 միլիոն ռուբլով, չհաշված գյուղատնտեսական մի շարք մթերքների գնման գների բարձրացումից ստացված 10 միլիոն ռուբլու լրացուցիչ եկամուտը:

Չնայած այս ամենին, մի շարք շրջաններում և, հատկապես, ետ մնացող կոլտնտեսություններում լուրջ թերություններ կան աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում: Դրանք հասցրել են այն բանին, որ հանրային տնտեսությունների զգալի մասում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման տեմպերը դեռևս չեն համապատասխանում եղած պահանջին: Դա, իհարկե, ունի իր պատճառները, որոնցից մենք հարկ ենք համարում նշել երկուսը.

Առաջին. Բազմաթիվ կոլտնտեսություններում միանգամայն վատ են օգտագործում տրակտորները, կոմբայնները և մյուս մեքենաները: Անբավարար խնամքի, հաճախ էլ պահեստային մասերի բացակայության և աշխատանքի ոչ ճիշտ կազմակերպման հետևանքով մեքենաները գործում են պարապուրդներով և ցածր արտադրանք տալիս: Դա հանգեցնում է նրան, որ դաշտային շատ աշխատանքներ ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում չեն կատարվում, դրանց որակի նկատմամբ ուժեղ հսկողություն չի սահմանվում, բերքը արագ ու ժամանակին չի հավաքվում և տեղիք է տրվում կորուստների:

Դրությունը բարվոք չէ նաև անասնաբուծության բնագավառում, ուր



առանձին մեխանիզմներ ու սարքավորումներ (հատկապես կթի ագրեգատները) անգործության են մատնված: Եթե դրանց ավելացնենք այն, որ շատ շրջաններում հիմնական արտադրամիջոցը՝ հողը հոգատար չի օգտագործվում, նրա բերրիության բարձրացման ու ոռոգման ուղղությամբ քիչ գործ է կատարվում, պարզ կդառնա, թե ինչու հանրապետությունում 72 կոլտնտեսություն դեռևս շահութաբեր չեն և գործում են վնասով:

Երկրորդ. Չնայած այն բանին, որ հանրապետության կոլտնտեսությունները տարեցտարի ստանում են զգալի քանակությամբ տեխնիկա, բայց, այնուամենայնիվ, դա չի ապահովում գյուղատնտեսության այսօրվա պահանջը: Անհրաժեշտ քանակությամբ գյուղատնտեսական մթերքների արտադրության և կոլտնտեսությունների տեխնիկական զինվածության միջև գոյություն ունի անհամապատասխանություն: Յուրաքանչյուր կոլտնտեսականի տեխնիկական զինվածությունը զգալի չափով ետ է մնում արդյունաբերության բնագավառում աշխատող բանվորի տեխնիկական զինվածությունից: Մինչդեռ գյուղատնտեսության ուրույն պայմաններից ելնելով (աշխատանքի սեզոնայնություն, արտադրական հիմնական միջոցների օգտագործման կարճ ժամկետ և այլն), կոլտնտեսականի տեխնիկական զինվածությունը բարձր պետք է լինի արդյունաբերության մեջ աշխատող բանվորից:

Համապատասխան քանակությամբ (և տեղական պայմաններին հարմարեցված) մեքենաներ չլինելու պատճառով գյուղատնտեսության առանձին կուլտուրաների մեքենաներով մշակման ծավալը դանդաղ է աճում: Օրինակ. 1966 թվականին կարտոֆիլի ցանքի միայն 31 տոկոսն է մեքենաներով կատարվել, խոտհնձինը՝ 30, սիլոսային կուլտուրաների հավաքմանը՝ 37, բանջարեղենի տարածությունների մշակմանը՝ 45 տոկոս և այլն: Իսկ շաքարի ճակնդեղի ցանքի միջշարային տարածությունների մեքենայական մշակումը 1966 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ոչ միայն չի աճել, այլ 6 տոկոսով պակասել է: Նույն ժամանակաշրջանում պակասել է նաև սիլոսային կուլտուրաների՝ մեքենաներով բերքահավաքի ծավալը: Գյուղատնտեսական առանձին կուլտուրաների մշակման և խոտհնձի մեքենայացման ծավալն առանձնապես ցածր է լեռնային և նախալեռնային շրջանների կոլտնտեսություններում:

Աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ միանգամայն անբավարար աշխատանք է կատարվում անասնաբուծության բնագավառում: Այդ առթիվ բավական է բերել հետևյալ փաստերը: 1966 թվականին հանրապետության կոլտնտեսությունների կովաբուծական ֆերմաներում կովերի կիթը մեքենայացված էր 3,5, խոշոր եղջերավոր անասունների ֆերմաներում ջրի մատակարարումը՝ 20,9, խոզաբուծական ֆերմաներում՝ 9,7, թռչնաբուծական ֆերմաներում՝ 9,7 տոկոսով. խոշոր եղջերավոր անասունների ֆերմաներում կերի բաշխումը՝ 2,3, գոմաղբի դուրս բերումը՝ 15,2 տոկոսով:

Նման թերությունների վերացման և կոլտնտեսային արտադրության հետևողական ինտենսիվացման համար, մեր կարծիքով, եղած տեխնիկայի օգտագործումն արմատապես բարելավելու հետ միասին անհրաժեշտ է ավելի շատ միջոցներ հատկացնել և առաջիկայում ձեռք բերել գյուղատնտեսական այնպիսի նոր մեքենաներ ու սարքավորումներ, որոնք հարմարեցված լինեն տեղական պայմաններին և լայնորեն կիրառվեն ինչպես դաշտավարության, այնպես էլ անասնապահության բնագավառում: Դա, անշուշտ, կլինի այն ար-

մատական միջոցառումներից մեկը, որը զգալի չափով կբարձրացնի աշխատանքի արտադրողականությունը, կավելացնի գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և կիջեցնի դրանց ինքնարժեքը։

***

«Հողի մեջ ներդրվող կապիտալի քանակը զգալի չափով մեծացնելու համար,—ուսուցանում էր Վ. Ի. Լենինը,—պետք է ճնարել նոր մեքենաներ, դաշտավարության նոր սիստեմներ, անասունները պահելու, արտադրանքը փոխադրելու նոր եղանակներ» (Երկեր, հատ. 5, էջ 138)։ Հենց այդ նորն է, որի վրա պետք է հատուկ ուշադրություն նվիրել և լայնորեն արմատավորել կոլտնտեսային արտադրության մեջ։ Այդ գործում հիմնական դերը պատկանում է մեր արդյունաբերության և գիտության աշխատողներին, որոնք, հաշվի առնելով տեղական պայմանները, կոլտնտեսությունների համար պետք է նախագծեն ու թողարկեն այնպիսի մեքենաներ, որոնց միջոցով հնարավոր լինի կոմպլեքսային մեքենայացման ենթարկել դաշտավարության և անասնաբուծության աշխատատար պրոցեսները, գնալով կրճատել ձեռքի դժվարին, թանկ ու ցածր արտադրողական աշխատանքը։ Գյուղատնտեսական նորագույն տեխնիկայի ու էլեկտրաէներգիայի լայն մասշտաբներով գործադրումը, դաշտավարության նոր ու առավել արդյունավետ սիստեմների արմատավորումը, արտադրության մասնագիտացումը՝ կոլտնտեսությունների հանրային տնտեսությունն ինտենսիվ վարելու վճռական միջոցներից են։ Մնում է, որ ճիշտ օգտագործել այդ հնարավորությունները և կոլտնտեսային արտադրության մեջ վճռականորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

Գյուղատնտեսության ինտենսիվացման գործում կարևոր նշանակություն ունի և այն, թե ինչպիսի կառուցվածք ունեն արտադրական հիմնական ֆոնդերը, արդյոք դրանցում արտադրության առավել ակտիվ մասերը (մեքենաները, ցեղական անասունները և այլն) նշանակալից տեղ գրավում են թե ոչ։ Այս առումով վերլուծելով հանրապետության կոլտնտեսությունների հիմնական ֆոնդերը, նկատում ենք, որ դրանցում արտադրության առանձին ակտիվ մասեր դեռևս ծանրակշիռ տեղ չեն գրավում և դանդաղ են աճում։ Այդ առթիվ հետաքրքրական տեղեկություններ են հրապարակված Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր վիճակագրական կենտրոնական վարչության՝ 1967 թվականին լույս ընծայած «Экономика и культура Армении к 50 летию великого Октября» վիճակագրական ժողովածուի 132-րդ էջում զետեղված «Կոլտնտեսությունների արտադրական հիմնական ֆոնդերի կառուցվածքը» աղյուսակում։

Այնտեղ բերված տվյալներից երևում է, որ հանրապետության կոլտնտեսությունների արտադրական հիմնական ֆոնդերում 1966 թվականին ուժային, բանող մեքենաներն ու սարքավորումները կազմել են 12,2 տոկոս, 1965 թվականի 11,8 տոկոսի դիմաց (աճ 0,4 տոկոս), մթերատու անասունները, թռչունները և մեղվաընտանիքները՝ 20,9 տոկոս, 1965 թվականի 20,2 տոկոսի դիմաց (աճ 0,7 տոկոս)։ Եթե նկատի ունենանք, որ հանրապետության համարյա բոլոր կոլտնտեսություններում մսատու և կաթնամսատու անասնաբուծությունը հանրային տնտեսության գլխավոր ճյուղերից մեկն է, ապա, մեր կարծիքով, պետք է ասել, որ մթերատու անասունների տեսակարար կշիռը արտադրական հիմնական ֆոնդերում դեռևս քիչ է։ Չափազանց դանդաղ է աճել կովերի գլխաքանակը։ 1965 թվականին կոլտնտեսությունների անասնապահական ֆերմաներում եղել է 84,0, իսկ 1966 թվականին՝ 84,3 հազար գլուխ կով (աճ մոտ 0,4 տոկոս)։



Բանը, իհարկե, միայն կովերի գլխաքանակի ավելացման մեջ չէ։ Շատ կարևոր է նաև նրանց ցեղի բարելավումն ու կաթնատվության բարձրացումը։ Ահա այստեղ է, որ շատ շրջաններում ու բազմաթիվ կոլտնտեսություններում լական թերություններ կան։ Տնտեսապես արդարացված չէ, երբ որոշ տեղերում անասունների ցեղի բարելավմանը 5—6 անգամ քիչ միջոցներ են հատկացնում, քան գոմաշինարարությանը։ Օրինակ. Կրասնոսելսկի շրջանի կոլտնտեսություններում 1966 թվականին անասնապահության զարգացման բնագավառում ներդրված (պետության և կոլտնտեսությունների կողմից միասին վերցրած) 503,1 հազար ռուբլուց գոմաշինարարության համար հատկացված է 87,3, իսկ անասունների ցեղի բարելավմանը՝ միայն 9,0 հազար ռուբլի։ Նման վիճակ կա նաև մի քանի ուրիշ շրջաններում և դա այն դեպքում, երբ նրանց շատ կոլտնտեսություններում պահվում են տեղական ցեղին պատկանող ոչ քիչ թվով այնպիսի կովեր, որոնք քիչ կաթ են տալիս և դա թանկ է նստում տնտեսությունների վրա։

Այս ամենից հետևում է, որ հանրապետության կոլտնտեսությունների արտադրության ինտենսիվացման տեմպերն արագացնելու և նրա արդյունավետությունը բարձրացնելու համար պետք է հետևողականորեն ու արմատապես բարելավել արտադրական հիմնական ֆոնդերի կառուցվածքը։ Անհրաժեշտ է գործը վարել այնպես, որ արտադրության առավել ակտիվ մասերը ծանրակշիռ տեղ գրավեն հիմնական ֆոնդերում։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, ինչպես նաև դրանց ինքնարժեքի իջեցման գործում մեծ է կոլտնտեսային արտադրության ինտենսիվացման դերը։ Այն գյուղատնտեսության առաջընթացի օբյեկտիվ պայմաններից է, որի միայն մի քանի հիմնական գործոններին մենք անդրադարձանք։



ԶԱՔԱՐՅԱՆ ԱԼՄԱՍՏ

Բանասիրական գիտությունների թեկնածու

# ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԱՐԴԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

*Սովետահայ գրականության անվանի վարպետ Դերենիկ Դեմիրճյանը թողել է մի վիթխարի գրական ժառանգություն, որն իր քաղաքացիական ու գեղարվեստական ավանդներով դարձել է հայ ժողովրդի հոգևոր առաջընթացի մշտական ուղեկիցը:*

*Գնահատել Դեմիրճյանի վաստակը, նշանակում է՝ ամենից առաջ մատաբերել նրա խոր մարդասիրությունը, որ բանաստեղծական վաղ փորձերից սկսած դրսևորվել ու արմատավորվել է դեռևս նախասովետական շրջանի նրա լավագույն ստեղծագործություններում (*Դատաստան *դրաման,* Ավելորդը, Տերտերը *պատմվածքները): Մարդու բնական իրավունքների պաշտպանությունն էր այդ ստեղծագործություններում Դեմիրճյանի հավատամքը, որ սոցիալական, հասարակական նոր ասպեկտներով ընդլայնվում և հարստանում է սովետական տարիներին, դառնալով նրա ողջ ժառանգության էությունը:*

*Սովետական տարիներին Դեմիրճյանի հումանիզմը զտվում է վերացական մարդասիրության տարրերից, և 20-ական թվականների լավագույն գրվածքներում (*Սաքոն, Ռաշիդը *և մյուսները) ստանում սոցիալական, ժողովրդային որոշակի հնչեղություն:*

*Այնուհետև քայլ առ քայլ ստեղծագործական բարձունքներ է նվաճում Դեմիրճյանը, այդ ճանապարհին ստեղծելով սովետական կյանքն արտացոլող պատմվածքներ, վիպակներ ու դրամաներ,* Քաջ Նազար *հանրահայտ կատակերգությունը, պատմական թեմատիկայով գրված* Ընկերներ, Զարգահ *և* Դիրք ծաղկանց *պատմվածքները և, վերջապես,* Վարդանանք *պատմավեպը:*

*Նրա լավագույն երկերի մասին խոսելիս դժվար է ասել, թե որտեղ են վերջանում գրողի ժողովրդասիրությունն ու հայրենասիրությունը, և որտեղից սկսվում մարդասիրությունն ու այլասիրությունը. այնքան դրանք ձուլված են, ներդաշնակ ու ներթափանցված: Այս տեսակետից առանձնապես հատկանշական է Դեմիրճյանի՝ Հայրենական պատերազմի շրջանի ստեղծագործությունը, ամենից առաջ՝* Վարդանանքը:

*Գրական երկարամյա ճանապարհ անցած ծերունազարդ գրողը Հայրենական մեծ պատերազմի առաջին իսկ օրից, զինվորագրվում է հայրենապաշտպան այդ սրբազան պայքարին իր մարտաշունչ հրապարակախոսու-*



*թյամբ, ակնարկներով ու պատմվածքներով, նույնիսկ բանաստեղծությամբ:*

*Իր առաջին հոդվածներից մեկում, բացատրելով, թե ինչպիսին է սովետական ժողովրդի մղած պատերազմը և ինչու է կոչվում* հայրենական, *Դեմիրճյանը գրում է. «Դա այն պատերազմն է, երբ դանակը հասնում է ոսկրին, և ժողովուրդը օրհասական կռվի է ելնում փրկելու իր սրբազան հողը, երկիրը, ազատությունը» («Գրական թերթ», 1941, № 19):*

*Հոդվածներին հաջորդում են ֆաշիստական նոր կարգը մերկացնող պամֆլետներ, որոնց շարքում առանձնանում է քաղաքացիական սուր պաթոսով համակված* Ֆաշիստական նոր աշխարհագրություն և պատմություն *պամֆլետը: Այնուհետև նա գրում է թիկունքի ու ռազմաճակատի իրադարձություններն արտացոլող պատմվածքներ, ակնարկներ, փիլիսոփայական մանրապատումներ:*

*Դեմիրճյանը վերլուծում և իմաստավորում էր Հայրենական պատերազմի իրադարձությունները, արտացոլում օրհասական պայքարի ելած սովետական մարդկանց ուժն ու վեհությունը:*

*Այդ ոգով են համակված* Անխուսափելին, Խոշտանգվածի ավանդը *պատմվածքները, ուր իրենց հողը արյուն-քրտինքով շենացրած ռուս մարդիկ—կյանքի հետ կարծես հաշիվները փակած ծերունիներ բախվում են ֆաշիստական սպառազինված սպաների հետ:* Անխուսափելին *պատմվածքում սպա Էրիխը գործում է նյարդային արագությամբ,* Խոշտանգվածի ավանդում *Շուլցը՝ սառնասիրտ դաժանությամբ: Դրամատիզմով հագեցած գործողության ոլորտում Դեմիրճյանը պեղում, երգիծական թանձր գույներով մերկացնում է հրձիգի ու դավթիչի նրանց հակամարդկային էությունը:*

*Բախվող մյուս կողմի ներկայացուցիչները պատկերվում են առավելապես էպիկական գույնով, որը կերպարներին հաղորդում է մարդկային ուժ ու գեղեցկություն արտահայտող մոնումենտալություն: Դեմիրճյանը հավաստում է այն ճշմարտությունը, որ որքան էլ դաժան լինի թշնամին, անվիճելի է սովետական ժողովրդի բարոյական հզորությունը:*

Ծնողները *պատմվածքում խոշտանգված ծնողների, կախաղան հանված պատանիների, ավերված օջախների կոշմարային տեսարանը բորբոքում է Ջերկասովի և՛ սերը, և՛ ատելությունը, մղում առավել ծանրակշիռ խորհրդածությունների: «Պատերազմը խորացավ նրա համար, դառավ մարդկության համար մղվող մի գերագույն գործ՝ մեծ, ընդարձակ, համաշխարհային» (Երկերի ժողովածու, հատ. II, էջ 388):*

*Ջերկասովի համար այդուհետև կռվել ու հաղթանակել նշանակում էր խաղաղություն բերել մարդկությանը, փրկել մարդկությանը աշխարհակործան պատերազմից:*

*Թվում է, թե պատերազմի ամբողջ ընթացքում Դեմիրճյանը դադար չի առել, մանավանդ, եթե նկատի ունենանք, որ 1942 թվականից աշխատում էր* Վարդանանք *ստվարածավալ վեպի վրա: Դեմիրճյանի գրիչն այդքան բեղմնավոր էր եղել մեկ էլ սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին. այդ, անշուշտ, արդյունք է գրողի քաղաքացիական զգաստության ու ակտիվության:*

*Թվարկած պատմվածքները, ինչպես և Դեմիրճյանի Հայրենական պատերազմի և հետպատերազմյան տարիների մյուս պատմվածքներն ու ակնարկները, մարտաշունչ հրապարակախոսությունը ներքին, օրգանական թելերով կապված են* Վարդանանքի *հետ, մի երկ, որն իր նյութով, ատաղձով պատ-*

մական լինելով հանդերձ, խորապես արդիական է կյանքի, մարդկային գոյության ու մարդկայնության կենսահաստատ մեծ լիցքով և աշխարհազգացողությամբ:

Վարդանանքում հայ ժողովրդի պատմության V դարի իրադարձություններով գեղարվեստորեն իմաստավորվում են ժողովրդի գոյության կռվանները, իմաստավորվում նրա հետագա՝ 1500-ամյա ճանապարհի հեռավորությունից, պատմական դաժան փորձությունների բովով անցած ժողովրդական գիտակցության ելակետով:

Բազմաթիվ են Դեմիրճյանի վեպում այդ կռվանները, բայց դրանց հիմքերի հիմքը հողն է՝ նրան ձուլված շինականի ոգով ու հոգեբանությամբ:

Աշխարհավեր պատերազմ է. ներխուժել է պարսիկ բռնակալը. վիճակը ծանր է, տագնապալից. իսկ հո՞ղը, իսկ ժողովո՞ւրդը. հողին ի՞նչ. թշնամին հո չի գալիս հողի վրա աշխատելու, հողի վրա ժողովուրդ լինելու, արյուն-քրտինքով հողին շունչ տալու... արյուն-քրտինք թափելը, չես զավթի շինականից, ժողովրդից, ուրեմն և՝ հայրենին և հայրենականը, հայրենիքը:

Դեմիրճյանական խոհերի այս պարադոքսալ թվացող ընթացքով կենսասիրությունը վերաճում, դառնում է հզոր ու անպարտելի ուժ, իրար խարսխելով հողն ու կյանքը, հայրենիքն ու ժողովուրդը: Հողն իր վրա եղած կյանքով է հայրենիք, այդ հողի վրա հարատևող կյանքերի հանրագումարն է ժողովուրդը, հարատևելը բյուրավորների կենսասիրությունն է՝ համառ, անկոտրելի. հենց սա էլ ահա փոքրաթիվ հայ ժողովրդի ուժն էր. բայց սա ուժ է նրա իր՝ ժողովրդի համար, որը հենց կենսասիրությունից շատ է իմաստուն, որպեսզի խելահեղություն չհամարի պատերազմը աշխարհակալ մի թշնամու դեմ:

Հենց այստեղից էլ ահա Դեմիրճյանն սկսում է բացել Ավարայրի, ըստ էության հայ ժողովրդի հետագա բոլոր ընդվզումների խորհուրդը: Հեշտ չի որոշվել ծառանալը: Ժողովուրդը ծառացել է ծայր անհրաժեշտությամբ, երբ «դանակը հասել է ոսկորին», ճիշտ այնպես, ինչպես բնության արհավիրքի պահին՝ մեծից փոքր, առաջին իսկ պատահած քարով ու փայտով: Բնորոշ է, որ պարսիկների ներխուժումը Դեմիրճյանը որակում է որպես աշխարհավեր արհավիրք:

Այստեղից ողբերգական այն շունչը, որ Ավարայրի ճակատամարտի մեծատաղանդ նկարագրության մեջ անթեղ բորբոքվում է Վարդանի, վարդանանցից յուրաքանչյուրի հոգում, իր թանձրությամբ երբեմն վերաճելով նահատակության մռայլ տրամադրությունների: Ողբերգական մի սկիզբ, սակայն, որ վեպի ընդհանուր մտահղացման մթնոլորտում ծավալվում է էապես կենսահաստատ լիցքով:

Դեմիրճյանի վեպում V դարի պատմական իրականությունն ամեն ինչից առաջ կյանք է, համաժողովրդական մի կյանք՝ սիրո, աշխատանքի, վայելքի ու կարոտի, տխրության ու երջանկության, մարդկային ամենաառօրյական ձգտումների ու հույզերի սովորական ու հավիտենական զարկերակով:

Ջրտուքի, հնձի, հերկի, նժույգով սլանալու շինականի բերկրանքից մինչև մտքի ու բանականության ուժից ակնածելու խորհուրդ, լուսնյակ գիշերին սալին նստած անրջելու երջանկությունից մինչև սիրելի լինելու երիտասարդական թրթիռ, նույն մարդու մեջ հայրենիքի բախտի խորունկ վիշտ և մանկան պես զվարճանալու, կյանքի սեր— այսքան լայն ու անհամապարփակ է կյանքը Վարդանանքում, անհուն ցավերով, բայց և հեքիաթային հրաշագեղ վայելքներով ու տենչանքներով լի:



Այս կյանքով է ապրեցնում Դեմիրճյանն իր բազմանուն և բազմազան հերոսներին— շինականին, ծերունուն, գեղջկուհուն, երիտասարդին, նախարարին, սեպուհին, զինվորին, աշխարհականին, կանանց ու պատանիներին: Ապրեցնում է մարդու ապրելու իրավունքի պաշտպանության՝ իրեն հատուկ կրքով ու ավյունով, որը վեպը դարձնում է կյանքի համառ, հրաբորբոք ընդվզում՝ պատերազմի ու մահվան դեմ:

Նույն կրքով է ծավալվում ու լուծվում նաև Վարդան և Վասակ հակամարտությունը: Առաջինը մարդկային կյանքերի համար պատասխանատվության ողբերգական բեռով, մյուսը՝ եսամոլ, փառասիրությամբ կուրացած, դաժան, անխնա նույնիսկ սեփական զավակների և սիրած կնոջ կյանքի հանդեպ:

Դեմիրճյանը «պեղում է» Վասակին, ցույց տալիս, որ նրա այլանդակությունն այն չէ, որ պաշտպանում է այլ՝ Վարդանին հակառակ տեսակետ, անժամանակ կամ անտեղի համարելով ապստամբությունը Հազկերտի դեմ: Վեպում ապստամբության հարցը հեշտությամբ չի լուծում Վարդանը: Վասակի այլանդակությունն այն է, որ նա ժողովրդի կյանքի այդ տագնապալից, ահեղ պահին, ապառաժացած հազարների ցավի հանդեպ, կլանված է իր իշխանատենչության հագուրդ տալու մոլուցքով, որի բնութագրության համար հեղինակը չի խնայել ոչ մի գույն:

Ահեղ այդ պահը բոլորովին այլ ճանապարհով է տանում Վարդանին, ինքնամոռացության չափ ձուլելով նրան ամենքին՝ ամենամերձավորին և ամենահեռավորին, բոլորի հետ հավասարապես, դարձնելով նրանց ցավերի, ձգտումների ու խոհերի կիզակետ:

Դրանով է Վարդանը՝ Վարդան, դրանով և Ավարայրի ճակատամարտում իր ժողովրդի ազատությունն ու անկախությունն ապահովելու համար կայացրած վճռով:

Երկրորդ համաշխարհային պատերազմում Ֆրանսիայի, մարդկության ազատությանն իր կյանքը նվիրած Մ. Մանուշյանի մասին գրած Հերոսի բանաստեղծությունները հոդվածում, բացատրելով, թե ինչ է նշանակում հերոսություն, Դեմիրճյանը գրում է. Մանուշյանին «վիճակվեց գնալ հերոսության ուղիով: Որքան սիրում էր կյանքը, այնքան էլ գնաց դեպի մահը՝ խլելու, փրրկելու կյանքը: Ուրիշների կյանքը, միլիոնների: Այդպես է լինում հերոսությունը... սխալ է կարծել, թե հերոսը արհամարհում է կյանքը, դյուրին է կորցնում, վտանգում այն: Ո՛չ, հերոսը գիտե կյանքի գինը և հենց այդ կյանքի համար է կռվում նա: Անձնուրացությունը սխալ բառ է: Հերոսը գնահատում է իր անձը, այսինքն՝ կյանքը, բայց որքան էլ որ թանկ է գնահատում այն— ինչպես մենք բոլորս,— այնքան էլ նա չի խնայում այդ թանկ բանը ժողովրդի համար, սիրով տալիս է այն, միայն թող ազատվի, փրկվի ժողովուրդը» Դ. Դեմիրճյան, Երկերի ժողովածու, հ. VIII, էջ 610—611):

Ավարայրի վերջին գոտեմարտից առաջ, աշխարհակալ Հազկերտի մեծաքանակ զորքերի դեմ հանդիման Վարդանը խորհում է. «Սակայն ի՞նչ... Ոչնչանա՞լ՝ ոչնչացնելու համա՞ր, հայ ժողովրդին դնել մեծ վտանգի մեջ, հայ ժողովրդին փրկելու համա՞ր: Ո՛չ: Բայց հիմա պետք էր մի մեծ զոհ: Վարդանը տանջվում էր այդ զոհի համար: Եվ Վարդանը վճռեց իր մեծ վճիռը— հայ ժողովրդի առաջ պարտական չմնալ: Վճռեց վտանգել իրեն և յուրայիններին, և դրանով արժանի լինել վտանգելու հայոց ժողովրդին» (Դ. Դեմիրճյան, Վարդանանք, 1954, էջ 519):

Սա է հերոսության գերագույն չափանիշը՝ գիտակցված մահը, և, իհարկե,

ծիծաղելի կլիներ նրա երկում փնտրել «հերոսի»՝ արկածային վեպերին հատուկ հատկանիշներ։ Դեմիրճյանի պատկերած Վարդանը հառնում է մեր դեմ իր ողջ ողբերգականությամբ՝ վեհ, խոհուն ու հանդարտաբարո, Ավարայրում ընկնող իր ամեն մի զինվորի հետ նահատակվող։

Դեմիրճյանական մեկնաբանությամբ միայն այսպիսին կարող էր դարերով սրբանալ ժողովրդի գիտակցության մեջ ու կենցաղում, լինել պատմական անձնավորություն։

Բայց Դեմիրճյանի վեպը վերնագրված էր Վարդանանք, և դա ո՛չ միայն մտահղացում էր, այլև պատմափիլիսոփայական կոնցեպցիա։ Որքան էլ Վարդանը մեծ էր, վարդանանց պատերազմը ժողովրդի մի ամբողջ սերնդի գործ էր։ Այս գաղափարը Դեմիրճյանը գեղարվեստորեն իմաստավորում է՝ ստեղծելով նախարարների, ժողովրդի մարդկանց կերպարների մի ամբողջ շարք. կերտում է յուրովի՝ նրանցից յուրաքանչյուրի բնավորության, հոգևոր աշխարհի, կենսագրության և ձգտումների տարբերությամբ հանդերձ, նրանց բոլորին էլ բեկորելով Վարդանից, և Վարդանին՝ նրանցից— հողի ու հայրենիքի, կյանքի և արհավիրքի ըմբռնումներով, հայրենիքի համար նահատակվելու ինքնամոռացությամբ։ Բնորոշ է, որ «իրեն ու յուրայիններին վտանգելու» վճիռը Վարդանից առաջ վեպում առանձին-առանձին և միասին կայացնում են ժողովրդի մարդիկ՝ շինականներ Սահակը, Առաքելը, Արթինը և մյուսները՝ կանխորոշելով Ավարայրի ելքը։

Վարդանանքը սովետական ժողովրդի պատմական հերոսամարտերի արձագանքն էր, յուրովի, ինքնատիպ անդրադարձումը։ Վարդանանքը հավասարապես և՛ պատմական երկ է, և՛ ժամանակակից, խորապես արդիական— իր ոգով, համաժողովրդական ծառացման հերոսական պաթոսով ու տրամադրություններով, բայց և պատերազմի ծանրության ու ողբերգականության այն համաժողովրդական զգացումով, որ պատերազմի ողջ ընթացքում և հետո անբաժանելի էր սովետական մարդուց։

Վարդանանքը Դեմիրճյանի ստեղծագործական ճանապարհի հանրագումարն է, նրա մեջ հանգուցավորվել, երանգավորվել է գրողի հոգևոր մեծ աշխարհը՝ հայրենասիրությամբ ու ժողովրդասիրությամբ, մարդասիրությամբ ու այլասիրությամբ։

Այս իմաստով վեպում չափազանց ուշագրավ է հայ Արսենի և պարսկուհի Խուրիշայի սիրո պատմությունը։ Բանաստեղծական շնչով ու մարդասիրությամբ տոգորված էջեր, գրված անմահ Աբովյանի Թուրքի աղջկա ավանդներով։

Արվեստագետի մեծ սրտով ու խորատեսությամբ, Խուրիշայի սիրո նահատակությամբ Դեմիրճյանը բացահայտում է պատերազմի աղետը ո՛չ միայն մի՝ արդարացի կողմի, այլև մյուս՝ անարդարացի կողմի համար, գեղարվեստորեն ցույց տալով, թե ինչի է հասցնում մարդկությանը աշխարհավեր ամեն մի պատերազմ։

Խուրիշայի և Արսենի նման բյուրավոր անաղարտ կյանքեր է տրորում ու կործանում պատերազմը. Դեմիրճյանն իր վեպում օրինական հպարտությամբ է հնչեցնում այն գաղափարը, որ պատերազմի մեղքն ու հանցանքը հայ ժողովրդի վրա չեն ընկնում։ «Պատերազմ մենք չէ, որ դուրս ենք եկել, այլ Հազկերտը» (Վարդանանք», էջ 124). Հազկերտը և ոչ իսկ պարսիկները։ Այս գաղափարը խտացնում էր հիտլերյան Գերմանիայի դեմ ծառացած սովետական ժողովրդի արդար ցասումն ու բողոքը պատերազմի հրձիգների դեմ։



Հայրենական պատերազմի օրերին Վարդանանքը ոգևորել, նորանոր քաջագործությունների է մղել, բուռն հայրենասիրությամբ տոգորել մեր երկրի երիտասարդությանը։

Հայրենական պատերազմի ավարտից ավելի քան տասը տարի հետո, ռազմաճակատում ընկած դաղստանցի գրող էֆենդի Կապիևի ճակատային գրառումների առիթով, վերլուծելով պատերազմական դասերը, Դեմիրճյանը նշում էր, որ պատերազմն ուսանելի է մարդասիրության և կենսասիրության արվեստը, բայց «ոչ պատերազմ մղելու արվեստը» ուսանելու համար, ապա ավելացնում. «Բանն այստեղ պատերազմն ինքը չէ։ Այլ մարդը,— այդ հավերժական ուսումնասիրության օբյեկտը։ Մարդը, որ պատերազմ է մղում, այն էլ՝ մարդու դեմ։ Չէ՛ որ պատերազմը ես,— շատ ցավալի է ասել,— մի հարկադիր, թերևս տաժանակիր աշխատանք է, որին դատապարտում է մեզ պատմությունը, մի... պատմություն, որ մենք ստեղծում ենք ոչ մեր կամքով...

Հավատացնում եմ ձեզ, որ պատերազմի խստադաժան և իմաստուն փորձից հետու ավագ գրողն իր ոչ մի տաղանդով չէր կարողանա այն բոլորն այնպես պատկերել, ինչպես երիտասարդ Կապիևը (Երկերի ժողովածու, հ. VIII, էջ 590—591)։

Ակնածանքով ու հպարտությամբ է արձանագրում Դեմիրճյանը սովետական գրող Կապիևի մարդասիրությունը, մարդկության ճակատագրով մտահոգվելը, գտնելով, որ միայն դա կարող է զարդարել իսկական գրողին, հայրենասերին ու քաղաքացուն։

Ժողովուրդն է պատմության շարժիչ ուժը— այս է Վարդանանքի պատմափիլիսոփայական կոնցեպցիան, որը, իհարկե, նորություն չէր Դեմիրճյանի ստեղծագործության մեջ։ Երեսնական թվականների կեսերից պատմական թեմատիկայով գրված նրա Գիքոր ծաղկանց, Զարզաճ պատմվածքներում և ապա՝ Երկիր հայրենի դրամայում պատմական դեպքերն ու իրադարձությունները նա արդեն իմաստավորում էր այդ ելակետից։

Չափազանց բնորոշ է այդ իմաստով Գիքոր ծաղկանցը՝ գրված դեռևս 1935 թվականին։

Ովքե՞ր են, ստեղծել հայ կուլտուրան և ովքե՞ր են պահել ու սերնդիցսերունդ ավանդել. ժողովուրդը. քիչ է ասել դա. ժողովրդի կոնկրետ ո՛ր մասը— ահա այդ հարցերն են կազմում պատմվածքի առանցքը, որը և պայմանավորել է նրա կառուցվածքը, տրադիցիոն առումով հատվածական, ընդհանուր մտահղացմամբ ամբողջական ու մոնումենտալ։

Բանաստեղծական իսկական պաթոսով Դեմիրճյանը գծագրում է հասարակ շինականի որդի Ջվարթի կյանքի պատմությունը, որ Գիքոր ծաղկանցի ստեղծման պատմությունն է։ Հայ գրականության մեջ դժվար է գտնել հայ երգի ավելի բանաստեղծական բնութագիր. հայ երգը, ինչպես դիցաբանական Վահագնը, ծնվում է մայր բնությունից՝ նրա անորսալի, անխարդախ երանգներով ու հնչյուններով։ Հայոց երգը ստեղծում է իր հողին, իր բնությանը ձուլված, նրանից զոհ մարդը՝ զերծ ընչաքաղցությունից, անմասնակից փառքի խարդախ դավերին։

Պատմվածքի երկրորդ մասում Հուսիկը՝ մի այլ շինականի որդի, տարիներ, գուցե և դարեր հետո արաբական մեյդանում Ծաղկանց մատյանը փրկում է օտարությունից, սովահար իր ընտանիքի համար ցորենի փոխարեն մատյանը գնելով։

ժողովրդի անշահախնդիր ինքնամոռացությամբ է ստեղծվել ու հարատևել հայ արվեստը, հայրենիքը՝ իր սրբություններով ու ավանդներով, նկարագրով ու պատմությամբ:

Հայրենական պատերազմի նախաշեմին Դեմիրճյանի համար դա արդեն աներկբայելի համոզմունք էր, որոշակի կոնցեպցիա, որ էպիկական խորությամբ ծավալվում ու լուծվում է Վարդանանքում:

Վարդանանքից հետ, հետպատերազմյան շրջանում, Դեմիրճյանի ստեղծագործության մեջ մի զգալի ժամանակ դեռևս տիրապետող էր մնում պատերազմական թեման: Հայրենասեր գրողին անամոք ցավի նման բառացիորեն հետապնդում էր պատերազմի դաշտերում ընկած սովետական մարտիկների հիշատակը, և նա առիթը բաց չէր թողնում խնկարկելու նրանց, նզովելու ֆաշիստների սանձազերծած արյունահեղ պատերազմը:

Պատերազմը փորձություններից ամենածանրն էր և դրանից սովետական ժողովուրդը դուրս եկավ ո՛չ միայն հաղթանակած, այլև ավելի ու ավելի մարդկայնացած, դուրս եկավ կյանքի առավել բուռն սիրով, մարդկային կյանքերի, մարդկության բախտի հանդեպ բազմապատկված պատասխանատվությամբ:

Բնորոշ է, որ 1956 թվականին, երիտասարդ գրողներին ուղղած իր խոսքում, Դեմիրճյանն այդ նույն պահանջներն էր առաջադրում գրական նոր սերնդին, օրինակ բերելով նույն Կապիկին:

Այդ ոգով էլ ահա Դեմիրճյանն ընտրել է հետպատերազմյան շրջանի իր հերոսներին: Մի դեպքում պատերազմից վերադարձած հաշմանդամ զինվորի կնոջը, լուռ ու հպարտ իր նվիրվածությամբ, որ քաղքենիների լեզվով համակերպություն է կոչվում, իսկ գրողը վերնագրել է Մի հերոսություն, որ պատմություն չունի: Հուշ աղբյուր պատմվածքում նկարագրվում է սիրած տղամարդու կորուստը սրտում անթեղած կոլտնտեսային դաշտերի օղակավարուհու հոգևոր ուժը:

Եվ, վերջապես, Հանուն կյանքի պատմվածքի հերոսուհին՝ պատերազմի արհավիրքների բովով անցած սովետական շարքային բժշկուհին, որը անձնահարվիրքների արհավիրքների կան նվիրվածությամբ շարունակում է մարդկային կյանքեր փրկել: Դեմիրճյանի հետպատերազմյան շրջանի վաստակում իր ընդհանրացման ուժով առանձնանում է հատկապես վերջինը, որտեղ սյուժետային գծին ուղեկցող խոհական երակը, երանգավորվելով և հարստանալով, ձեռք է բերում սովետական խաղաղ ու ստեղծագործական կյանքի հաստատման գեղարվեստական ճշմարիտ հնչեղություն:

Սյուժետային ոլորտների, մարդկային հոգեբանությունների տարբերությամբ հանդերձ, ներքին խոր աղերս կա Դերենիկ Դեմիրճյանի այս պատմվածքների և նույն տարիներին հայրենադարձության թեմայով գրած պատմվածքների միջև: Ոգու, շնչի մի ընդհանրություն, որ բնական է անցած համաշխարհային պատերազմում կոտորածներից ու ավերածություններից ամենասարսափելին ճաշակած տարագիր հայության և երկրորդ համաշխարհային պատերազմի ծանրությունն ուսած սովետական ժողովրդի կենսազգացողության միջև:

Օտար ափերից հայրենիք վերադարձող աստանդական հայի ողբերգական ճակատագիր և աննկուն մի տոկունություն, եռանդ, որով տարագիր հայը հայրենիքում՝ Սովետական Հայաստանում, լծվում է իր երազանքների իրա-



գործմանը — սա է հայրենադարձության թեմայով գրած Դեմիրճյանի պատմվածքների ընդհանուր ոգին:

Մեկի երազանքը (Տուն պատմվածքում) հայրենի հողի վրա տուն ունենալն էր և, ահա, իր որդիների հետ ծերունի Արթինը կառուցում է այդ տունը, դրվող ամեն մի քարի հետ վերհիշելով ավերված հայրենական օջախը, խոշտանգված ծնողներին ու հարազատներին, հիշում անցած փշոտ ու քարքարոտ ճանապարհները, և անցյալից վերադառնալով ներկային, դառն խանդաղատանքով մրմնջում. «Այս տունը իմ հաղթանակիս տունն է»:

Քաֆիրը պատմվածքի հերոսը, ամբողջ կյանքում թափառելով երկրեերկիր, տառապել էր մոռանալու համար անմոռանալին՝ թուրքական արյունոտ յաթաղանը, և հիմա երախտապարտ է հայրենիքին, նրա շինարար ժողովրդին, որոնք նորոգ տեսքով մոռացնել տվին անմոռանալին:

Շինարար, ստեղծագործ ոգով, տոկունությամբ ու կենսասիրությամբ է հայ ժողովուրդն իր դարավոր ճանապարհին ամեն անգամ մոռացել անմոռանալին, հառնել, հարատևել ու հասակ առել, հասել իր լուսավոր օրերին: Դեմիրճյանի ողջ ստեղծագործության հիմքում ընկած ելակետային այս գաղափարների վրա է խարսխված նաև նրա վերջին մեծածավալ երկը՝ Մեսրոպ Մաշտոց պատմավեպը, որ, դժբախտաբար, մնաց անավարտ:

Վեպի նյութը հայ գրերի գյուտն է, որ Դեմիրճյանի մեկնաբանությամբ հազար ճակատամարտ արժեր ու հաղթանակ, քանի որ ճակատագրական այդ գյուտով ապահովվեց ժողովրդի ինքնությունը, կուլտուրական և ստեղծագործ ժողովրդի նրա համամարդկային նկարագիրը աշխարհի մեծ ու փոքր ժողովուրդների շարքում:

«Սեփական ժողովրդի ճանաչողությունը և գնահատությունը մեծ կուլտուրա է,— ասում էր Դեմիրճյանը:— Դա ինձնից պահանջեց երկար տարիների ջանք և ուղիղ ճանապարհ: Ես ճանաչեցի հայ ժողովրդի մեջ համամարդկայինը, ես գտա հայ ժողովրդին, երբ փայլեց իմ առջև նրա հանճարը, նրա անտիկական կլասիկայի մեջ՝ Խորենացու, Եղնիկի, Եղիշեի և այլոց գլուխգործոցների մեջ, երբ ժպտաց հայկական վերածնունդը Նարեկացու, Երզնկացու, Քուչակի վերասլացքի մեջ, երբ իմ առջև կանգնեց հայկական վեհ ճարտարապետությունը, ծաղկեց հայկական մանրանկարչությունը: Այստեղ էր հայկական համամարդկայնությունը: Մի համամարդկայնություն, որ բուն էր սատացել իր ազգային արմատից և ճյուղեր էր արձակել հավիտենական երկնքի մեջ: Այստեղ ես հասու եղա, որ համամարդկայնությունը միայն կարող է հանճարներ տալ» («Գրական թերթ», 1945, № 12):

Ազգային նեղսրտություն, նեղմտություն և բացառիկություն չհանդուրժող նման ըմբռնումներով է Դեմիրճյանը ծառայել գրականությանն ու ժողովրդին, իր գրական ավելի քան 60-ամյա գործունեությամբ թողնելով հարուստ մի ժառանգություն՝ զարդարված գրողի համեստագույն և իմաստուն պատգամով. «...Ես տվի իմ ժողովրդին ոչ թե մեծ բան, այլ մեծապես ցանկացա տալ մի բան: Ես եղա այն հացահատիկը, որ ընկնելով հողը՝ մեռնում է որպեսզի գա հացը կենդանի...» (Նույն տեղը):



ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ա. Գ.

Պահեստի գեներալ-մայոր, Սովետական Միության հերոս

# ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿ ՎՈԼԳԱՅԻ ԱՓԻՆ

## (ՍՏԱԼԻՆԳՐԱԴՅԱՆ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻ ՄԱՍՆԱԿՑԻ ՀՈՒՇԵՐԻՑ)

*Ստալինգրադի պաշտպանական ճակատամարտը սկսվեց 1942 թ. հուլիսի 17-ին և տևեց մինչև նոյեմբերի 20-ը։ Հիտլերյան հրամանատարությունը Ստալինգրադը արագ գրավելու նպատակով հարձակման դուրս բերեց 4-րդ տանկային և 6-րդ համազորային բանակները, որոնց օժանդակում էին հարյուրավոր օդանավեր, մի հանգամանք, որը հնարավորություն տվեց հակառակորդին ճեղքել-անցնել Ստալինգրադի շրջանը և մարտեր սկսել քաղաքը գրավելու համար։*

### 1. ՍՏԱԼԻՆԳՐԱԴԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ 1942 Թ. ՌԱԶՄԱՐՇԱՎՈՒՄ

1942 թ. ամռանը Դոնի ընդարձակ տափաստաններում սկսվեց մեր դարաշրջանի մեծագույն ճակատամարտերից մեկը, որը զորքերի հսկայական զանգվածների և ռազմական տեխնիկայի քանակով գերազանցում էր մարդկության հայտնի բոլոր ճակատամարտերին։ Մոսկվան գրավելու նպատակով 1941 թվականի ճակատային հարվածի տխուր փորձը ֆաշիստական գլխավոր հրամանատարությանը ստիպեց 1942 թ. ամառային հարձակումը սկսել հարավ-արևելյան ստրատեգիական ուղղությամբ գլխավոր հարված հասցնելուց։ Դրա նպատակն էր՝ հասնել Վոլգայի ափը՝ Կովկասի հետ երկրի կենտրոնական մասի այդ կոմունիկացիան, ապա ծավալելով հարձակումը դեպի հյուսիս, դուրս գալ Մոսկվայի ստրատեգիական շրջանի թիկունքը և արևմտյան ուղղությունից հարձակվող զորքերի հետ փոխադարձ գործողությամբ ջախջախել Կարմիր բանակի գլխավոր ուժերը և գրավել Մոսկվան։

Օժանդակ հարվածը նախատեսվում էր հարավային ուղղությամբ դեպի Բաքու, նպատակ ունենալով մեր զորամասերի ուժերը շեղել սովետա-գերմանական ռազմաճակատի կենտրոնական տեղամասերից և գրավել ստրատեգիական հումքի աղբյուրները Կովկասում։

Ժամանակը գերմանացիների համար վճռական նշանակություն ուներ. նրանք պլանավորել էին 1942 թվականի ամառվա հարձակումն իրագործել հնարավորին չափ արագ։ Դա հաստատվում է մեր զորքերի կողմից գրաված



նրանց օպերատիվ փաստաթղթերով։ Գերմանացիները որոշել էին Սարատովում լինել օգոստոսի 10-ին, Կույբիշևում՝ 15-ին, Արզամասում՝ սեպտեմբերի 10-ին, Բաքվում՝ 25-ին։ Մոսկվայի համար վճռական ճակատամարտը պետք է ծավալվեր 1942 թ. հոկտեմբեր-նոյեմբերին։

Սկզբում գերմանացիները մտադիր էին Մոսկվայի թիկունքը դուրս գալ Վորոնեժի ուղղությամբ՝ ամենակարճ ճանապարհով, բայց հանդիպելով մեր զորքերի համառ դիմադրությանը և, մեծ կորուստներ կրելով, գերմանական հրամանատարությունը հարավում կենտրոնացված գլխավոր ուժերի ուղղությունը փոխում է դեպի Ստալինգրադ։ Գերմանացիները հասկանում էին, որ առանց այդ կարևորագույն ստրատեգիական կետի, իրենք չեն կարող լիովին ապահովել ոչ միայն Մոսկվայի ուղղությամբ հասցվող գլխավոր հարվածը, այլև Կովկասի վրա հարձակվող խմբավորման գործողությունները։ Այդ նկատառումով գերմանական հրամանատարության ստրատեգիական հաշիվներում Ստալինգրադը վճռական տեղ էր գրավում։

1942 թ. նոյեմբերի 3-ին արտասանած իր ճառում Հիտլերը ուղղակի հայտարարեց, որ Ստալինգրադը վճռական նշանակություն ունի իրենց համար, «Հակառակ մեր սպասածին ոչ թե կենտրոնական ճակատի վրա, այլ Ստալինգրադի մոտ մեր գրոհը բացատրվում է նրանով, որ ես ուզում էի որոշակի վայրում, որոշակի քաղաքի մոտ հասնել Վոլգային։ Դա վիթխարի ուղի է և մենք ուզում էինք դրան տիրել»։ Այս էր գերմանական հրամանատարության ստրատեգիական պլանը։ Ստալինգրադը հանդիսանում էր խոշոր ստրատեգիական կետ, որը կապում էր հյուսիսի ու հարավի մեր բանակներին, իսկ Դոնի-Ռոստովի անկումից հետո դա երկրի կենտրոնի և Կովկասի միակ կապող օղակն էր։

### 2. ՍՍՀՄ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐՈՒԹՅԱՆ ՊԼԱՆԸ

Ունենալով ուժերի, առանձնապես ավիացիայի ու տանկերի գերազանցություն, գերմանական զորքերը հուլիսի կեսերին ճեղքեցին մեր պաշտպանության ճակատը և դեպի ճեղքվածք շարժելով 6-րդ համազորային և 4-րդ տանկային բանակներից կազմված հզոր խմբավորումը, դուրս եկան Դոնի ոլորանը՝ Բոկովսկայա, Մորոզովսկ, Միլլերովո, Կանտեմիրովկա շրջանում։ Ստալինգրադի շրջանին և Վոլգային սպառնաց ահավոր վտանգ։

Դոնի ոլորանը պաշտպանող սովետական 62-րդ և 64-րդ բանակների զորքերին վիճակված էր կռվել բացառիկ դժվարին պայմաններում։ Նրանց ուժերն ու միջոցները չափազանց սահմանափակ էին, ունեին ոչ ավելի, քան 10 հրաձգային դիվիզիա։

Գերմանական խմբավորումը ուներ 29 դիվիզիա, այդ թվում՝ 4 տանկային և 3 մոտորացված։ Այդ խմբավորումը ուժեղացված էր մեծ քանակությամբ հրետանիով և օդից նրան օժանդակում էր Ռիխտհոֆենի 4-րդ օդային նավատորմը, որն իր կազմում ուներ 900-ից ավելի մարտական օդանավ, չհաշված 8-րդ ավիակորպուսինը։

Կարմիր բանակի զորամասերը հակառակորդին զգալիորեն զիջում էին իրենց թվով և տեխնիկայով։ Բայց և այնպես, լարված մարտեր մղելով և համառորեն կասեցնելով հարձակվող գերմանական զորքերին, նրանք շահեցին որոշ ժամանակ, որը շատ անհրաժեշտ էր Ստալինգրադի պաշտպանությունը ամրացնելու և անհրաժեշտ ռեզերվներ մոտեցնելու համար։

Մեր հրամանատարության ստրատեգիական մտահղացումն էր՝ իրագործել մի շարք պաշտպանական օպերացիաներ, հյուծել թշնամուն, կուտակել անհրաժեշտ ուժեր ու միջոցներ վճռական հարձակման անցնելու և թշնամու զորքերին լիովին ջախջախելու համար:

## 3. ՄԱՐՏԵՐԸ ՍՏԱԼԻՆԳՐԱԴԻ ՄԱՏՈՒՅՑՆԵՐՈՒՄ

1942 թվականի սեպտեմբերի 3-ին սկսվեցին կատաղի կռիվները քաղաքի մատույցներում: Գերմանացիները մարտի էին նետում դիվիզիա-դիվիզիայի հետևից: Մարտերի առաջին 10 օրվա ընթացքում նրանք կորցրին 24 հազար զինվոր, 185 հրանոթ և 200-ից ավելի տանկ: Ուժի գերազանցությունը հակառակորդի կողմն էր և սեպտեմբերի 17-ին նրան հաջողվեց ճեղքել-անցնել Ելշանկա գյուղի շրջանը (քաղաքի հարավային մատույցներում) և դուրս գալ Վոլգայի ափը:

Քաղաքի մատույցներում գերմանացիները կենտրոնացրին 12 դիվիզիայից, 500 տանկից, 1435 հրանոթից կազմված հզոր խմբավորում: Օդից այդ խմբավորմանը օժանդակում էին 1000 մարտական օդանավ: Իսկ մեր 62-րդ բանակը, որը պաշտպանում էր Ստալինգրադը, ուներ մինչև 40000 մարդ, 725 հրանոթ, և մոտ 60 տանկ: Այդպիսով ուժերի հարաբերակցությունն էր՝ հետևազորը 1 : 2,5, հրետանին՝ 1 : 2, տանկերը՝ 1 : 8,3:

Քաղաքի կենտրոնական և հարավային մասի համար մղվող մարտերը տևեցին 13 օր: Սեպտեմբերի 26-ին գերմանացիներին հաջողվեց մեծ կորուստների գնով տիրել քաղաքի հարավային և նրա կենտրոնական շրջանի արևմտյան մասին: Գեներալ Ռոդիմցևի 13-րդ գվարդիական դիվիզիան ամուր պահում էր քաղաքի մերձափնյա մասը և թույլ չէր տալիս, որ այդ ճակատամասում թշնամին մոտենա Վոլգային:

Սեպտեմբերի 27-ից մինչև հոկտեմբերի 4-ը լարված մարտեր էին տեղի ունենում Կրասնի օկտյաբր և Բարիկադի գործարանների բանավանների համար: Մեծ կորուստների գնով թշնամուն հաջողվեց հոկտեմբերի 4-ին գրավել բանավանները և ընդհուպ մոտենալ գործարաններին: Գործարանների համար մղվող մարտերը սկսվեցին հոկտեմբերի 4-ին և շարունակվեցին մինչև մեր զորքերի հակահարձակման անցնելու օրը:

Ստալինգրադի տրակտորային գործարանի համար կռիվները տևեցին 1942 թ. հոկտեմբերի 4-ից մինչև 14-ը: Հոկտեմբերի 14-ին վերախմբավորելով իր ուժերը, հակառակորդին հաջողվեց մեծ կորուստների գնով ճեղքել մեր պաշտպանությունը, գրավել գործարանը և դուրս գալ Վոլգայի ափը:

62-րդ բանակի ուժերի մի մասը (Ռինոկի շրջանում) գնդապետ Գորոխովի հրամանատարությամբ կտրվել էր բանակի հիմնական ուժերից և սեղմվել Վոլգային, բայց շարունակում էր դիմադրությունը, իսկ Բարիկադի և Կրասնի Օկտյաբր գործարանների համար կռիվները շարունակվում էին մինչև մեր զորքերի հակահարձակման անցնելը: Արտադրամասերի, առանձին շենքերի, իսկ արտադրամասերի ներսում առանձին հաստոցների համար այդ կռիվները ամենօրյա դաժան մարտերի բնույթ էին կրում:

Մեկ ամսվա ընթացքում հիտլերականները 100-ից ավելի գրոհներ ձեռնարկեցին մեր 315-րդ հրաձգային դիվիզիայի դեմ, իսկ մի օր էլ դիվիզիայի զորամասերը ետ մղեցին հակառակորդի հետևազորի ու տանկերի մոտ 20 գրոհ: Ես տեսա, թե ինչպես գերմանական մի տանկ շտապում էր ճզմել վիրավոր զինվոր Ա. Դուրմիշյանին (Նուխեցի՝ Ադրբեջանական ՍՍՀ) և բուժ-



քրոջը: Ընկերներին փրկելու նետվեցին սակրավորները: Նրանք գնացին թշնամու տանկերին դեմ հանդիման և հակատանկային նռնակներ ու վառելանյութով լի շշեր նետեցին դրանց վրա: Մեքենաները այրվեցին, կանգ առան վիրավորված Դուրմիշյանից ոչ հեռու: Այդ գոտեմարտում վիրավոր հրետանավոր Իոսիֆ Կոռնեևը, սանիտարուհիների և վիրավոր մարտիկ Շավլևի օգնությամբ ոչնչացրեց գերմանական 3 տանկ:

Մեր զորքերի հերոսական դիմադրության հետևանքով գերմանացիներն անընդհատ թուլացնում էին իրենց հարձակման տեմպը: Հոկտեմբերի վերջերին գերմանական հարձակումը կասեցվեց և փաստորեն կանգ առավ: 62-րդ բանակի զորամասերը նախաձեռնությունը խլեցին թշնամուց և նրան ստիպեցին պաշտպանության անցնել: Հարազատ քաղաքի համար մղվող մարտերում սովետական զորամասերի հետ միասին մարտի մեջ մտան նաև տրակտորային, Կրասնի Օկտյաբր, Բարիկադի գործարանների բանվորները և Ստալինգրադի մոտ 80 հազար աշխարհազորայիններ:

Չնայած օդից չընդհատվող գնդակոծումներին, ռմբակոծումներին, և շարունակվող դաժան կռիվներին, գործարանները աշխատանքը չէին դադարեցնում, ռազմական արտադրանք էին տալիս և վերականգնում ռազմական տեխնիկան:

Սովետական Միության Կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն դիմեց Ստալինգրադի պաշտպաններին, կոչ անելով ամուր կանգնել և քաղաքը չհանձնել թշնամուն: Ի պատասխան դրան, սովետական ռազմիկները երդվեցին կուսակցությանը և ժողովրդին՝ պահել Ստալինգրադը: Այդ երդումը նրանք պատվով կատարեցին: Այդպիսի անսահման արիություն և մասսայական հերոսություն չի իմացել անցյալ պատերազմների պատմությունը: «Ոչ մի քայլ ետ», «Վոլգայից այն կողմ մեզ համար հող չկա»,— սրանք էին քաղաքի քաջարի պաշտպանների մարտական լոզունգները, որ ոգեշնչեցին մեր ռազմիկներին կանգնեցնելու հիտլերյան զորքերին և թույլ չտալու նրանց ոչ մի քայլ առաջ շարժվել:

Ես լավ հիշում եմ հետախույզ-ագիտատոր, կիրովականցի Սուրեն Միրզոյանի զրույցը մարտիկների հետ: Նա զինվորներին անձնական պատասխանատվության կոչ էր անում սիրելի հայրենիքի պաշտպանության համար: Նրա մարտական ընկերներն էին՝ վաշտի քաղղեկ Շավարշ Ավետիսյանը (այժմ «Սովետական Հայաստան» թերթի խմբագրի տեղակալ), ավագ լեյտենանտ Սարգիս Սաղաթելյանը, ավտոմատավոր Միշա Թունյանցը, հրաձիգ Վազգեն Մարգարյանը, սերժանտ Խաչատուր Մեժլումյանը, բուժքույր Շողակաթ Ժելտուխյանը, հետախույզներ՝ Շավարշ Գևորգյանը, Վազգեն Զինարյանը, Նիկոլայ Պոպովը, սերժանտ Գրիշա Արխիմենկոն, գումարտակի կոմերիտական կազմակերպիչ Սուրեն Ավետիսյանը արևահար ու հողմահար՝ լարված իրադրության մեջ արիացած մարտիկներ:

Ամբողջ աշխարհը հետևում էր սովետա-գերմանական ռազմաճակատում տեղի ունեցող իրադարձություններին, որտեղ ոչ թե կյանքի, այլ մահու պայքար էր մղվում: Պատերազմի հենց սկզբից հիտլերականները դեմ առան սովետական հասարակարգի, մեր երկրի ժողովուրդների անխախտ բարեկամության անհաղթահարելի ուժին, ժողովուրդներ, որոնք սերտորեն համախմբված Լենինի կուսակցության, սովետական կառավարության շուրջը, պատրաստ էին մինչև վերջ պաշտպանելու իրենց հայրենիքը, ազատությունն ու անկախությունը: Կատաղի մարտերի և սովետական զինված ուժերի աճող գի-

մադրության շնորհիվ Ստալինգրադի գրավման գերմանական պլանը վիժեց-
վեց:

Պատերազմի 5 ամսում գերմանա-ֆաշիստական բանակը սովետա-
գերմանական ռազմաճակատում կորցրեց սպաների ու զինվորների, մանա-
վանդ տանկիստների և օդաչուների ամենափորձված կադրային կազմը:

1941—1942 թթ. ֆաշիստների ամառային հարձակման ժամանակ սովե-
տական բանակի համառ դիմադրությունը զգաստացնող ազդեցություն ունե-
ցավ Ճապոնիայի և Թուրքիայի կառավարող շրջանների վրա, որոնք իրենց
զինված ուժերը պատրաստում էին մեր երկրի վրա հարձակվելու համար:

1942 թ. գարնանը իմպերիալիստական Ճապոնիան սովետական սահման-
ների մոտ՝ Մանջուրիայում ու Կորեայում կենտրոնացրեց մինչև 28 հետևա-
կային դիվիզիա, Թուրքիան մեր հարավային սահմաններին էր մոտեցրել
մինչև 17 հետևակային դիվիզիա: Իրենց զորքերը մոտեցնելով ՍՍՀՄ սահման-
ներին, Ճապոնիան և Թուրքիան հետևում էին Ստալինգրադի ճակատամար-
տին այն հաշվով, որպեսզի մեր զորքերի պարտության դեպքում անհապաղ
հարձակվեին Սովետական Միության վրա:

## 4. ՇՐՋԱՊԱՏՈՒՄ ԵՎ ՋԱԽՋԱԽՈՒՄ

1942—1943 թթ. Ստալինգրադի շրջանում ձմեռային ռազմարշավը
սկսվեց Կարմիր բանակի հարձակումով, որի նպատակն էր ոչնչացնել այդ-
տեղ գտնվող գերմանա-ֆաշիստական ընտիր ուժերին: Այդ հակահարձակման
հաջողությունից էր կախված մյուս ռազմաճակատներում սովետական զոր-
քերի հետագա բոլոր գործողությունների ծավալման հնարավորությունը:
1942 թ. նոյեմբերին Ստալինգրադի շրջանում մեր զորքերի դեմ գործում էին
Իտալական 8-րդ, ռումինական 3-րդ, գերմանական 6-րդ համազորային և
4-րդ տանկային բանակների զորամասերը, որոնք ունեին 49 դիվիզիա, ներ-
առյալ 4 մոտորացված և 5 տանկային, ինչպես նաև 2 բրիգադ: Թշնամու
գլխավոր խմբավորումը՝ 6-րդ և՛ 4-րդ տանկային բանակները գտնվում էին
Վոլգայի և Դոնի միջև: Դրանց գործողություններին օժանդակում էին 4-րդ
օդատորմը և 8-րդ ավիացիոն կորպուսը:

Գերմանա-ֆաշիստական հրամանատարությունը 1942—1943 թթ. ձմե-
ռային պլաններում վճռական նպատակներ չէր դրել: Նա հույս ուներ ինչ
գնով էլ լինի զբաղեցրած սահմանագծերում մնալ մինչև 1943 թ. գարունը,
իսկ հետո, ուժեր կուտակելով նորից հարձակման անցնել և տապալել Սովե-
տական Միությունը:

Ստալինգրադում հակահարձակումից առաջ ստորաբաժանումներում ու
զորամասերում անցկացվեցին կուսակցական ու կոմերիտական ժողովներ,
զրույցներ մարտիկների հետ: Հայրենիքին իրենց նվիրվածությունը և թշնամու
դեմ բոլոր ուժերով կռվելու պատրաստակամությունը շատ զինվորներ ու
հրամանատարներ արտահայտում էին հրամանատարությանը և կուսկազմա-
կերպությանն ուղղած իրենց զեկուցագրերում: «Մարտի մեջ մտնելով,—գրում
էր վաշտի հրամանատար Կոչկինը,— հավաստիացնում եմ հրամանա-
տարությանը, որ կռվելու եմ քաջաբար, արժանապատվությամբ, չխնայելով
կյանքս: Վիրավորվելու դեպքում էլ չեմ թողնի մարտի դաշտը, մինչև որ չլքեն
ուժերս: Բարևներս, ընկեր կոմունիստներ: Կոմերիտական Կոչին»:

Սովետական ռազմիկները անհամբեր սպասում էին գրոհի ազդանշա-



նին: Նրանք լի էին վճռականությամբ՝ կոտրել թշնամու դիմադրությունը և
պատվով կատարել իրենց առջև դրված մարտական խնդիրը:

Ստալինգրադում Կարմիր բանակի հարձակումը սկսվեց 1942 թվականի
նոյեմբերի 19-ին, իսկ ռազմաճակատների փոխադարձ գործողության ընդ-
հանուր պլանով մեր ռազմաճակատի զորքերը հարձակողական գործողու-
թյուններ սկսեցին նոյեմբերի 20-ին: Հրետանային նախապատրաստումից
հետո ժամը 8-ն անց 30 րոպեին հարձակման անցավ գեներալ Ն. Ի. Տրու-
ֆանովի 51-րդ բանակը: Երկու ժամից քիչ անց գրոհի դիմեցին գեներալ
Ֆ. Ի. Տոլբուխինի 57 րդ բանակի միավորումները: Գեներալ Մ. Ս. Շումիլովի
64-րդ բանակը հարձակումն սկսեց նույնպես երկու ժամ հետո:

Այդ երեք բանակներով Ստալինգրադի ռազմաճակատում թշնամուն հասցը-
վում էր գլխավոր հարվածը. գեներալ Վ. Ի. Չույկովի 62-րդ բանակը թշնամու
ուժերը կաշկանդում էր քաղաքի շրջանում և պատրաստվում հակահարձակ-
ման: Ցամաքային զորքերի գործողություններն ապահովում էր գեներալ Տ. Տ.
Խրյուկինի 8-րդ օդային բանակը: Հիտլերականները, փորձելով ձախողել մեր
զորքերի գրոհը, նրանց վրա փոթորկալի կրակ էին թափում և անընդհատ
հակագրոհների նետվում: Հակառակորդը առանձնապես ուժեղ դիմադրություն
էր ցույց տալիս 57-րդ բանակի զորամասերին: Բայց ոչ մի բան չկարողացավ
կանգնեցնել մեր ռազմիկների սրընթաց հարձակումը: Առաջին իսկ օրը թըշ-
նամու պաշտպանությունը ճեղքվեց:

Չորրորդ մեքենայացված կորպուսի 60-րդ մոտոհրաձգային բրիգադը, որի
հրամանատարն էի ես, հարձակում սկսեց Ցացա լճի շրջանից՝ Տինգուտի,
Ջետի, Վերխնի Ցարիցինի, Նիժնի Ցարիցինի և Սովետսկի բնակավայրերի
ուղղությամբ: Բրիգադի հարձակման հատվածը ուժեղ ականապատված էր և
հագեցված հակատանկային հրետանիով: Գերմանական ականապատված
պաշտպանական գոտում պայթում էին նռնակներ, ականներ: Սկսվեց ուժեղ
հրետանային-ականանետային կրակ: Մեր աջաթևյան տանկային վաշտի վրա
առանձնապես հուժկու կրակ բացեց հակատանկային զուգակցված հրետա-
նին, դրանով իսկ կանգնեցնելով նրա առաջշարժումը: Նկատելով այդ, տանկի
հրամանատար լեյտենանտ Գրիգորևը, չնայելով իր վառվող տանկին, առանց
ուշացնելու մեքենան ուղղեց թշնամու վրա և ոչնչացրեց նրա զուգահեռ հրա-
նոթը, որով օգնեց մեր տանկային վաշտին՝ հակառակորդի պաշտպանու-
թյան խորքն անցնելու:

Ժամը 18-ին մենք մարտերով դուրս եկանք Պլոդովիտոյե շրջանը, ճանա-
պարհին ոչնչացնելով հակառակորդի պաշտպանվող ու հակահարձակման
անցնող զորամասերին և գերի վերցրինք 18-րդ հետևակային դիվիզիայի մի
վաշտ: Բացի այդ, բրիգադի զորամասերը գրավեցին հակառակորդի իրերի
պահեստը և զանազան արհեստանոցներ:

Վաթսուներորդ մոտոհրաձգային բրիգադը մարտերով առաջ շարժվեց
հյուսիս-արևմտյան ուղղությամբ, գրավեց հակառակորդի մի շարք կարևոր
հենակետեր և ժամը 23-ին առաջավոր ջոկատներով դուրս եկավ Տինգուտից
դեպի արևելք, գերի վերցնելով 200 ֆաշիստ. իսկ ռազմավար՝ շատ զենք ու
հանդերձանք:

Տինգուտի շրջանում թշնամուն վերջնականապես ջախջախելու համար
կորպուսի հրամանատար, գեներալ Վ. Տ. Վոլսկին առանձնացրեց 60-րդ մո-
տոհրաձգային բրիգադը: Ես տանկով մեկնեցի Բեզիմյաննայա բարձունքը,
որը գտնվում է Տինգուտից դեպի հյուսիս-արևմուտք, որպեսզի անձամբ դի-

տեի և հետագա մարտական գործողությունների վերաբերյալ որոշում ընդունեի։ Այստեղ եկավ 51-րդ բանակի ռազմական խորհրդի անդամ գեներալ-մայոր Խալզևը, որը հարցրեց իմ վճռի մասին։ Արագ գնահատելով իրադրությունը, որոշեցի թշնամու վրա գրոհել ճակատից ու թևից, որի համար 2-րդ մոտոհրաձգային գումարտակին հրամայեցի շրջանցել հակառակորդին հարավ-արևմուտքից, 21-րդ տանկային գնդին՝ հարված հասցնել արևելքից, իսկ նրանց գործողություններն ապահովելու համար ողջ հրետանին առաջ շարժել դեպի Բեզիմյաննայա բարձունքը և մարտական պատրաստության մեջ լինել՝ իմ ազդանշանով կրակ բացելու համար։ 10 րոպեից հետո ազդանշան տրվեց։ Հրետանային երկու համազարկից և հետևազորի ու տանկերի միաժամանակյա գրոհից հետո հակառակորդը սպիտակ դրոշակներ կախեց և կրակը դադարեցվեց։

Մոտոհետևակազորի և տանկերի սրընթաց գրոհով ժամը 14-ին Տինգուտն ազատագրվեց։ Այդ մարտում լիովին գերի հանձնվեց հակառակորդի 2-րդ հետևակային դիվիզիայի մի գունդ՝ իր հրամանատարի հետ միասին։ Գրավվեց շատ ռազմամթերք, հանդերձանք ու պարենամթերք։ Տինգուտի շրջանում 60-րդ բրիգադի վճռական ու համարձակ գործողություններն ապահովեցին մեր բանակի հաջող հարձակումը Սովետսկիի ուղղությամբ։

Այդպիսով, կոտրելով գազազած թշնամու դիմադրությունը, մեր ռազմաճակատի զորքերը նոյեմբերի 23-ին դուրս եկան Մարինովկա և Սովետսկի բնակավայրերի սահմանագիծը, որտեղ, Կալաչի մոտ, միացան Դոնի ռազմաճակատի զորամասերին։ Գերմանա-ֆաշիստական զորքերը Ստալինգրադում շրջափակված մնացին սովետական զորքերի օղակում։ Նրանք բացարիկ ծանր վիճակում էին։ Նրանց սիստեմատիկորեն ռմբակոծում էր սովետական ավիացիան, գրոհում էր հետևազորը, գնդակոծում հրետանին։ Շուտով թշնամու բանակում սկսվեց սովը, ավելացավ մահացությունը։

Գերմանական բանակի գլխավոր շտաբը փորձում էր ավիացիայի օգնությամբ կարգավորել իր զորքերի մատակարարումը կամ թեկուզ էվակուացնել նրանց մի մասը. բայց մեր ավիացիան և զենիթային հրետանին ձախողեցին հիտլերականների պլանը։ Թշնամու դիմադրությունն ավելի ու ավելի անիմաստ էր դառնում, ուստի 1943 թվականի հունվարի 8-ին սովետական հրամանատարության ներկայացուցիչներն առաջարկեցին Պաուլյուսին՝ բոլոր շրջապատված զորքերով անձնատուր լինել։ Պաուլյուսը, ուլտիմատումը թաքցնելով երիտասարդ սպաներից և զինվորներից, չընդունեց այդ մարդասիրական առաջարկությունը։

Սովետական զորքերը ձեռնամուխ եղան հակառակորդի լիկվիդացմանը։ Խնդիրը հեշտ չէր։ Թշնամին դեռ ուներ բավականաչափ ուժեր. մոտ 250 հազար զինվոր ու սպա, 5 հազար հրանոթ ու ականանետ, մոտավորապես 300 տանկ։ Գերմանա-ֆաշիստական զորքերի լիկվիդացումը սովետական զինված ուժերի գլխավոր հրամանատարության ռազմակայանը հանձնարարեց Դոնի ռազմաճակատին (հրամանատար՝ գեներալ Կ. Կ. Ռոկոսովսկի, ռազմական խորհրդի անդամ՝ գեներալ Կ. Ֆ. Տելեգին, շտաբի պետ՝ գեներալ Մ. Ս. Մալինին)։ Ռազմաճակատը 1943 թ. հունվարի 1-ին ուներ 212 հազար մարդ, մոտ 6500 հրանոթ ու ականանետ, 254 տանկ և մոտավորապես 300 օդանավ։ Հետևապես, ուժերի ընդհանուր հարաբերակցությունը առավելություն չէր տալիս սովետական զորքերին։ Ձնայած դրան, սովետական հրամանատարությունը կարողացավ գլխավոր հարվածի ուղղությամբ թշնամու



դեմ ստեղծել գերազանցություն՝ հետևազորի գծով 3, տանկերի՝ 1,2, հրետանու՝ ավելի քան 10 անգամ։ 1943 թ. հունվարի 9-ին ճակատի ռազմական խորհուրդը հարձակման հրաման արձակեց։ Հաջորդ օրը հրետանային ու ավիացիոն հուժկու հարվածից հետո ռազմաճակատի զորքերը հարձակման անցան։ Երեքօրյա համառ մարտերի ընթացքում նրանք կոտրեցին թշնամու դիմադրությունը և նրան ետ շպրտեցին Ռոսոշկա ու Չերվլյոննայա գետերի այն կողմը, բայց այստեղ չկարողացան արշավով հաղթահարել պաշտպանության երկրորդ գիծը։ Որոշ վերախմբավորումից հետո ռազմաճակատի զորքերը հունվարի 15-ի առավոտից գրոհը վերսկսեցին։ Ճեղքելով հակառակորդի պաշտպանության երկրորդ գիծը, նրանք դուրս եկան Բոլշայա Ռոսոշկա—Գոնչարա—Վորոպանովո սահմանագիծը, որտեղ գերմանացիներն ուժեղ պաշտպանություն ունեին։ Պատրաստվեց թշնամու պաշտպանության ճեղքման պլանը։ Հունվարի 22-ի առավոտից հրետանային ու ավիացիոն նախապատրաստումից հետո, Դոնի ռազմաճակատի բանակները նորից հարձակման անցան։ Թշնամին չդիմացավ գրոհին և սկսեց ատրճանաբար նահանջել։ Հունվարի 25-ին 21-րդ բանակի զորքերը մտան Ստալինգրադ (արևմուտքից)։ Այդ նույն ժամանակ արևելքից գրոհը ուժեղացրեց 62-րդ բանակը։ Կոտրելով հակառակորդի համառ դիմադրությունը, երկու բանակները հունվարի 26-ի երեկոյան միացան Մամաև Կուրգանի շրջանում։ Դրա շնորհիվ ամբողջ շրջապատված խմբավորումը բաժանվեց երկու մասի՝ հարավային և հյուսիսային։

Հունվարի 31-ին գերմանական զորքերի հարավային խմբավորումը, 6-րդ բանակի հրամանատար Պաուլյուսի գլխավորությամբ, գերի հանձնվեց, փետրվարի 2-ին կապիտուլյացիայի ենթարկվեց նաև հյուսիսային խմբավորումը։ Մարտի դաշտից հավաքվեց ու թաղվեց թշնամու զինվորների ու սպաների 147200 դիակ։ Գերի վերցվեց 91 հազար մարդ, այդ թվում 2500-ից ավելի սպաներ և 24 գեներալ։ Գերիների մեջ կային շատ վիրավորներ ու հիվանդներ, որոնց սովետական բժիշկները սկսեցին բուժել։

Վոլգա և Դոն գետերի միջև հակառակորդի ստրատեգիական խմբավորման ոչնչացումով ավարտվեց երկրորդ համաշխարհային պատերազմի մեծագույն ճակատամարտը։ Հակառակորդի բոլոր կորուստները կազմում էին լրիվ 32 դիվիզիա և 3 բրիգադ, բացի դրանից, 16 դիվիզիա արյունաքամ էին արվել ու կորցրել մարտունակությունը։ Գերմանա-ֆաշիստական զորքերի ընդհանուր կորուստները 1942 թ. նոյեմբերի 19-ից մինչև 1943 թ. փետրվարի 2-ը կազմել են 800 հազարից ավելի մարդ, մոտ 3 հազար տանկ ու ինքնագնաց հրանոթ, 100 հազարից ավելի հրանոթ ու ականանետ, մինչև 3 հազար մարտական ու տրանսպորտային օդանավ և 70 հազարից ավելի ավտոմեքենա։

Կարմիր բանակը թշնամուն հասցրեց այնպիսի հարված, որը ցնցեց ֆաշիստական Գերմանիայի ամբողջ ռազմական մեքենան։ Վոլգայի ափին տեղի ունեցած ճակատամարտում Կարմիր բանակի հաղթանակը նշանավորեց պատերազմի ընթացքում արմատական բեկման սկիզբը՝ հօգուտ Սովետական Միության։

Ստալինգրադում թշնամու ջախջախումը երկրորդ համաշխարհային պատերազմի խոշորագույն ռազմա-քաղաքական իրադարձությունն է։ Մեծ ճակատամարտը, որն ավարտվեց թշնամու ընտիր խմբավորման շրջապատումով, ջախջախումով և գերումով, արմատական բեկման սկիզբ դրեց ինչպես

Հայրենական մեծ պատերազմի, այնպես էլ ամբողջ երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում: Կարմիր բանակը ցուցադրեց իր անպարտելի ուժը, գերազանցությունը գերմանա-ֆաշիստական ռազմական մեքենայի հանդեպ: Վոլգայի ափին ձեռք բերված հաղթանակը սովետական ռազմական արվեստի հաղթանակն էր: Սովետական զինված ուժերը կատարեցին մի օպերացիա, որն իր հետևանքներով ու արդյունքներով հավասարը չի ունեցել պատերազմների պատմության մեջ: Սովետական օպերատիվ արվեստը հարըստացավ հակառակորդին լիովին շրջապատելու և ոչնչացնելու կլասիկ փորձով: Հաղթանակի կարևոր գործոն հանդիսացավ ստրատեգիական ու օպերատիվ ռեզերվների հմուտ կուտակումը, բաշխումը և օգտագործումը:

Վոլգայի ափին տեղի ունեցած ճակատամարտում դրսևորվեց սովետական հրետանու հսկայական դերը որպես Կարմիր բանակի գլխավոր կրակային ու հարվածային ուժի: Հրետանին ավերեց հակառակորդի պաշտպանության բնագիծը, հարձակման ժամանակ անընդհատ կրակով ուղեկցում էր հետևազորին ու տանկերին:

Ցամաքային զորքերին բացառիկ մեծ օգնություն ցույց տվեց սովետական ավիացիան: Կարմիր բանակի ձմեռային հարձակման շրջանում ավիացիան կատարեց 110 հազար օդանավ-թռիչքներ և թշնամու վրա նետեց մինչև 75 հազար տոննա ռումբ: Դոնի և Վոլգայի միջև տեղի ունեցած հակահարձակմանը ակտիվ մասնակցեց նաև վոլգյան ռազմական նավատորմիղը:

Վոլգայի ափին տարած հաղթանակը ձեռք բերվեց սովետական հասարակական ու պետական կարգերի, ՍՍՀՄ ժողովուրդների ամուր բարեկամության, Կարմիր բանակի, տնտեսական հզոր բազայի գերազանցության, սովետական զորքերի անօրինակ տոկունության, նրանց ռազմական բարձր վարպետության շնորհիվ:

Կարմիր բանակի մեծ հաղթանակը բարձրացրեց սովետների երկրի միջազգային հեղինակությունը: Այդ հաղթանակը հսկայական ազդեցություն ունեցավ աշխարհի ժողովուրդների ազատագրական շարժման վրա: Վոլգայի ափին տարած հաղթանակը և դրան հաջորդած՝ Կարմիր բանակի հոյակապ հարձակումը առաջացրին Անգլիայի և ԱՄՆ-ի միլիոնավոր աշխատավորների խորին հարգանքի զգացմունքը սովետական ժողովրդի նկատմամբ:

Բուրժուական որոշ հեղինակներ ստիպված են խոստովանել, որ Վոլգայի ափին Կարմիր բանակի ձեռք բերված հաղթանակը շրջադարձային կետ էր երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում: Բայց նրանցից շատերը կեղծում են պատմությունը: Սակայն որքան էլ որ նրանք ջանան, չի հաջողվի նսեմացնել Կարմիր բանակի մեծ հաղթանակի նշանակությունը:

Կանցնեն դարեր, հազարամյակներ, բայց Վոլգայի ամրոցի խիզախ պաշտպանների, սոցիալիստական Հայրենիքի դյուցազունների անմար փառքը աշխարհի ժողովուրդների հիշողության մեջ հավերժ կապրի որպես պատերազմների պատմության մեջ չգերազանցված արիության ու հերոսության ամենավառ օրինակ:




## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԸ

ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 տարին» թեզիսներում նշված է, որ հենվելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ուսմունքի վրա, Լենինը մշակեց սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման տեսական ու գործնական կարևորագույն պրոբլեմները, որոնցից մեկն էլ համաժողովրդական վերահսկողության կազմակերպումն է: Բազմակողմանիորեն մշակելով հաշվառման ու վերահսկողության սկզբունքները, ձևերն ու մեթոդները, Լենինը չի անտեսել դրա և ո՛չ մի բնագավառ՝ սկսած բանվորականից մինչև պետական ու կուսակցական վերահսկողության այնպիսի ձևը ինչպիսին էր ԿՎՀ—ԲԳՏ-ն:



Սոցիալիստական վերահսկողության ձևավորումը մեր երկրում մի ակտով չի կատարվել, այն հնի վերացման և նոր, սոցիալիստական տիպի վերահսկողության ստեղծման բարդ և աստիճանական պրոցես է անցել: Սովետական իշխանության առաջին տարիներին, տնտեսության կառավարման փորձ ու հմտություն չունեցող պրոլետարիատի կառավարման առաջին քայլը եղավ բանվորական վերահսկողությունը: Սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո, դասակարգային սուր պայքարի պայմաններում, բանվորների հեղափոխական պրպտուն միտքը առաջադրեց պրակտիկ հաշվառման և վերահսկողության բազմաթիվ ձևեր ու եղանակներ: Բանվորական վերահսկողությունը պրոլետարիատին տնտեսություն ղեկավարելու արվեստն ուսուցանելու, ժողովրդի ծոցից կադրեր պատրաստելու գլխավոր ու միակ եղանակն էր Ռուսաստանում: Արտադրության և մթերքների բաշխման նկատմամբ սահմանված վերահսկողության գործում բանվորների լայն ընդգրկման մեջ է նոր կարգի տնտեսական կառավարման գըլխավոր կողմերից մեկը:

Վ. Ի. Լենինը բանվորական վերահսկողությունը դիտում էր որպես մասսաներին նոր հասարակարգի կառուցմանը նախապատրաստելու անխուսափելի ժամանակաշրջան, նրանց ինքնուրույն պատմական ստեղծագործության ու երկրի տնտեսական կյանքի ինքնուրույն կառավարմանն ացնելու ժամա-

նակաշրջան։ Սոցիալիզմի կառուցման փորձը մեր ինչպես և սոցիալիստական լագերի մյուս երկրներում, հաստատում է, որ պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակից հետո առաջին քայլը դեպի սոցիալիզմ բանվորական վերահսկողությունն է՝ անկախ սեփականատերերին սեփականազրկելու մեթոդներից ու պատմական կոնկրետ պայմաններից։

Բանվորական վերահսկողությունը, այսպիսով, տնտեսության կառավարման առաջին դպրոցն է, նրա օրգանները կարևոր դեր են խաղում պետական ու տնտեսական հիմնարկների կառուցման, պետական վերահսկողության օրգանների ստեղծման գործում։ Այդ նշանակում էր, որ սոցիալիզմի հաջող կառուցման համար անհրաժեշտ էր համաժողովրդական վերահսկողություն կազմակերպել ոչ միայն ֆաբրիկաներում ու գործարաններում, այլև համապետական մասշտաբով։ Սովետական առաջին հիմնարկներում և տնտեսական օրգաններում, Լենինի խոսքերով, վերահսկողությունը գտնվում էր դեռևս լինելիության, խմորման և անորոշության շրջանում, այդ գործում դեռևս գերակշռում էին բանավեճերն ու միտինգները։ Ընդսմին, Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծում էր, որ մեր աշխատանքը համաժողովրդական վերահսկողության կազմակերպման գործում խիստ ետ է մնում անմիջական տնտեսական շինարարության խնդիրներից։

Երբ 1917 թվականի դեկտեմբերին ծնվեցին պետական վերահսկողության առաջին օրգանները, Լենինը հիշեցնում էր, որ վերաքննումը, տեսչական քննումը և վերահսկողությունը կարելի է իրականացնել միայն բանվո- բանվորական, պետական վերահսկողության, ԲԳՏ-ի ժողկոմատի գործունեության բարելավման, ինչպես նաև բանգյուղտեսչության վերակառուցման նախագծերում ու առաջարկություններում կարմիր թելի նման անցնում է վե- վերահսկողության մասսայական, համաժողովրդական բնույթի գաղափարը։ Վերահսկողության օրգանների գործունեությանը աշխատավոր զանգվածներին մասնակից դարձնելու խնդրին՝ որպես սոցիալիստական վերահսկողության պարտադիր պայմանի անհրաժեշտության, Լենինն անդրադարձել է 1919 թվականի մարտին, ՌԿ(բ)Կ VIII համագումարում՝ Կենտկոմի հաշվետվության և կուսակցության ծրագրի վերաբերյալ զեկուցումներում։ Այդ ժամանակ զուգահեռաբար գոյություն ունեին պետական վերահսկողության օրգանները և բանվորական վերահսկողության տեսչությունը։ Հարկավոր էր դրանք ձուլել մի ընդհանուր պետական վերահսկողության մեջ, այնպես, որ ապահովվեր նաև աշխատավորների մասնակցությունը դրան, իսկ պետական վերահսկողությունը ձևականից վերածվեր ժողովրդական սոցիալիստական վերահսկողության օրգանի։ Լենինը պահանջում էր՝ ամեն կերպ զարգացնել, ուժեղացնել, ընդլայնել բանվորական և գյուղացիական տեսչությունը, ամբողջ աշխատանքն ուղղել դրա լիովին բանվորացմանը (և գյուղացիացմանը) (Полное соб. соч. т. 40, стр. 64)։

1920 թվականի փետրվարի 7-ին պետվերահսկողության ժողկոմատը վերակառուցվեց բանվորա-գյուղացիական տեսչության (ԲԳՏ) ժողովրդական կոմիսարիատի։ Համամիութենական կենտգործկոմի «Բանգյուղտեսչության մասին» դեկրետում ասված էր, որ իր ողջ գործունեությամբ այն պետք է հենվի բանվորա-գյուղացիական լայն զանգվածների վրա, այնպես, որ նրանց նախապատրաստի, սովորեցնի պետական ապարատի կառավարումը։ Այս-



պիսով, համաժողովրդական սոցիալիստական վերահսկողությանը աշխատավորների լայն մասնակցության մասին լենինյան սկզբունքն իրականացավ բանգյուղտեսչության ստեղծումով։ Հետագայում էլ (պետական վերահսկողության կազմակերպական ձևերի բոլոր փոփոխությունների ժամանակ) անխախտ մնաց մասսաների վրա հենվելու լենինյան հիմնական սկզբունքը։

Համնելով վերահսկողության մասսայականության կուսակցությունը ԲԳՏ-ի օրգաններին և նրանց աշխատակիցներին կոչ էր անում՝ լինել, ամենից առաջ, վերահսկողության գործում ընդգրկված բանվորների ու գյուղացիների կազմակերպիչներ։ Մթերքների, վառելիքի բաշխումը, ճաշարանների աշխատանքը վերահսկել, ընդգծում էր Վ. Ի. Լենինը, կարող է ամեն մի ազնիվ, բանիմաց բանվոր ու գյուղացի, այնտեղ կարելի է ընդգրկել անկուսակցական շարքային բանվորների և գյուղացիների, ընդ որում, ամենաերկչոտներին, չզարգացածներին, ամենավախկոտներին։ Նրանք սկսելով հասարակ գբաղմունքից, աստիճանաբար կարող են անցնել կարևոր և պատասխանատու հանձնարարության կատարման։ Եվ արդեն 1920—1921 թթ. ընթացքում ԲԳՏ-ի ժողկոմատը կարողացավ իր գործունեության ոլորտում ընդգրկել մոտ 200 հազար բանվոր ու գյուղացի, ինչպես և ձեռնարկություններում ստեղծված ԲԳՏ-ին աջակցող բջիջների ավելի քան 100 հազար անդամ։

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ վերահսկողությունն ինքնանպատակ չէ, այլ թերությունները վերացնելու, գործերի վիճակը բարելավելու, ժողովրդական տնտեսության ղեկավարումը կատարելագործելու միջոց։ Նա ցանկանում էր, ի դեմս վերահսկողության օրգանների աշխատակիցների, տեսնել ո՛չ թե թերությունները անտարբեր արձանագրողների, այլ նկատված սխալներն ու բացերը ուղղող, անխոնջ կազմակերպիչների։ Նրա կարծիքով վերահսկողությունը միայն այն ժամանակ է արդարացնում իր կոչումը, երբ դառնում է գործուն, արդյունավետ, արգասավոր և օգնում կուսակցությանը՝ բարելավելու իրավիճակը պետական ու տնտեսական շինարարության այս կամ այն տեղամասում։ Բանգյուղտեսչության գլխավոր խնդիրը, ըստ Լենինի, ո՛չ այնքան հանցագործությունների մերկացումն է, որքան դրանք ժամանակին և հմտորեն ուղղելը, կանխելը։ Իսկ ուղղել կարողանալու համար հարկավոր է նախ՝ ուսումնասիրել և ուսումնասիրել գործի վարումը այս կամ այն հիմնարկում, ձեռնարկությունում, բաժնում և այլն, երկրորդ, ժամանակին կատարել անհրաժեշտ գործնական փոփոխությունները։

Լենինյան այս դրույթով է (այսինքն՝ վերահսկողության օրգանների գործունեության մեջ գլխավորը ոչ թե «որսալն» է, այլ ուղղելու կարողությունը, ժամանակին սխալներն ու թերությունները կանխելը) պայմանավորված ո՛չ միայն վերահսկողության սկզբունքը, այլև նրա հրապարակայնությունը։ Բացի այդ, սոցիալիստական դեմոկրատիայի պայմաններում վերահսկողության օրգանների բեղմնավոր աշխատանքը անխզելիորեն կախված է ինչպես վերահսկողությանը մասսաների լայն մասնակցությունից, այնպես էլ թերությունները վերացնելու նրանց կարողությունից։

Լենինը մեծ նշանակություն էր տալիս վերահսկողության հրապարակայնությանը։ Նա գտնում էր, որ պետական և վերահսկողության օրգանների գործունեությանը պետք է տեղյակ լինեն մասսաները, այն պետք է դառնա հրապարակային։

Արդի պայմաններում հրապարակայնության իրականացման ձևերը դարձել են ավելի բազմազան։ Դրանք կարելի է իրականացնել աշխատավորների

ժողովների, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության և բազմաթիվ այլ միջոցներով։

Լենինը մեծ նշանակություն էր տալիս նաև վերահսկողության հարատևության ու սիստեմատիկության։ 1921 թվականին «Բանգյուղտեսչության խնդիրների, դրանց ըմբռնման և կատարման հարցերի շուրջը» նամակում քննադատելով բանգյուղտեսչության աշխատանքի կազմակերպումը, հաշվետվության դրվածքի օրինակով նա ցույց տվեց, թե ինչպես պետք է գործնականում իրագործել սիստեմատիկ վերահսկողությունը։

Վերահսկողության հարատևությունն ու սիստեմատիկությունը, ըստ Լենինի, պետք է ուղեկցվի նրա համընդհանուր բնույթով։ Դա նշանակում է, որ վերահսկողությունը պետք է ընդգրկի ո՛չ թե առանձին, երկրորդական տեղամասերը, այլ բոլոր ոլորտները՝ արտադրությունը, կառավարումը, կուլտուրան և կենցաղը։ Միայն այդ դեպքում «համակողմանի, համընդհանուր, ունիվերսալ» (տե՛ս Վ. Ի. Լենին. Երկեր, հ. 26, էջ 499) վերահսկողությունը կօժանդակի բոլոր աշխատանքների կատարելագործմանը և «այն ժամանակ ոչ մի կերպ հնարավոր չի լինի նրանից խուսափել, թաքնվելու տեղ չի լինի» (տես Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 25, էջ 617)։

Վերահսկողության համապարփակ և ունիվերսալ բնույթը չի նշանակում ընկնել մանրուքների ետևից։ Մի ժամանակ ԲԳՏ-ի ժողկոմատը փորձում էր իրականացնել բոլոր պետական օրգանների ֆինանսական գործունեության վերահսկողությունը։ Այդպիսի վերահսկողությունը ծայրահեղ ոչօպերատիվ էր և երբեմն վեր էր ածվում մեղավորներ «որսալու» միջոցի, բաց թողնելով գլխավորը՝ սխալների վերացումը։ Ուստի առաջ քաշվեց վերահսկողության օրգանների հետագա կատարելագործման ու վերակառուցման հարցը, որի պլանը մշակեց Լենինն իր Ինչպես վերակառուցել բանգյուղտեսչությունը և Լավ է քիչ, բայց լավ հայտնի աշխատություններում։

Բանգյուղտեսչության վերակառուցման լենինյան պլանի հիմնական գաղափարը պետական ու կուսակցական վերահսկողության միացումն էր բանվորա-գյուղացիական տեսչության ժողկոմատի և ՌԿ(բ)Կ Կենտրոնական վերահսկողության հանձնաժողովի միավորման միջոցով։ Առաջարկելով բանգյուղտեսչության ժողկոմատը միավորել կուսակցական վերահսկողության ղեկավար օրգանի հետ, Լենինը ելնում էր ամենից առաջ ԲԳՏ-ի հեղինակության բարձրացման, կուսակցական ղեկավարության ուժեղացման, ինչպես նաև միավորված օրգանը բանվորական ու գյուղացիական մասսաների հետ կապելու անհրաժեշտությունից։

Հավանություն տալով ԲԳՏ-ի վերակառուցման լենինյան պլանին, ՌԿ(բ)Կ XII համագումարում միաձայն ընդունվեց «ԲԳՏ-ի և ԿՎՀ-ի խնդիրների մասին և «Կազմակերպական հարցի վերաբերյալ» բանաձևերը։ Այդ երկու փաստաթղթերում նախանշվեցին կուսակցական-պետական միացյալ վերահսկողության մոտակա հեռանկարային խնդիրները։ Կուսակցական ու պետական վերահսկողության միասնության սկզբունքը սոցիալիզմի կառուցման ժամանակաշրջանում դարձավ սոցիալիստական վերահսկողության հաջող գործունեության անկյունաքարը։

Այսպիսով, ամփոփելով սովետական ու կուսակցական օրգանների աշխատանքի փորձը՝ սովետական իշխանության առաջին հինգ տարում, կանգնելով երկրի ներքին ու արտաքին դրության գիտական վերլուծման վրա,



Լենինը բազմակողմանի մշակեց սոցիալիստական վերահսկողության կազմակերպման սկզբունքները։

Հենվելով Լենինի պատգամների ու ցուցումների վրա, 1923—1934 թթ. ԿՎՀ—ԲԳՏ-ն և նրա տեղական օրգանները մեծ աշխատանք կատարեցին պետական ապարատի ռացիոնալիզացման, ժողկոմատներում և մյուս կենտրոնական օրգաններում հաստիքների կրճատման գործում, հսկայական հաջողությունների հասան սոցիալիստական շինարարության բոլոր տեղամասերի թերությունների վերացման բնագավառում։ ԲԳՏ-ն երբեք չէր կարող լուծել այն վիթխարի պրոբլեմները, որոնք դրվում էին իր իսկ նախաձեռնությամբ, եթե գործեր միայն իր ապարատով, եթե չհենվեր անընդհատ ընդլայնվող ակտիվի վրա (XVI съезд ВКП(б), Стенографический отчет, М., 1930 г., стр. 329)։ Բանվորները վերահսկողության օրգանների աշխատանքին մասնակցել են նրա բոլոր փուլերում, ընդհուպ մինչև եզրակացությունների քննարկումը։

Ե. Մ. Յարոսլավսկին հանրագումարի բերելով ԿՎՀ—ԲԳՏ-ի գոյության 10 տարվա արդյունքները և ցույց տալով նրա մեծ ծառայությունները, նշեց, որ հենց այդ մասսայական աշխատանքը, մասսաների օգնությունը դարձան մեր աշխատանքի հաջողության հիմնական աղբյուրը (Е. М. Ярославский, Десять лет на боевом посту: Տե՛ս «За проверку темпов, качества», 1933 г., № 7—8, стр. 5)։

Վերահսկողության օրգանների գործունեությունը կառուցված էր հրապարակայնության սկզբունքի վրա։ «Правда»-ն «Комсомольская правда»-ն և այլ թերթեր, «Բանվորա-գյուղացիական տեսչության թերթիկները» հանդիսացան թերությունների վերացման, բյուրոկրատիզմի, նրա կոնկրետ կրողների դեմ պայքարի կարևորագույն միջոց։ Թերթիկների ամուր հենարանը բանգյուղթղթակիցներն էին։ Թերթիկներում զետեղվում էին ո՛չ միայն քննադատական նյութեր, այլև պրոպագանդվում էր առաջավոր փորձը։

ԿՎՀ—ԲԳՏ-ի աշխատանքը պետական ու տնտեսական ապարատի ռացիոնալիզացիայի բնագավառում նշանակալից էր ո՛չ միայն նրա համար, որ այն տնտեսեց միլիոններ ու միլիարդներ, այլև ապարատի գործունեության էական բարելավմամբ, նրա աշխատանքում բանվորների ու գյուղացիների լայն զանգվածների ընդգրկմամբ, պետական կառավարմանը բանվորների անմիջական մասնակցությամբ։

Այսպիսով, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում ԿՎՀ—ԲԳՏ-ն, կենսագործելով սոցիալիստական վերահսկողության կազմակերպման լենինյան սկզբունքները, դարձավ ինչպես պետական ապարատը բարելավելու գործիք, այնպես էլ աշխատավորների ուսուցման, նրանց պետական կառավարման մեջ ներգրավելու դպրոց։

Վերահսկողության լենինյան սկզբունքներն անցողիկ չեն։ Ելնելով սոցիալիստական շինարարության յուրաքանչյուր պատմական ժամանակաշրջանի խնդիրներից, մեր երկրում վերահսկողության օրգանների աշխատանքը փոփոխվել է, ճշտվել, սահմանվել են դրանց գործունեության նոր, գլխավոր ուղղություններ, բայց վերահսկողության լենինյան սկզբունքները մնացել են անփոփոխ։ Այդ սկզբունքներն իրենց լիակատար արտահայտությունը գտան վերահսկողության օրգանների գործունեության մեջ, օրգաններ, որոնք ստեղծվեցին ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1962 թ.) պլենումից հետո։

Կուսակցական-պետական վերահսկողության բազմակողմանի գործունեությունը մի քանի խոսքով բնութագրելու համար բավական է նշել, որ նրանց կազմակերպած յուրաքանչյուր մասսայական ստուգման, հասարակական ստուգատեսի, ստուգայցերի մասնակցել են տասնյակ հազարավոր վերահսկիչներ։ Նրանք սիստեմատիկաբար ստուգել են կուսակցության ու կառավարության դիրեկտիվների կատարման ընթացքը երկրի էկոնոմիկայի բոլոր բնագավառներում, աշխատավորների կենցաղային սպասարկման ոլորտում, գիտության, կուլտուրայի և կառավարման գործում։ Կուսակցական-պետական վերահսկողության նոր սիստեմը գործնականում ապացուցեց վերահսկողության լենինյան սկզբունքների ուժը, կենսունակությունն ու վիթխարի նշանակությունը։

Սակայն, ինչպես նշեց ՍՄԿԿ ԿԿ դեկտեմբերյան (1965 թ.) պլենումը, կուսակցական-պետական վերահսկողություն անվանումը անբավարար էր արտահայտում այն փաստը, որ վերահսկողությունը մեր երկրում ժողովրդական է։ Վերահսկողության օրգանները, որպես մասսաներին պետական կառավարում ուսուցանելու դպրոց, պետք է աշխատավորներին է՛լ ավելի լայնորեն, վերջին հաշվով, բոլորին մասնակից դարձնեն հասարակության գործերի կառավարմանը։ Աշխատավոր ողջ մասսային՝ և՛ տղամարդկանց, և՛ հատկապես կանանց մասնակից անեն բանգյուղտեսչությանը (տե՛ս В. И. Ленин, Полное соб. соч. т. 40, стр. 65)։

Հաշվի առնելով այդ հանգամանքը, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1965 թ.) պլենումը անհրաժեշտ գտավ կուսակցական-պետական վերահսկողության սիստեմը վերակառուցել ժողովրդական վերահսկողության սիստեմի։ Կոմունիստական շինարարության ներկա ժամանակաընթացքում այդպիսի վերակառուցումը առավել ճիշտ է բնութագրում սոցիալիստական վերահսկողությունը։ Այն սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման նպատակ է հետապնդում և հանդիսանում նոր, լուրջ քայլ այդ ուղղությամբ։ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1965 թ.) պլենումից հետո ժողովրդական վերահսկողության օրգանները դարձել են ավելի ներկայացուցչական, նրանց գործունեությանը մասնակցում են ժողովրդի լայն զանգվածները։ Եթե 1964 թվականին երկրի ձեռնարկություններում ու կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, հիմնարկություններում ու բուհերում, տնային կառավարչություններին առընթեր ստեղծված էին 770 հազար խումբ և աջակցող պոստ, ուր ընդգրկված էին աշխատավորների 4,3 միլիոն ներկայացուցիչ, ապա 1967 թվականի հուլիսի տվյալներով երկրում գործում են ժողովրդական վերահսկողության 899.906 խումբ ու պոստ, ուր ընդգրկված են 6.144.120 մարդ (տե՛ս «Политическое самообразование», № 9, 1967, էջ 54)։ Հայկական ՍՍՀ-ում 8.360 խմբերում ու պոստերում ընդգրկված են մոտ 60 հազար ակտիվիստ։ 1965 թվականի հունվարի համեմատությամբ հանրապետության վերահսկողության ակտիվիստների թիվը աճել է 16.751 հոգով։

Եթե նկատի ունենանք, որ վերահսկողությանը ակտիվ մասնակցում են նաև սովետների դեպուտատները, մշտական հանձնաժողովները, արհմիությունների հասարակական վերահսկիչները, կոմերիտական լուսարձակները, կոոպերացիայի վերստուգիչ հանձնաժողովների անդամները, ինչպես նաև տարբեր հասարակական տեսչություններում աշխատող մարդիկ, ապա, պարզ



կդառնա, թե ինչքան մեծ է կուսակցության օգնականների բանակը սոցիալիստական պետության մեջ, ինչպիսի ուժ է համաժողովրդական վերահսկողությունը։

Ժողովրդական վերահսկողության օրգանները դառնում են աշխատավորներին վերահսկողությանը մասնակից դարձնելու իսկական մասսայական, համապարփակ օրգաններ, հզոր միջոց սոցիալիստական շինարարության բոլոր տեղամասերի գործերի բարելավման համար։ Իրոք, չկա գործունեության այնպիսի ոլորտ, որտեղ սովետական մարդիկ չզգան ժողովրդական վերահսկիչների ազդեցությունը։ Ժողովրդական վերահսկողության օրգանները իրենց հիմնական ուշադրությունը նվիրում են արտադրության հարցերին։

Տնտեսման ու խնայողության համար մղվող պայքարում, հաճախ, վերահսկողության օրգանները կազմակերպում են մասսայական հասարակական ստուգատեսներ։ Այսպես, վերջին երկու տարվա ընթացքում էլեկտրաէներգիայի տնտեսման և խնայողության համար կազմակերպված արշավին մասնակցել է ավելի քան մեկուկես միլիոն մարդ։ Ստուգատեսի արդյունքները բավարար են։ 1966 թվականին և 1967 թվականի կեսին հաջողվել է տնտեսել 13 միլիարդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա (տե՛ս «Политическое самообразование», № 8, 1967, էջ 54)։

Խնայողական արշավին ակտիվորեն մասնակցել են նաև Հայաստանի ժողովրդական վերահսկողության օրգանները։ 1966 թվականի չորրորդ եռամսյակում, Երևանում, Լենինականում, Կիրովականում և Իջևանի շրջանում կազմակերպվել էին 1147 ստուգատեսային հանձնաժողով, ուր ընդգրկված էին կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ու ժողովրդական վերահսկողության օրգանների մոտ 9 հազար ներկայացուցիչ։ 1967 թվականի սկզբին այդ նախաձեռնությանն արձագանքեցին նաև հանրապետության մյուս ժողովրդական վերահսկողության կոմիտեներն ու խմբերը։ Ստեղծվեցին 2600 ստուգատեսային հանձնաժողով, որոնց գործունեությանը մասնակցել են 18 հազար մարդ։ Ընդհանուր առմամբ, ստուգատեսում ընդգրկվեց մոտ 80 հազար մարդ։ Ստուգատեսի ընթացքում ստացվեց 9257 առաջարկություն, որոնցից 5482-ը Երևանի ձեռնարկություններից։ Դրանք ուղղված էին նյութական ռեսուրսների ու դրամական միջոցների է՛լ ավելի արդյունավետ օգտագործմանը։ Առաջարկություններից 5856-ը ներդրվել է արտադրության մեջ, որոնցից 7 միլիոնի տնտեսական օգուտ է ստացվում։

Ժողովրդական վերահսկողության օրգանները մեծ ուշադրություն են նվիրում նաև կենցաղային հարցերին, հասարակական սննդի հետագա զարգացմանն ու բարելավմանը, ճաշերի և առհասարակ ժողովրդական սպառման առարկաների որակի բարձրացմանը։ Ժողովրդական վերահսկողության օրգաններն իրենց աշխատանքը կառուցում են լայն հրապարակայնության հիման վրա։ Կոմիտեների ստուգման և ընդունած որոշումների արդյունքները հասցվում են բանվորների, կոլտնտեսականների ու ծառայողների կոլեկտիվներին։ Այդ նպատակով լայնորեն օգտագործվում են մամուլը, ռադիոն, կինոն, հեռուստատեսությունը։ Դրանով իսկ ստեղծվում է հասարակական անհանդուրժողականության մթնոլորտ կարգուկանոնը խախտողների, անտնտեսվարների, շռայլումներ կատարողների նկատմամբ։ Ժողովրդական վերահսկողությունը օգնում է երկրի տնտեսության տարբեր բնագավառներում հայտաբերելու նոր ռեզերվներ ու դրանք ծառայեցնելու կոմունիզմի

կառուցմանը։ Այն բարձրացնում է ղեկավարների պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, նպաստում քննադատության և ինքնաքննադատության ծավալմանը, մարդկանց դաստիարակում կոլեկտիվիզմի ու մեր շարժմանը խանգարող երևույթների նկատմամբ անհաշտության ոգով, դրանով իսկ դառնում մասսաների կոմունիստական դաստիարակության դպրոց։ Ի դեմս ժողովրդական վերահսկողության օրգանների ու նրանց բազմանդամ ակտիվի, կուսակցությունն ունի մասսաների հետ կապի հետագա ամրապնդման ու ընդլայնման, նրանց աշխատանքային փորձն ուսումնասիրելու և աշխատավորներին կոմունիզմի կառուցմանը ակտիվորեն մասնակից դարձնելու հզոր միջոց։

Իհարկե, այդ ասպարեզում թերություններ էլ կան։ Ժողովրդական վերահսկիչները դեռևս անբավարար գործունեություն են ծավալում սխալների բացահայտման ու պետական կարգապահության խախտման երևույթների դեմ պայքարելու ուղղությամբ։ Վերահսկողության որոշ օրգաններ, զբաղվելով ստուգումներով ու հետաքննությամբ, տարվելով գործի քանակական կողմով, անհրաժեշտ հաստատակամություն հանդես չեն բերում բացահայտված թերությունները վերացնելու, սկսած գործը մինչև վերջ հասցնելու բնագավառում։ Սակայն այս թերությունները ստվեր չեն գցում այդ օրգանների գործունեության վրա. սրանք, իրոք, նպաստում են կուսակցության ու կառավարության դիրեկտիվների հաջող կենսագործմանը, կոմունիզմի կառուցման բոլոր արմատական հարցերի լուծմանը։ Ժողովրդական վերահսկողության կոմիտեները, խմբերն ու պոստերը իրենց կազմակերպչական աշխատանքի շնորհիվ արժանի ավանդ են ներդնում կոմունիստական շինարարության բնագավառում։

ԴԱՎԹՅԱՆ Գ. Գ.



# ԿՈՒՍԿՈՄԻՏԵՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԱՎԱՆԳԱՐԴԱՅԻՆ ԴԵՐԸ

1967 թվականը պատմության մեջ մտավ որպես հոբելյանական տարի։ Սոցիալիստական պետության կեսդարյա տարելիցի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ արժանի տեղ գրավեց նաև Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատի կոլեկտիվը, որը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, ՍՍՀՄ Գերագույն Սովետի, Մինիստրների սովետի և ՀամԿԽ-ի որոշմամբ պարգևատրվեց հոբելյանի կապակցությամբ սահմանված հուշադրոշով։ Քաջարանի լեռնագործները կուսակցության և կառավարության մեծ վստահությանը պատասխանեցին շնորհալի գործերով։ Կոմբինատի կոլեկտիվը անցյալ տարվա համախառն արտադրանքի, ինչպես նաև ապրանքային արտադրության պլանները կատարեց 101,3 տոկոսով։ Զգալիորեն իջեցվեց արտադրանքի ինքնարժեքը և համապատասխանաբար բարձրացավ արտադրության բոլոր ճյուղերի շահութաբերությունը։

Մեր խնդիրն է, սակայն, այս հոդվածում ցույց տալ ոչ միայն ձեռք բերված հաջողությունները, այլև պատմել դրանց նվաճման ուղիների ու միջոցների մասին։

Պլանների հաջող կատարումը ամենից առաջ պայմանավորված է արտադրության առաջավորների անձնվեր աշխատանքով, որոնց ճնշող մեծամասնությունը կոմունիստներ են։ Նրանք կատարելով արտադրական ավելի քան 1,5 նորմա, իրենց հետևից տանում են ամբողջ կոլեկտիվին։ Այդպիսի կոմունիստներից են էքսկավատորավարներ Ա. Պետրոսյանը, Ա. Առաքելյանը, Շ. Հայրապետյանը, պայթեցնող Ա. Մուրադովը, տեխնոլոգիական տրանսպորտի մեքենավար Դ. Ավետիսյանը, ֆլոտատորներ Մ. Միրզոյանը, Լ. Ղազարյանը և շատ ուրիշներ։

ՍՄԿԿ կանոնադրությունը բոլոր կոմունիստներից պահանջում է պայքարել կուսակցության և կառավարության որոշումների կենսագործման համար, ակտիվորեն կատարել իր անմիջական պարտականությունները։ Կոմբինատի կուսկոմիտեն ձգտում է բոլոր կոմունիստներին, այդ թվում նաև տնտեսական և ինժեներա-տեխնիկական ղեկավար աշխատողներին դաստիարակել հենց այդ ոգով, նրանց հաղորդակից դարձնելով կուսակցական կյանքին։ Կոմբինատում շատ կոմունիստներ գլխավորելով այս կամ այն

տեղամասի աշխատանքը, ազնիվ վերաբերմունք են ցուցաբերում իրենց հանձնարարված գործի նկատմամբ և դրանով իսկ մեծ հեղինակություն վայելում կոլեկտիվում, օրինակ ծառայում մյուսներին։ Այդպիսիներից է կոմբինատի գլխավոր ինժեներ Մ. Բաղլաւխովը, որը մեր լավագույն պրոպագանդիստներից է. նա ղեկավարում է մարքսիզմ-լենինիզմի տեսության ինքնուրույն ուսումնասիրողների սեմինարը և կատարում կուսակցական այլ հանձնարարություններ։

Կոմբինատի դիրեկտոր Ց. Պետրոսյանը, դիրեկտորի տեղակալներ Հ. Պողոսյանը և Ա. Անդրեասյանը նույնպես ակտիվ կերպով մասնակցում են կուսկազմակերպության աշխատանքին։ Նրանք կուսկոմիտեի դասախոսական խմբի անդամներ են, աշխատավորների առաջ հանդես են գալիս քաղաքական զեկուցումներով ու զրույցներով։

Ընդօրինակելով կոմբինատի ղեկավարներին, լեռնային արտադրամասի գլխավոր ինժեներ Բ. Մկրտչյանը, հարստացուցիչ ֆաբրիկայի չորացման ցեխի պետ Մ. Շահինյանը, ներքին ավտոպարկի պետ Վ. Ալեքսանյանը, ճոպանուղու պետ Ա. Պետրոսյանը և ուրիշ շատ ղեկավար ընկերներ ակտիվ մասնակցում են լեռնագործների շրջանում քաղաքական ագիտացիայի կազմակերպմանը, անձամբ զբաղվում իրենց վստահված կոլեկտիվների քաղաքական դաստիարակությամբ։

Փորձը ցույց է տալիս, որ արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերն ապահովվում է այն դեպքում, երբ կուսկազմակերպությունում լավ է դաստիարակչական և կազմակերպական աշխատանքը, կանոնավոր հրավիրվում են կուսակցական ժողովներ, սիստեմատիկաբար անցկացվում են որոշումների կատարման ստուգումներ, երբ մարդիկ հասարակական ակտիվ աշխատանքի պրոցեսում քաղաքականապես աճում և հասունանում են։

Հաշվի առնելով այս ամենը, կուսկոմիտեն և արտադրամասերի կազմակերպությունները, կուսակցության անդամներին և թեկնածուներին ավելի ու ավելի են ներգրավում կուսակցական-կազմակերպական և պրոպագանդիստական աշխատանքի մեջ, մոբիլիզացնում նրանց ուժերը պետական պլանների կատարման, աշխատավորների մեջ քաղաքական-դաստիարակչական լայն աշխատանք ծավալելու համար։

Անցյալ տարվա սկզբներին մենք ձեռնարկության առանձին տեղամասերում թուլացրել էինք կուսակցական-կազմակերպական աշխատանքը։ Դա բացասաբար անդրադարձավ տնտեսական գործերի վրա։ Կոմբինատը հունվար ամսի համախառն արտադրանքի պլանը կատարեց 92,1 և փետրվարին՝ 81 տոկոսով։ Կուսկոմիտեն և դիրեկցիան հանգամանորեն ուսումնասիրեցին ստեղծված դրության պատճառները։ Ստուգման արդյունքները քննարկեցինք կուսկոմիտեի ընդլայնված նիստում։ Պարզվեց, որ թուլացել է մարդկանց հետ տարվող դաստիարակչական աշխատանքը, շատացել են կարգապահության խախտումները, լեռնային աշխատանքները կատարվում են գրեթե առանց գրաֆիկի, ինժեներա-տեխնիկական առանձին աշխատողներ վատ են կատարում իրենց պարտականությունները, խոր չեն թափանցում արտադրական պրոցեսների մեջ և այլն։

Կոմբինատի դիրեկցիան կուսկոմիտեի որոշման հիման վրա կազմեց լեռնային աշխատանքների նոր գրաֆիկ և բոլոր արտադրամասերն սկսեցին աշխատել դրանով։ Կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունները քաղաքական-մասսայական լայն աշխատանք ծավալեցին լեռնագործների մեջ, ընդսմին լուրջ ուշադրություն նվիրվեց աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցերին։



Այս միջոցառումները թեպետ նպաստեցին լեռնային արտադրամասի և ճոպանուղու գործերի որոշ բարելավմանը, սակայն կոմբինատի ամբողջ գործունեությունը արմատապես չբարելավվեց։ Հարցի հետագա ուսումնասիրությունը ցույց տվեց, որ հարստացուցիչ ֆաբրիկան չի հասցնում վերամշակել արտադրական հանքաքարը։ Ուստի կուսկոմիտեի հերթական նիստում լսվեց հարստացուցիչ ֆաբրիկայի պետի զեկուցումը՝ տեխնոլոգիական աշխատանքների վիճակի մասին։ Կուսկոմիտեի առաջարկությամբ ֆաբրիկայում սահմանվեց ինժեներա-տեխնիկական աշխատողների հերթապահություն։ Հերթապահի տված տեղեկությունների հիման վրա դիրեկցիան լուրջ միջոցառումներ ձեռնարկեց սպասարկող և օժանդակ արտադրամասերի աշխատանքներում տեղ գտած թերությունները վերացնելու, ֆաբրիկայի մեքենաների ու սարքավորումների անխափան աշխատանքն ապահովելու համար։ Ձեռնարկված այդ կազմակերպական միջոցառմանը զուգընթաց ուժեղացվեց քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։ Լույս ընծայվեցին կայծակ թերթիկներ, երգիծական թերթեր, անցկացվեցին աշխատանքի մեծարման և ժողովուրդների բարեկամության երեկոներ և այլ միջոցառումներ։ Այս ամենը ավելի ևս առարկայական դարձրեց սոցիալիստական մրցությունը, ոգևորեց և քաջալերեց աշխատողներին։

Գործին օգնեց նաև կուսժողովում «Կուսակցական ու աշխատանքային կարգապահության վիճակի և հոբելյանական տարվա պարտավորությունների մասին» հարցի քննարկումը։ Այդ ժողովը, որին մասնակցում էին մոտ 400 կոմունիստ, անցավ բարձր մակարդակով։ Ելույթ ունեցողները բացահայտելով թերությունները, հանգում էին ընդհանուր եզրակացության՝ անհրաժեշտ է ապահովել բոլոր կոմունիստների կողմից կանոնադրական պահանջների կատարումը, բարձրացնել աշխատանքային կարգապահությունը։

Շուտով կուսժողովի որոշումները պարզաբանվեցին կոլեկտիվի անդամներին։ Արտադրամասերում և հերթափոխություններում կազմակերպվեցին զրույցներ, յուրաքանչյուր բանվորի հայտնի դարձան իր հերթական անելիքները, այն բնագծերը, որ պետք է նա գրավեր առաջիկա ամիսներում։ Սահմանված նոր կարգի համաձայն արտադրամասերում ու հերթափոխություններում բանվորներին միշտ իրազեկ են դարձնում ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքի մասին։ Դա արվում էր ամեն օր՝ աշխատանքի վերջում։ Այս ամենը աշխատանքային վերելք ստեղծեց։ Էքսկավատորավարներ Վ. Արզումանյանը, Պ. Դավթյանը, Ս. Հարությունյանը, տեխնոլոգիական տրանսպորտի ավտովարորդներ Վ. Հակոբյանը, Ա. Սլավեցկին, փականագործ Ս. Մարտիրոսյանը և շատ ուրիշներ, հետևելով կոմունիստների անձնական օրինակին, օրվա առաջադրանքները կատարում էին 150—170 տոկոսով։ Կրկնապատիկ եռանդով աշխատեցին առանձնապես երիտասարդ մեխանիզատորներ Ա. Ոսկանյանը, Վ. Խաչատրյանը, Ա. Վարդանյանը, Գ. Բադալյանը և ուրիշներ, որոնք մեծ հոբելյանի նախօրեին ընդունվեցին ՍՄԿԿ շարքերը։

Շնորհիվ վերոհիշյալ միջոցառումների, Քաջարանի լեռնագործները մարտ ամսի համախառն արտադրանքի պլանը կատարեցին 126,1 տոկոսով, դրանով միաժամանակ, ծածկեցին հունվար ու փետրվար ամիսներում առաջացած պարտքերը և առաջին եռամսյակում համախառն արտադրանքի պլանը կա-

տարվեց 100,1 տոկոսով։ Առաջին եռամսյակի ցուցանիշների համար կոմբինատի կոլեկտիվն արժանացավ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի Գունավոր մետալուրգիայի վարչության և արհմիության հանրապետական կոմիտեի երկրորդ կարգի մրցանակին։

Բայց, ցավոք, կոմբինատի բոլոր տեղամասերում և բոլոր կոմունիստները չէ, որ խորապես գիտակցել ու գիտակցում են իրենց կանոնադրական պարտականությունները և օրինակ ծառայում անկուսակցական մասսաներին։ Մի ժամանակ կուսկոմիտեի նիստերում և կուսակցական ժողովներում շատ էր խոսվում հարստացուցիչ ֆաբրիկայում արտադրության տեխնոլոգիական ռեժիմի անբավարար վիճակի մասին։ Նույնիսկ ընդունվեցին կոնկրետ որոշումներ։ Չնայած դրան ֆաբրիկայում շարունակվում էին տեխնիկական կարգապահության խախտումները, տեղի էին ունենում վթարներ, որոնք խանգարում էին աղացների և հարստացուցիչ մեքենաների համաչափ աշխատանքին։ Դրա հիմնական պատճառն այն էր, որ ֆաբրիկայի ղեկավարությունը և հատկապես ջարդող բաժնի պետ, կուսանդամ Ա. Ստեփանյանն անհրաժեշտ պահանջկոտություն չէին ցուցաբերում ինժեներա-տեխնիկական աշխատողների նկատմամբ, միջոցներ չէին ձեռնարկում այն աշխատողների նկատմամբ, որոնք խախտում էին աշխատանքային կարգապահությունը։ Մյուս պատճառն այն էր, որ ջարդիչները մատակարարվում էին այնպիսի հանքաքարով, որը պարունակում էր երկաթի մեխանիկական խառնուրդներ։ Այստեղ ևս մեղավոր էին ֆաբրիկայի որոշ ղեկավար աշխատողներ։

Ֆաբրիկայում ստեղծված այս դրությունը անցյալ տարվա հունիսին քննության առանք կուսկոմիտեի նիստում։ Կոմիտեն ֆաբրիկայի համապատասխան ղեկավար ընկերներին զգուշացրեց, որ եթե նրանք արմատապես չվերակառուցեն իրենց աշխատանքը, ապա կդրվի նրանց զբաղեցրած պաշտոններից ազատման հարցը։ Զգուշացումն օգնեց. մարդիկ ճիշտ հետևություններ արին, զգալիորեն բարելավվեցին ջարդոնի բաժնի աշխատանքները, կրճատվեցին վթարները և սկսվեց հանքաքարի համաչափ մատակարարումը աղացներին։

Կուսկոմիտեն անմիջականորեն ու սիստեմատիկաբար զբաղվում է յուրաքանչյուր կուսանդամի դաստիարակության հարցով։ Այսպես, կուսակցական կոմիտեում և համակոմբինատային կուսժողովներում հաճախ քննադատական խոսք էր ասվում հարստացուցիչ ֆաբրիկայի պետ Միրոն Ռաբինովիչի հասցեին։ Նա թույլ էր տալիս կոպտություններ, խուսափում էր հասարակական աշխատանքից, հոգատարություն չէր ցուցաբերում իր ենթակաների նկատմամբ և այլն։ Կոմբինատի ղեկավարությունը նույնիսկ մտածում էր նրան փոխադրել այլ աշխատանքի։ Սակայն հաշվի առնելով, որ Մ. Ռաբինովիչը լավ մասնագետ է, կուսկազմակերպությունը կոնկրետ օգնություն ցույց տվեց նրան՝ ուղղելու սխալները, վերացնելու թերությունները։ Այդ օգնությունն արտահայտվեց նրանում, որ մենք Ռաբինովիչին տվինք կոնկրետ հանձնարարություններ, հետևեցինք դրանց կատարմանը։ Ներկայումս ընկ. Ռաբինովիչը կուսկոմիտեի քաղինֆորմատորն է ֆաբրիկայում։ Նա ընտրված է արհմիութենական կոմիտեի և կուսակցական կոմիտեի անդամ։

Նույնը կարելի է ասել էքսկավատորավար Գառնիկ Թևանյանի մասին, որին նույնպես մի ժամանակ հաճախ քննադատում էին աշխատանքային կարգապահության խախտումների և հասարակական աշխատանքից խուսափելու համար։ Այժմ կոմունիստ Գ. Թևանյանը արտադրության առաջավոր է, նրան ընդօրինակում են շատ լեռնագործներ։

Կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունը խիստ են բոլոր նրանց նկատմամբ, ովքեր իրենց անվայել արարքներով արատավորում են կոմունիստի բարձր կոչումը, անուղղելի են։ Այդպիսիներից էր, օրինակ, կոմբինատի բանմատբաժնի մսավաճառ Վ. Հայրապետյանը։ Նա հաճախակի զբաղվում էր հարբեցողությամբ և կոպտաբար խախտում առևտրի կանոնները, կատարում չարաշահումներ։ Բանմատբաժնի կուսկազմակերպությունը և ադմինիստրացիան Վ. Հայրապետյանին մի քանի անգամ ենթարկեցին կուսակցական և վարչական տույժի, փորձելով ուղղել նրան։ Բայց վերջինս միշտ էլ չարաշահեց իր նկատմամբ ցուցաբերած հոգատարությունը։ Նրան հետագայում ազատեցին գործից և ուղարկեցին այլ աշխատանքի։ Դա էլ չօգնեց և կուսկոմիտեն Վ. Հայրապետյանին վտարեց ՍՄԿԿ շարքերից։

Կուսշարքերից վտարվել է նաև ՍՄԿԿ անդամության թեկնածու Վիտալի Մըմրինը, որը տասն ամիս անդամավճար չէր մուծել։

Բերված փաստերից տրամաբանորեն բխում են երկու հետևություն. նախ այն, որ կոմբինատի արտադրամասային կուսկազմակերպությունները, նրանց ղեկավարները դեռևս քիչ են զբաղվում կոմունիստների քաղաքական-գաղափարական դաստիարակության, արտադրության մեջ և հասարակական կյանքում նրանց ավանգարդային դերի, անձնական օրինակի բարձրացման հարցերով։ Երկրորդ՝ ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ավելի է բարձրացել կուսակցության անդամի դերը, նրան ներկայացվող պահանջները կյանքի բոլոր բնագավառներում, կուսակցական մասսաներն այժմ ավելի անհաշտ են բոլոր նրանց նկատմամբ, ովքեր իրենց անվայել արարքներով նսեմացնում են լենինյան կուսակցության անդամի բարձր կոչումը։

Կոմբինատի կուսկազմակերպության վերջերս կայացած հաշվետու-ընտրական ժողովում ծավալված մտքերի փոխանակության ժամանակ հանդես եկած կոմունիստները մատնանշելով այդ երկու երևույթները, նորընտիր կուսկոմիտեի և արտադրամասային կուսկազմակերպությունների ուշադրությունը սևեռեցին կոմունիստների մարքս-լենինյան դաստիարակության ուժեղացման և նրանց ավանգարդային դերի բարձրացման հարցերի վրա։

ՄՈՎՍԻՍՅԱՆ Կ. Ա.
Քաջարանի Լենինի շքանշանակիր պ/մ կոմբինատի կուսակցական կոմիտեի քարտուղար

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԿԱՊԻՏԱԼ ՆԵՐԴՐՈՒՄՆԵՐԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

ԱՆԴՐԵԱՍՅԱՆ Վ. Մ.

Տնտեսական գիտությունների թեկնածու

*ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում և կուսակցության կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշումներում հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, կապիտալ ներդրումների և ֆոնդահատույցի աճի հարցերը դիտվում են որպես սովետական էկոնոմիկայի առջև ծառացած կարևոր խնդիրներ: Կապիտալ ներդրումների օգտագործման ռեզերվների բացահայտումը մեքենաշինության մեջ, որն առաջնակարգ նշանակություն ունի ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման համար, արտադրության բարձր տեմպերի ապահովման և նրա արդյունավետության բարձրացման կարևոր միջոցն է: Կապիտալ ներդրումների հիմնական ֆոնդերի օգտագործման բարելավման նշանակությունը որոշվում է նրանով, որ առաջին. այն ապահովում է արտադրանքի աճ նոր շինարարության համեմատությամբ, առանց լրացուցիչ միջոցների ծախսման և, երկրորդ. նոր շինարարության մեջ կապիտալ ներդրումների հատույցը կարող է ստացվել ֆոնդերը ներդնելուց հետո, որը կախված է շինարարության տևողությունից, այն դեպքում, երբ գործող հիմնական ֆոնդերի օգտագործման բարելավումն արտադրանքի աճ է տալիս անմիջապես: Այսպես, եթե 1965 թվականին Հայկական ՍՍՀ մեքենաշինության մեջ մեկ ռուբլու հիմնական ֆոնդերի դիմաց ստացված արտադրանքն աճեր թեկուզ մեկ տոկոսով, ապա առանց նոր կապիտալ ներդրումների, հնարավոր կլիներ ստանալ մի քանի միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք: Նշենք, որ 1965 թվականին հանրապետության մեքենաշինության մեջ նույն ծավալի արտադրանք ստանալու համար կպահանջվեր 1447,9 հազար ռուբլի կապիտալ ներդրում, իսկ հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության մեջ (ուր արտադրանքի աճի միավորին ընկնող տեսակարար կապիտալ ներդրումները 1,6 անգամ գերազանցում են մեքենաշինության միջին մակարդակը)՝ 2316 հազար ռուբլի:*

*Վերջին տարիներին հանրապետության մեքենաշինական արդյունաբերության զարգացումը բնորոշվում է կապիտալ ներդրումների ծավալի անընդհատ և արագ աճով: 1959—1965 թվականներին մեքենաշինության մեջ կապիտալ ներդրումների ծավալը կազմեց 121,0 միլիոն ռուբլի կամ աճեց 2,2 անգամ[1]: Այդ տարիներին կառուցվել ու շահագործման են հանձնվել բարձրարտադրողական սարքավորումներով հագեցված տասնյակ խոշոր ձեռնարկություններ: Զգալիորեն բարձրացել է մեքենաշինական արդյունաբերության տեխնիկական*

*1 ՀՍՍՀ ԿՎՎ տվյալներով:*



*զինվածությունը: Շատ ձեռնարկություններում մետաղահատ սարքավորումների պարկը նորացվել է 40—50 տոկոսով:*

*Հանրապետության մեքենաշինության մեջ արդյունաբերական շինարարության կարևոր ցուցանիշներից է նոր ֆոնդերի գործարկումը: Բավական է նշել, որ 1959—1965 թվականներին շարք մտած ֆոնդերի արժեքը կազմեց ավելի քան հարյուր միլիոն ռուբլի[1]: Այդ նշանակում է, որ յոթ տարվա ընթացքում գործարկված ֆոնդերի արժեքն 2 անգամ գերազանցում է այն ֆոնդերի արժեքը, որ մեքենաշինությունն ուներ 1958 թվականին: Սակայն, ինչպես ցույց է տալիս հետազոտությունը, հանրապետության մեքենաշինության մեջ նկատվում է հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության մակարդակի իջեցում, որը, իհարկե, պետք է լուրջ մտահոգություն պատճառի: Եթե միաժամանակ բարձրանար հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետությունը, ապա արագ տեմպերով կաճեր մեքենաշինությունը: Բայց 1959—1965 թվականներին հիմնական ֆոնդերի աճի տեմպերը մշտապես գերազանցել են համախառն արտադրանքի ավելացման տեմպերը: Դրա հետևանքով հանրապետության ժողովրդական տնտեսությունը պակաս է ստացել տասնյակ միլիոն ռուբլիների արտադրանք: Օրինակ, եթե հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետությունը պահպանվեր 1958 թվականի մակարդակին, ապա 1966-ին հանրապետության մեքենաշինության համախառն արտադրանքը տասնյակ միլիոն ռուբլով ավելի կլիներ, քան ստացվել է փաստորեն: Այդպիսի վիճակը բացատրվում է հիմնական ֆոնդերի անբավարար օգտագործումով և նոր գործարկված կարողությունների դանդաղ յուրացումով:*

*Հայտնի է, որ հիմնական ֆոնդերի ամենամեծ և ամենաակտիվ մասն են կազմում աշխատամեքենաները, սարքավորումներն ու մեխանիզմները: Դրանց բեռնվածության ավելացումը նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը և կուտակումների աճին: Սակայն հանրապետության շատ մեքենաշինական ձեռնարկություններ անբավարար են օգտագործում այդ բնագավառում եղած ռեզերվները: Այսպես, 1959—1965 թվականներին հերթափոխության գործակիցը, որը բնորոշում է սարքավորումների օգտագործման աստիճանը, ամբողջությամբ վերցրած մեքենաշինության մեջ և սրա առաջատար ճյուղերում բնութագրվում է հետևյալ տվյալներով[2] (տե՛ս աղյուսակ 1):*

*Աղյուսակ 1*

| Ճյուղեր | 1959 | 1960 | 1961 | 1962 | 1963 | 1964 | 1965 |
|---|---|---|---|---|---|---|---|
| Մեքենաշինություն | 1,34 | 1,38 | 1,31 | 1,40 | 1,37 | 1,41 | 1,36 |
| այդ թվում՝ Էլեկտրատեխնիկական արդյունաբերություն | 1,61 | 1,48 | 1,51 | 1,53 | 1,62 | 1,57 | 1,42 |
| Հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերություն | 1,32 | 1,36 | 1,39 | 1,41 | 1,38 | 1,37 | 1,35 |
| Սարքաշինական արդյունաբերություն | 1,46 | 1,49 | 1,59 | 1,48 | 1,46 | 1,51 | 1,56 |

*1 ՀՍՍՀ ԿՎՎ տվյալներով:*

*2 ՀՍՍՀ ԿՎՎ տվյալներով:*

Հանրապետության շատ մեքենաշինական ձեռնարկություններում հերթափոխության գործակիցը չի գերազանցում 1,2—1,5-ից։ Սարքավորումների շահագործման վիճակն ավելի վատ է օժանդակ և նորոգման արտադրամասերում։ 1964 թվականի հոկտեմբերին ՍՍՀՄ ԿՎՎ կողմից անցկացված ուսումնասիրությունները և ընտրանքային հետազոտությունները ցույց են տալիս, որ մեքենաշինական ձեռնարկություններում անբավարար են օգտագործվում սարքավորումները, մեծ են բանվորների չհիմնավորված պարապուրդները, որի մասին է վկայում մետաղահատ սարքավորումների բեռնվածության ցածր գործակիցը ժամանակի ընթացքում։

Աղյուսակ 2

| Ձեռնարկություններ | Հերթափոխության ժամանակի օգտագործման գործակիցը[1] |
|---|---|
| Ընդամենը հետազոտված ձեռնարկությունների գծով . . . . . | 0,60 |
| այդ թվում | |
| Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարան . . . . . . . . | 0,61 |
| Երևանի էլեկտրատեխնիկական գործարան . . . . . . . | 0,46 |
| Էլեկտրաշարժիչների գործարան . . . . . . . . . . . | 0,80 |
| Ֆ. Է. Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարան . | 0,63 |
| Լենինականի դարբնոցա-մամլակային սարքավորումների գործար. | 0,56 |
| Կոմպրեսորների գործարան . . . . . . . . . . . . . | 0,47 |
| Հիդրոպոմպերի գործարան . . . . . . . . . . . . . | 0,80 |
| Ավտոպահեստամասերի գործարան . . . . . . . . . . . | 0,58[2] |
| Լուսավանի ներտաշ հաստոցների գործարան . . . . . . . . | 0,39 |

Հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում սարքավորումների օգտագործման գործակիցը տատանվում է 0,39—0,80-ի սահմաններում։ Ժամանակի ռեժիմային ֆոնդի օգտագործումը միջին հաշվով կազմել է մետաղահատ հաստոցներինը՝ 0,59, դարբնոցա-մամլակային սարքավորումներինը՝ 0,69 և ձուլման սարքավորումներինը՝ 0,74։ Եթե հաշվի առնենք օժանդակ արտադրամասերը (որտեղ սարքավորումներն օգտագործվում են ավելի վատ, քան հիմնական արտադրամասերում), ապա սարքավորումների պարկի օգտագործման գործակիցն ավելի ցածր կլինի։ Ֆ. Է. Ձերժինսկու անվան հաստոցաշինական և էլեկտրատեխնիկական գործարաններում սարքավորումները բեռնված չեն նույնիսկ կիսով չափ։ Ավտոպահեստամասերի գործարանում 40 տոննայից բարձր հզորության մամլիչներն օրվա մեջ աշխատում են 7 ժամից քիչ ավել։ Կոմպրեսորների գործարանում խառատային-պտուտակահան հաստոցների օգտագործման գործակիցը կազմում է 0,25։ Լուսավանի ներտաշ հաստոցների գործարանի մեխանիկական ցեխում սարքավորումների բեռնվածության միջին գործակիցը 0,41 է, իսկ ատամնամշակող հաստոցներինը՝ 0,25։ Սարքավորումներն ավելի վատ են օգտագործվում Լենինականի դարբնոցա-մամլակային սարքավորումների, Երևանի հիդրոհաղորդակ և հաստոցանորմալ գործարաններում։ Հանրապետության ձեռնարկություններում թույլ են բեռնված ո՛չ միայն ունիվերսալ, այլև ունիկալ սարքավորումները, հատուկ և ագրեգատային հաստոցները, ծանր դարբնոցա-մամլակային մեքենաները։ Այսպես, ագրեգատային հաստոցներն երկհերթ աշխատելիս բեռնված են միայն 35—40 տոկոսով։

1 Փաստորեն աշխատած մեքենա-ժամերը հերթափոխային ընդհանուր մեքենա-ժամերի նկատմամբ։

2 Եռհերթ ժամանակի ֆոնդը։



Հանրապետության ձեռնարկություններում սարքավորումների բեռնվածության ցածր մակարդակը հիմնականում բացատրվում է արտադրության կազմակերպման մեջ եղած թերություններով։ Դրանցից մեկը մեքենաշինական ձեռնարկությունների ոչ ռիթմիկ աշխատանքն է, որը անդրադառնում է տնտեսական փրծունեության, հիմնական ֆոնդերի արդյունավետության մակարդակի վրա, հավասար չեն օգտագործվում հիմնական ուժային ու տեխնոլոգիական սարքավորումները (առաջին տասնօրյակում արտադրական պլանները կատարվում են 15—20 տոկոսով)։ Արտադրանքի թողարկումը, պատրաստի դետալների ստացումն ամսվա սկզբին 1,5—2 անգամ պակաս է, քան վերջին։

Գործարաններում մեծ են ներհերթափոխային պարապուրդները։ Դրանք նյութատեխնիկական մատակարարումն ու օպերատիվ պլանավորումն անբավարար կազմակերպելու հետևանք են։ Մեքենաշինական ձեռնարկություններում, ամբողջօրյա պարապուրդների կառուցվածքը ցույց է տալիս, որ դրանց հիմնական մասը (52,4 տոկոս) բաժին է ընկնում արտապլանային պարապուրդներին։

Հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններն ունեն հիմնական ֆոնդերի օգտագործման մեծ ռեզերվներ, որոնց գործարկումը հնարավորություն կընձեռի զգալիորեն ավելացնել արտադրանքի ծավալը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունն ու կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունը։

Որո՞նք են այդ հնարավորությունները, ռեզերվները։

**Հայկական ՍՍՀ մեքենաշինական արդյունաբերության զարգացման ներկա էտապում արտադրական կարողությունների լավագույն օգտագործման, կապիտալ ներդրումների արդյունավետության բարձրացման հարցի արմատական լուծման ուղին սարքավորումների աշխատանքի ժամանակի երկարացումն է՝ հերթափոխության գործակցի խիստ բարձրացումը։**

Հասնել սարքավորումների պարկի առավելագույն բեռնվածության, նշանակում է՝ գործի դնել հսկայական ռեզերվներ։ Հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում հերթափոխության գործակցի բարձրացումը տասնյակ միլիոն ռուբլիներով կավելացնի արտադրանքի թողարկումը։ Հաշվարկները ցույց են տալիս, որ երկհերթ աշխատանքի սահմաններում հիմնական արտադրական սարքավորումների օգտագործման բարելավումը, հերթափոխության գործակցի հասցնելը թեկուզ մինչև 1,75—1,80-ի և ժամանակի, ռեժիմային ֆոնդի օգտագործումը 75 տոկոսով, ՀՍՍՀ մեքենաշինության մեջ հնարավորություն կընձեռի արտադրանքի թողարկումն ավելացնել 51—57 միլիոն ռուբլով։ Ճիշտ է, այդ կպահանջի լրացուցիչ աշխատուժ և սարքավորումներ արտադրության (հատկապես նախապատրաստական արտադրամասերում) ավելացման համար, բայց նման ծախսերն զգալիորեն պակաս կլինեն, քան նոր ձեռնարկությունների կառուցման կամ գործող ձեռնարկությունների վերակառուցման ծախսերը։

Սարքավորումների հերթափոխության գործակցի ու սրանց բեռնվածության բարձրացման խնդիրը չափազանց կարևոր է։ Դրանք կարճ ժամանակամիջոցում հնարավոր չէ լուծել։ Մեքենաշինական ձեռնարկություններում անհրաժեշտ է իրականացնել մի շարք նախապատրաստական միջոցառումներ.

վերացնել առանձին արտադրամասերի և տեղամասերի կարողությունների միջև եղած անհամապատասխանությունը, ավելացնել հաստոցների վրա աշխատող բանվորների թիվը (մասնավորապես օժանդակ բանվորների թվի կրճատման, վերաբաշխման և բազմահաստոցային սպասարկման հաշվին), գործարաններին լրացուցիչ տալ մետաղ, նյութեր, կոմպլեկտավորող հանգույցներ, դետալներ ու ձուլվածք։ Անհրաժեշտ է առաջին և երկրորդ հերթափոխություններում խտացնել աշխատանքային օրը, ապահովել սարքավորումների առավելագույն բեռնվածությունը և մյուս ներհերթափոխային ռեզերվների օգտագործումը, այսինքն՝ ստեղծել երկու լրիվ հերթափոխ և դրա հիման վրա բարձրացնել սարքավորումների հերթափոխության գործակիցը։

Հիմնական ֆոնդերի առավելագույն օգտագործումը, հիմնական արտադրական սարքավորումների բեռնվածությունը պետք է նախատեսված լինի արդեն ժողովրդատնտեսական պլանում։ Ներկայումս ո՛չ պլանում, ո՛չ էլ մեքենաշինական (ինչպես նաև մյուս ձեռնարկությունների) հաշվետվություններում չկա մի ցուցանիշ, որը բնութագրի ֆոնդերի և արտադրական կարողությունների օգտագործման աստիճանը։ Մեքենաշինության հիմնական ֆոնդերի և արտադրական կարողությունների օգտագործումը բնորոշող ցուցանիշները՝ 100 ռուբլու հիմնական ֆոնդերին ընկնող արտադրանքը և սարքավորումների օգտագործման գործակիցը, մինչև այժմ լայն կիրառում չեն գտել պլանավորման պրակտիկայում։ Միաժամանակ հայտնի է, որ հենց այդ ցուցանիշների օգնությամբ կարելի է դատել հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության մասին։ ՀՍՍՀ մեքենաշինության մեջ առկա արտադրական կարողությունների և դրանց օգտագործման մակարդակի միջև ճեղքվածքի առաջացումն այդ ցուցանիշների թերագնահատումն է։ Օրինակ, հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում սարքավորումների աշխատանքի պլանային ֆոնդն օգտագործվում է 40—60 տոկոսով։ Դրա հետևանքով, վերջին տարիներին մի շարք ձեռնարկություններում կրճատվում է մեկ ռուբլու հիմնական ֆոնդերի դիմաց ստացված արտադրանքը։ Ֆ. Է. Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում 1965 թվականի համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարվեց 100 տոկոսով (արտադրանքի առանձին տեսակների գծով պլանը նույնիսկ գերակատարվեց)։ Միաժամանակ մետաղահատ հաստոցների օգտագործման գործակիցը կազմեց 0,59, իսկ դարբնոցամամլակային մեքենաներինը՝ 0,47։ Այդ տեղի է ունեցել այն պատճառով, որ արտադրական պլաններում չի նախատեսվում հիմնական ֆոնդերի արդյունավետ օգտագործում, իսկ ձեռնարկությունում չի տարվում սարքավորումների բեռնվածության սիստեմատիկ հաշվառում և վերլուծություն։

1965 թվականին հանրապետության մեքենաշինական ձեռնարկությունների մեծ մասում բացակայում էր արտադրական կարողությունների հաշվարկը (ըստ 1965 թվականի պլանի արտադրանքի առանձին տեսակների), առանց որի հնարավոր չէ որոշել սարքավորումների ռացիոնալ օգտագործման հնարավորությունները։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ է սարքավորումների բեռնվածության բոլոր հարցերը, որոնք այժմ միշտ չէ, որ դրական են լուծվում մեքենաշինական ձեռնարկությունների մի շարք բաժինների կողմից (պլանային, արտադրական, գլխավոր տեխնոլոգի, գլխավոր մեխանիկի), կենտրոնացնել արտադրական կարողությունների բաժնում։ Այդ բաժնի վրա անհրաժեշտ է դնել ձեռնարկությունների կարողությունների հաշվառման ու հաշվետվության, արտադրամասերի սարքավորումների բոլոր խմբերի բեռն-



վածության պլանավորման, հսկման և ավելորդ կարողությունների վերաբաշխման պարտականությունները։ Այսպես են աշխատում Լենինգրադ և Գորկի քաղաքների մեքենաշինական ձեռնարկությունները։

Արտադրական պլանի կատարումը բնորոշող ցուցանիշներում անհրաժեշտ է մտցնել մեկ ռուբլու հիմնական ֆոնդերի և հիմնական արտադրամասի մեկ հաստոցի դիմաց ստացված արտադրանքի ցուցանիշները։ Նպատակահարմար է հանրապետության վիճակագրական վարչության գծով սահմանել կիսամյա կամ տարեկան պետական հաշվետվություն մետաղահատ հաստոցների և դարբնոցա-մամլակային մեքենաների օգտագործման մասին հիմնական անվանացանկով, որոնցով մշակվում է արտադրական ծրագիրը, ցույց տալով ռեժիմային ֆոնդի օգտագործումն ու տեղակայված միավոր սարքավորման վրա ընկնող արտադրանքը։

Արտադրանքի ավելացման և հիմնական ֆոնդերի արդյունավետության բարձրացման խոշոր ռեզերվներից է չտեղակայված սարքավորումների ընդգրկումն արտադրական պրոցեսում։ Չնայած վերջին տարիներին հանրապետության մեքենաշինության մեջ որոշ չափով կրճատվել են չտեղակայված սարքավորումները, բայց դրանք դեռևս նշանակալից են։ Այսպես, սարքավորումների հաշվարկման տվյալները առ 1/I—66 թ. դրությամբ ՀՍՍՀ մեքենաշինության մեջ չտեղակայված սարքավորումների տեսակարար կշիռը կազմել է (տոկոսներով տեղակայված սարքավորումների նկատմամբ)[1].

Աղյուսակ 3

| Ճյուղեր | Մետաղահատ հաստոցներ | Դարբնոցա-մամլակային սարքավորումներ | Ձուլման սարքավորումներ |
|---|---|---|---|
| Մեքենաշինություն . . . . . . . . . . . . . . . | 4,1 | 7,1 | 18,3 |
| Էլեկտրատեխնիկական արդյունաբերություն . . . | 3,8 | 6,2 | 21.4 |
| Հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբ. | 4,9 | 3,4 | 28,3 |
| Սարքաշինություն . . . . . . . . . . . . . . . | 4,8 | 6,1 | 11,4 |

Հանրապետության մեքենաշինության մեջ առ 1/I—66 թ. կար չտեղակայված 276 մետաղահատ հաստոց, 102 և 76 դարբնոցա-մամլիչ և ձուլման սարքավորումներ։ Բնորոշն այն է, որ չտեղակայված սարքավորումների մեծ մասը նոր է (մինչև 3 տարվա)։ Հիմնական ֆոնդերի լրիվ օգտագործման համար պետք է նվազագույնի հասցնել չտեղակայված սարքավորումները։ Այդ սարքավորումների տեղակայման արագացումը կրճատում է անավարտ շինարարության ծավալը, բարձրացնում կարողությունների ծավալման տեմպերը, ուժեղացնում արտադրական պրոցեսների ինտենսիվությունը։ Չտեղակայված սարքավորումների օգտագործման թե ինչպիսի հնարավորություններ կան հանրապետության մեքենաշինության մեջ, կարելի է դատել հետևյալ հաշվարկներով։ Մետաղահատ հաստոցների փորձնական գիտահետազոտական ինստիտուտի (ЭНИМС) տվյալներով յուրաքանչյուր մետաղամշակող հաստոց (միահերթ աշխատանքի դեպքում) տարվա ընթացքում թողարկում է 12 հազար ռուբլու համախառն արտադրանք (առ 1/VII—55 թ. գներով)։ Դժվար չէ հաշվել, որ ՀՍՍՀ մեքենաշինության մեջ, որտեղ հերթափոխության միջին գործակիցը կազմում է 1,4, միայն 268 մետաղահատ հաստոցների գործարկումով արտադրանքի թողարկումը կավելանա 463,8 հազար ռուբլով՝ (268×12

1 ՀՍՍՀ ԿՎՎ տվյալներով։

հազար ռուբլի) ×1,4, որը կազմում է հանրապետության մեքենաշինական արդյունաբերության 1965 թվականի արտադրանքի չնչին մասը։ Անհրաժեշտ է, որ հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններն ապահովեն չտեղակայված հաստոցների մոնտաժումն ու գործարկումը։

Սարքավորումների արդյունավետ օգտագործումը մեծ չափով պայմանավորված է նորոգման տնտեսության ռացիոնալ կազմակերպումով։ Հանրապետության մեքենաշինությունը տարբեր հաստոցների հսկայական պարկ ունի։ Սակայն սարքավորումների նորոգման վիճակը ՀՍՍՀ մեքենաշինության մեջ չի համապատասխանում ժամանակակից պահանջներին։ Մինչև այժմ յուրաքանչյուր ձեռնարկություն նորոգման տնտեսությունը պլանավորում է՝ ելնելով միայն իր պահանջներից։ Տարբեր մետաղամշակման և ձուլման սարքավորումները վերականգնվում են բազմաթիվ մանր նորոգման արտադրամասերում ու տեղամասերում կամ անմիջապես հիմնական արտադրամասերում։ Այստեղից էլ նորոգման կազմակերպման բոլոր թերությունները, անհատական բնույթը, նորոգման ցածր որակը և բարձր ինքնարժեքը, բարձրարտադրողական մասնագիտացված սարքավորումների և հարմարանքների, հոսքային մեթոդների կիրառման անհնարինությունը։ Ընդ որում նորոգման արտադրամասերում ու տեղամասերում են կենտրոնացված մեքենաշինական ձեռնարկությունների արտադրական անձնակազմի և հաստոցային պարկի 10 տոկոսը, որը չափազանց անարտադրողական է օգտագործվում։ Այդ բոլորը թուլացնում են նորոգման գործի կազմակերպումը, առաջացնում սարքավորումների ավելորդ պարապուրդներ, թերի են օգտագործվում արտադրական կարողությունները։

Ո՞րն է նորոգման գործի կատարելագործման ուղին ՀՍՍՀ մեքենաշինության մեջ, որը միաժամանակ կարևոր նշանակություն ունի սարքավորումների շահագործման ժամկետների երկարացման, պարապուրդների կրճատման և արտադրանքի թողարկման աճի համար։ Իհարկե, դեռևս վաղ է հարց դնել մանր և բազմաթիվ նորոգման արտադրամասերի և տեղամասերի վերացման մասին։ Միաժամանակ պարզ է, որ 50-ից ավելի խոշոր մեքենաշինական ձեռնարկությունների առկայության պայմաններում, երբ յուրաքանչյուրում հաշվվում է 1500—2000 կապիտալ նորոգման միավոր, սարքավորումների նորոգման կազմակերպման, դրա մասնագիտացման և պահեստամասերի պատրաստման հարցերը հանրապետությունում կարող են ռացիոնալ լուծվել միայն մի ամբողջ խումբ ձեռնարկությունների մասշտաբով։

Մեր կարծիքով, նորոգման տնտեսության կազմակերպման հարցի ավելի ճիշտ լուծում կլիներ, եթե նորոգման գործարան ստեղծվեր հանրապետությունում, որը կզբաղվեր սարքավորումների միջին ու կապիտալ նորոգումով և մոդեռնացումով, պահեստամասերի և հանգույցների արտադրությամբ։



# ԴԺՎԱՐԻՆ ՊՐՈԲԼԵՄԻ ԼՈՒԾՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագիրը հատկապես վերջին տարիներս հանրապետության ներքին տնտեսական կարևորագույն պրոբլեմների շուրջ կազմակերպել է մի քանի անհրաժեշտ բանավեճեր։ Դրանցից մեկը վերաբերում է Հայկական ՍՍՀ տնտեսական շրջանացմանը, որի մասին առաջարկության կարգով հանդես եկավ Լ. Վալեսյանը (1965 թ. № 2), իսկ նրա քննարկմանը մասնակցեցին Պ. Թումանյանը (1966 թ. № 11) և տողերիս հեղինակը (1966 թ. № 2)։ Այնուհետև կրկին ելույթ ունեցավ Լ. Վալեսյանը (1967 թ. № 2)։ Ահա կարևոր հարցի անշտապ և ազատ քննարկման լավագույն օրինակ։

Այս քննարկումը մի անգամ ևս ցույց տվեց, որ, իրոք, տնտեսական շրջանացումը կենսական անհրաժեշտություն է և այդ իմաստով գովելի է Վալեսյանի նախաձեռնությունը։

Սակայն քննարկման ընթացքում մի քանի կարևոր հարցեր և մտքեր պարզորոշ չմեկնաբանվեցին բանավեճի հեղինակի կողմից։ Ահա թե ինչու մենք նորից հարկադրված անդրադառնում ենք այդ պրոբլեմին, նպատակ ունենալով, նախ՝ օգնել դրա լուծմանը, որը և ամենակարևորն է այս բանավեճում, և պարզություն մտցնել քննարկման ընթացքում խճճված մի քանի հարցերի մեջ։

Քննարկման համար ի՞նչ սխեմա է առաջարկել Լ. Վալեսյանը և որոնք են մեր հիմնական, նպատակային դիտողությունները։ Նա իր սխեմայում Հայկական ՍՍՀ-ն բաժանել է 5 տնտեսական շրջանների (Արարատյան, Շիրակի, Մերձդեբեդյան, Սևան—Աղստևի, Զանգեզուրի)։ Մենք նշված սխեման քննադատելու համար որպես օրինակ ենք ծառայեցրել Սևան—Աղստևի և Զանգեզուրի տնտեսական շրջանները։ Լ. Վալեսյանը Սևան—Աղստևի տնտեսական շրջանում նկատի է ունեցել Սևանի ավազանը, Հրազդանը, Իջևանը, Շամշադինը և Կրասնոսելսկը։ Մենք հիմնավորել ենք, որ Հրազդանը բնա-տնտեսական ոչ մի կապ չունի Իջևանի, Շամշադինի և Կրասնոսելսկի շրջանների հետ։ Հրազդան քաղաքի արդյունաբերությունն ստեղծվել է Արարատյան շրջանի և, առաջին հերթին, Երևանի տնտեսական պահանջով, ավելի ճիշտ՝ ազդեցությամբ։ Հասկանալի է, որ նպատակահարմար է Հրազդանը մտցնել Արարատյան տնտեսական շրջանի մեջ։ Ասենք, որ այս նույն դիտողությունն արել է նաև Պ. Թումանյանը։

Իսկ ի՞նչն է Լ. Վալեսյանին մղել դեպի այդ քայլը իր կողմից նշված սկզբունքներից առաջինին (արդյունաբերական «բավարար հզորության» կենտրոնի կամ հանգույցի առկայության պարտադիր պայմանը) բավարարելու պահանջը։ Մենք նշել ենք, որ եթե տնտեսական շրջանի համար պարտադիր պահանջ է արդյունաբերական «բավարար հզորության» կենտրոնի գոյությունը, ապա Աղստևի հովտում այդպիսի կենտրոն (մի քանի տեղ գրել ենք «հանգույց») կարելի է ընդունել Իջևանը։

Տնտեսական շրջանացման պրոբլեմի քննարկման շահերի տեսակետից հետաքրքիր է իմանալ Լ. Վալեսյանը ընդունե՞լ է արդյոք մեր այս դիտողությունը, որը վերաբերում է շրջանացման բուն էությանը, սխեմային։ Այդ մասին լռում է։ Բայց նա մեր այս դիտողության մեջ «գտել է» «սխալ» օգտագործած մի տերմին, սոսկ մի բառ (խոսքը «հանգույց» բառի մասին է, որը, նրա կարծիքով, պետք է լինի կենտրոն) և թողած քննադատության սկզբունքային, էական կողմը, ընկել է այդ բառի ետևից։ Ապացուցելու համար, որ մենք Իջևանն իրավունք չունենք արդյունաբերական հանգույց համարելու, որովհետև «ժամանակակից տնտեսական աշխարհագրության մեջ,— ինչպես գրում է Լ. Վալեսյանը,— այդ տերմինն օգտագործվում է երկու և ավելի արդյունաբերական կետեր (?) կամ կենտրոններ (բայց ոչ երբեք ձեռնարկություններ) միացնող տերիտորիաների համար», նա նշում է մի աղբյուր, որտեղ, իբր, պարզաբանված է հանգույց հասկացողությունը։ Դիցուկ մենք ճիշտ չենք օգտագործել այդ տերմինը, բայց մի՞թե դրանից փոխվում է մեր դիտողության էությունը։ Այդ նույնն է, որ մենք մի կողմ թողնենք «հանգույցի» դեմ նրա առարկությունը և նրան մեղադրենք «արդյունաբերական կետեր» կապակցության համար՝ նշելով, որ «կետը» երկրաչափական հասկացողություն է, բայց ոչ երբեք աշխարհագրական։

Սակայն Լ. Վալեսյանը իզուր է փորձում ապացուցել, որ արդյունաբերական քաղաքը չի կարելի անվանել նաև արդյունաբերական հանգույց։ Դա ընդունված է և մասնագիտական գրականության մեջ որքան ցանկանաք կարելի է հանդիպել այդ տերմինին։ Ասենք նաև, որ հենց ինքը՝ Լ. Վալեսյանը քննարկման ներկայացված իր հոդվածում քանի-քանի տեղ «հանգույց» տերմինն օգտագործում է ճիշտ և ճիշտ մեր ձևով։

Իսկ ինչպիսի՞ն է նրա դիրքը բուն սխեմային վերաբերվող մեր դիտողության նկատմամբ։ Այդ մասին նա լռում է։ Բայց վերջերս լույս տեսած Армения գրքում (որի չորս հեղինակ-

կարիճներն էին բույն դնում այնտեղ, ծարավից սևացած, սմքած ուղտափշերի, եղեգների ու աղաբույսերի վրա խաչասարդն էր հյուսում իր խիտ ցանցը: Օդում վխտում էին մոծակները:

Հայկական լեռնաշղթայի կողմն ընկած վայրերը, Արաքսի երկայնքով ձգված տարածությունները անօգտագործելի ճահճուտներ էին, ուր գորտերն իրենց կռկռոցով ավելի էին ընդգծում լքված տափաստանի մռայլությունը:

Փոխվեցին ժամանակները: Մեծ Հոկտեմբերի արևը շողաց Հայաստան աշխարհում: Խոպան շատ հողեր յուրացվեցին, շատ ճահճուտներ չորացվեցին: Վեդու շրջանի հողատարածություններին հասավ Արտաշատի ջրանցքը: Աննպատակ հոսող Արաքսի ջրերը փոխեցին իրենց ուղղությունը, գնացին դեպի ընդարձակ ու պապակ դաշտերը, կենդանություն տվին հողին:

Սկսվեց ամուլ տափաստանի յուրացումը: Տեխնիկայով զինված մարդն առաջին անգամ ոտք դրեց այստեղ: Աշնանային սովորական մի օր շինարար մուրճի խրոխտ զարկերը, տրակտորների, բուլդոզերների, գրեյդերների, ավտոմեքենաների համերաշխ հռնդյունը խախտեց տափաստանի դարավոր լռությունը: Բարձրացան տուֆակերտ, գեղեցիկ շենքերն ու շարվեցին կենտրոնական խճուղու երկու կողմերին: Վեդու շրջանի քարտեզի վրա երևաց մի նոր բնակավայր:

Շուտով հայտնի դարձավ, որ նորակերտ գյուղում պետք է բնակություն հաստատեն հայրենադարձները: Շրջանի աշխատավորները պատրաստվեցին դիմավորելու իրենց պանդուխտ եղբայրներին: Սովետական հայրենիքը բացեց իր դռները պանդուխտ զավակների առաջ: Օտար երկրներում դեգերող շատ հայեր թոթափելով օտարության փոշին, բռնեցին տունդարձի ճանապարհը, իսկ Հայրենական պատերազմի ավարտից հետո՝ 1946 թվականին, սկսվեց մեծ հայրենադարձությունը: Շատերը եկան ու շատ-շատերի թվում Իրանի Սուլթանաբադի շրջանի հայ բնակիչները: Հենց կայարանում նրանց տվին նոր հիմնված գյուղի հասցեն ու բնակարանների բանալիները:

**Նոր կյանք**,— հայրենադարձ հայերը հենց այդպես էլ կոչեցին երբեմնի ամուլ տափաստանի վրա հիմնված գյուղը, իրենց նոր հանգրվանը:

— Լրացել է վաթսուն տարիս,— ոտք դնելով մայր հողի վրա, համբուրելով հայրենի երկրի քարերը,— ասաց հայրենադարձ Թադևոս Խաչատրյանը,— քառասունհինգ տարի կառուցել եմ, ծառ ու այգի եմ տնկել օտար հողում, օտարի համար: Վերջապես կատարվեց ցանկությունս, հայրենիք վերադարձա: Այսօր ինձ կրկին երիտասարդ եմ զգում, առույգ, պատրաստ մայր Հայաստանի հողը ծառազարդելու, Արարատի դեմ-դիմաց քաղցրահամ խաղողի այգիներ հիմնելու:

Նոր թափով սկսվեց խոպանի նվաճումը, յուրացրած ամեն մի հեկտարի վրա տնկեցին խաղողի որթ ու ծիրանի ծառ, խանդաղատանքով աճեցրին ամեն մի վազը, ամեն մի շիվը:

Նորաստեղծ գյուղում շուտով կոլտնտեսություն հիմնվեց. բոլոր նորաբնակներն ընդգրկվեցին հանրային տնտեսության մեջ: Առաջին տարին կոլտնտեսականները պետության տված սերմնացուով ցորեն, բամբակ, բանջարեղեն, բոստանային կուլտուրաներ ցանեցին, կազմակերպվեցին ոչխարաբուծական, խոզաբուծական, թռչնաբուծական, կաթնապրանքային ֆերմաներ: Պետությունը տվեց ավտոմեքենաներ, տրակտորներ, շարքացաններ:

Առաջին տարին հաջող էր բերքը: Կոլտնտեսականների ամեն մի աշխօրին բաշխվեց 3,5 կիլոգրամ հացահատիկ, 2 ռուբլի դրամ, պանիր, յուղ,



բանջարեղեն: Շատ-շատերի ստացած հացահատիկն իրենց ընտանիքի պահանջները կբավարարեր առնվազն 2—3 տարի: Կոլտնտեսականները ստացած բերքը տուն էին տանում երգելով, պարելով, դհոլ զուռնայի նվագակցությամբ: Կապիտալի աշխարհում երբեք իրենց վաստակը լրիվ տուն չէին տարել նրանք, երբեք օրվա ապրուստ չէին ունեցել, թեև օրնիբուն աշխատել էին, դառը քրտինք թափել հարուստների ագարակներում:

Հայրենադարձների անդուլ ջանքերով ավելի բարելավվեց հողի մշակությունը, բարձրացավ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը: Շուտով սկսեցին բերք տալ խաղողի այգիները, պտղատու ծառաստանները. ավելացավ անասնապահական ֆերմաների եկամուտը: Նոր կյանք կոլտնտեսությունը դարձավ շրջանի ամենաառաջավոր տնտեսություններից մեկը: Եվ դա ընդամենը երկու-երեք տարում: Իսկ այսօր, իր գոյության քսան տարին բոլորած տնտեսությունն աննախընթաց զարգացման է հասել: Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաներից բարձր բերք է ստացվում:

Կոլտնտեսության երիտասարդ նախագահը՝ Ռազմիկ Այվազյանը, որ մասնագիտությամբ զոոտեխնիկ է, ինչ որ հաշվարկներ է անում ու ասում.

— Այժմ մեր կոլտնտեսությունն ունի 115 հեկտար խաղողի և 50 հեկտար պտղատու այգիներ, մշակում է 40 հեկտար բանջարեղեն, 60 հեկտար սեխ ու ձմերուկ, հացահատիկ և այլ կուլտուրաներ: Անասնապահական ֆերմաներում հաշվվում է 500 գլուխ խոշոր, 1500 գլուխ մանր եղջերավոր անասուն, 200 խոզ: Տարեկան ստացվում է խաղող՝ 630, պտուղ՝ 150, բանջարեղեն՝ 680, սեխ ու ձմերուկ՝ 1000, հացահատիկ՝ 200 տոննա: Կոլտնտեսությունն արտադրում և պետությանն է վաճառում միս՝ 50, կաթ՝ 270, բուրդ և այլ մթերքներ՝ 28 տոննա:

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության տեսակետից նորկյանքցիները վաղուց առաջ են անցել իրենց հարևաններից: Նրանք մշտապես ստանում են կայուն ու բարձր բերք՝ հեկտարից խաղող 100 ցենտներ, հացահատիկ՝ 30, բանջարեղեն՝ 400, բոստանային կուլտուրաներ՝ 450, սեխ՝ 350 ցենտներ: Եվ բոլորովին էլ պատահական չէ, որ հարևան կոլտնտեսությունների ու սովխոզների հողագործները գալիս ուսումնասիրում են նորկյանքցիների փորձը, ծանոթանում նրանց աշխատանքի մեթոդներին ու դրանք արմատավորում իրենց մոտ:

Երկրորդ տարին է, ինչ կոլտնտեսության՝ Երվանդ Խաչատրյանի բրիգադայի բազայի վրա գործում է շրջանի բանջարաբույծների դպրոցը: Նրա բրիգադան, արմատավորելով բանջարա-բոստանային կուլտուրաների մշակության ակոսային եղանակը, կարողանում է ո՛չ միայն մեքենայացնել աշխատատար բոլոր պրոցեսները, այլև նկատելի չափով բարձրացնել բերքատվությունը: Նրա մոտ հեկտարից միջին հաշվով ստացվում է բանջարեղեն՝ 550 և ձմերուկ՝ 600 ցենտներ: Հարևան տնտեսությունների ներկայացուցիչները դպրոցի պարապմունքների ընթացքում ուսումնասիրում են առաջավոր բրիգադայի փորձը, տիրապետում բարձր բերք ստանալու գաղտնիքներին: Նրանցից շատերն արդեն հասել են նորկյանքցիներին: Հարևան Շիրազլուի, Ավշարի, Այգևանի, Փոքր Վեդիի, Արարատի կոլտնտեսություններն այժմ բանջարա-բոստանային կուլտուրաների բավական բարձր բերք են ստանում:

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման շնորհիվ տարեցտարի ավելանում են հանրային տնտեսության եկամուտները:

Ներկայումս նորկյանքցիների մեկ տարվա աշխատանքի եկամուտը հասնում է 610—650 հազար ռուբլու։ Դա հիանալի արդյունք է։

Կոլտնտեսության մարդիկ իրենց վաստակաշատ աշխատանքի դիմաց լավ վարձատրվում են։ Բավական է ասել, որ անցյալ տարի յուրաքանչյուր աշխօրին բաշխվեց 3 ռուբլի 75 կոպեկ և գյուղատնտեսական մթերքներ։ Աշխատավարձի վերածած, կոլտնտեսականների ամսական միջին վաստակը կազմեց 110—115 ռուբլի։ Շատ ընտանիքներ մեկ տարվա աշխատանքի դիմաց միայն ստացան 4000—4500 ռուբլի։ Իսկ կոլտնտեսական Վահան Ծատուրյանի ընտանիքի մեկ տարվա վաստակը կազմեց 7200 ռուբլի, 1300 կիլոգրամ հացահատիկ, չհաշված յուղը, պանիրը և բանջարեղենը։ Գրեթե նույնքան եկամուտ ստացան Խաչիկ Խաչատրյանի, Դավիթ Մինասյանի և ուրիշների ընտանիքները։

Հարուստ է կոլտնտեսությունը. հեռանկարներն ավելի հրապուրիչ են։ Այդ մասին մանրամասն պատմում է տնտեսության գյուղատնտես Սարգիս Մխիթարյանը։

— Առաջին մեկ-երկու տարիներում,— ասում է նա,— 70 հեկտարով ավելացնելու ենք խաղողի և պտղատու այգիները, յուրացնելու նոր աղուտ հողեր, չորացնելու ենք նոր ճահճուտներ, ուր կցանվեն բանջարա-բոստանային կուլտուրաներ։ Արդեն սկսել ենք խաղողի այգիները բարձրացնել հենասյուների վրա։ Այս միջոցառման շնորհիվ ո՛չ միայն կբարելավվի այգիների մշակության աշխատանքը, այլև զգալիորեն կբարձրանա հեկտարների բերքատվությունը։ Ընդարձակել ենք խոտաբույսերի ցանքատարածությունը։ Դա մեզ հնարավորություն կընձեռի մեկընդմիշտ լուծելու կերի հարցը, ապահովելու անասնաբուծության հետագա զարգացումը, ավելացնելու նրա շահութաբերությունը։ Նախատեսված այս ծրագիրն իրականացնելու միջոցով մեր տնտեսության դրամական եկամուտները կհասնեն մեկ միլիոն ռուբլու։

Այս հեռանկարներն ոգևորում, թև են տալիս նորկյանքցիներին, նրանց մղում աշխատանքային նոր սխրանքների։

Զարգացել ու բարգավաճել է հայրենադարձների գյուղը՝ Նոր Կյանքը։ Արարատյան դաշտի ամենաերիտասարդ գյուղն իր լայն փողոցներով, երկհարկանի տուֆակերտ առանձնատներով, վարչատնտեսական շենքերով ու կուլտուրական օբյեկտներով քաղաքից տարբերվում է միայն իր փոքրությամբ։ Գյուղն ունի իր դպրոցը, հիվանդանոցը, բուժարանը, կուլտուրայի հոյատեսիլ պալատը, ունիվերմագը, բազմաթիվ արտադրական օբյեկտներ։ Չնայած դրան դեռ կառուցվում է ու կառուցվում։ Ընթացքի մեջ է բաղնիքի, մսուրմանկապարտեզի շենքերի, անասնապահական մի շարք օբյեկտների շինարարությունը։

Ավելի լայն թափ է ստացել անհատական բնակարանային շինարարությունը։ Յուրաքանչյուր փողոցի վրա շինանյութեր են թափված, ամենուրեք տներ են կառուցվում։ Բազմաթիվ կոլտնտեսականներ ու բանվոր-ծառայողներ կառուցել ու կառուցում են երկհարկանի առանձնատներ։ Գյուղի 260 ընտանիքներից 200-ը արդեն նոր ընդարձակ բնակարան են կառուցել։ Մնացածները գալիք նոր տարին կտոնեն նորակառույց բնակարաններում, որոնց առջև գեղեցիկ պարտեզներ են, խաղողի այգիներ, մրգատու ծառեր։

Հայրենի հողի վրա նորկյանքցին իր ազատ ժամանակը տնօրինելու, հանգիստը կազմակերպելու հիանալի հնարավորություններ ունի։ Օրվա բեղմնավոր աշխատանքից հետո կոլտնտեսականները հավաքվում են կուլտուրայի



տանը։ Այստեղ ամեն մեկն իր համար զբաղմունք է գտնում։ Թերթեր ու գրքեր են ընթերցում, շախմատ ու շաշկի խաղում, մասնակցում զանազան մրցույթների, ունկնդրում մայրաքաղաքից ժամանած համերգային կոլեկտիվներին, դիտում թատերական խմբերի ներկայացումները։ Կուլտուրայի տունն ունի իր երգի-պարի, թատերական ինքնագործ խմբերը, որոնք հաճախ հանդես են գալիս աշխատավորների առջև։ Շաբաթական երկու-երեք անգամ կազմակերպվում են զեկուցումներ ու դասախոսություններ՝ ամենատարբեր թեմաների շուրջ։ Երիտասարդները հաճույքով մասնակցում են պարերի, ասմունքողների խմբերի պարապմունքներին, գրական երեկոներին, հանդիպումներին։ Կանայք ու աղջիկներն էլ իրենց զբաղմունքն ունեն։ Նրանցից շատերն ընդգրկված են կարուձևի խմբակներում, բուժքույրերի դասընթացներում։ Գյուղն ունի ստացիոնար կինո. լավ է կազմակերպված աշխատավորների կինոսպասարկումը։ Գրեթե ամեն օր կուլտուրայի տանը կինոնկարներ են ցուցադրվում։

Նոր կյանքում գործում է միջնակարգ դպրոցը, ուր աշխատում են 34 ուսուցիչ։ Դպրոցում սովորում են 250 երեխա, որոնք միջնակարգն ավարտելուց հետո իրենց կրթությունը կշարունակեն հանրապետության բարձրագույն ուսումնական հաստատություններում, տեխնիկումներում կամ աշխատանքի կանգնեն հայրենի գյուղի կոլտնտեսությունում։ Այժմ 45 նորկյանքցիներ սովորում են տարբեր բուհերում ու տեխնիկումներում։

Գյուղի հիվանդանոցում և բուժարանում աշխատում են 8 բժիշկներ ու բուժաշխատողներ, որոնք մոռացնել են տվել նորկյանքցուն հեքիմներին, գրբացներին, սրբերին։

Ունևոր ու երջանիկ կյանքով է ապրում նորկյանքցի հայրենադարձը։ Նրա կենցաղի մեջ հաստատուն տեղ են գրավել ռադիոընդունիչն ու հեռուստացույցը, սառնարանն ու լվացքի մեքենան, ինչպես նաև տնային ու կենցաղային այլ իրեր։

Տրակտորիստ Սերյոժա Ղուկասյանը, վարորդ Թորոս Գեղագյուլյանը, շարքային կոլտնտեսականներ՝ Եփրեմ Խաչատրյանը, Գալուստ Խուդաթյանը և ուրիշներ ունեն սեփական ավտոմեքենաներ։ Ամեն կիրակի նրանք ընտանիքներով իրենց հանգիստն են անցկացնում բնության գրկում։

Խաների ու հարեմների խավար երկրում Կայծակ Պետրոսյանը ընտանիք կազմելու, տուն ու տեղ դնելու մասին երազել անգամ չէր կարող։ Նոր կյանքի կոլտնտեսությունում անձնվիրաբար աշխատելու շնորհիվ իր համար ստեղծեց նյութական ապահով կյանք։ Այժմ նա կոլտնտեսության մեղվապահն է՝ հարուստ և ունևոր, վստահ իր ապագայի նկատմամբ։ Նա կառուցել է վեց սենյականոց բնակարան, ունի 6 երեխա, նորածին թոռնիկ։

— Ուրիշ հոգս չունեմ, մնում է եկող տարի ավտոմեքենա գնեմ,— կատակում է Կայծակ Պետրոսյանը։

Համարյա նույնն է Նոր կյանք գյուղում բնակություն հաստատած բոլոր հայրենադարձների կենսագրությունը։

Կոլտնտեսության տրակտորիստ Լևոն Խաչատրյանին Իրանում աշխատանք չէին տալիս։ Մայր հայրենիքում նա առաջավոր մեխանիզատոր է, տիրապետում է իր մասնագիտությանը, հարգված ու սիրված է համագյուղացիների կողմից։ Հաճախ հանդես է գալիս նորարարական համարձակ առաջարկություններով։ Նրա առաջարկով ԴՏ—54 տրակտորը ձևափոխվեց, ետևից կցասայլակ ամրացվեց և օգտագործվեց ձմերուկի բերքը դաշտից

դուրս բերելու համար։ 20—30 տոննա ծմերուկ դաշտից դուրս բերելու համար կպահանջվի 20—25 մարդ-օր։ Այժմ նրա մեքենան այդ աշխատանքը կատարում է մի քանի ժամում՝ 2—3 կոլտնտեսականի օգնությամբ։

Անցած տարի նա տրակտորի վրա կատարեց այնպիսի նորամուծություն, որը մասնագետ գիտնականների նախանձը կշարժեր։ Նորամուծության շնորհիվ տրակտորը կարող է կատարել 182 մարդու աշխատանք։

Վերջերս հանրապետության գյուղատնտեսության մինիստրության կոլեգիան քննության առավ Լևոն Խաչատրյանի առաջարկությունը, հավանություն տվեց և հանձնարարեց համապատասխան կազմակերպություններին՝ պատվիրել նման մեքենաներ։

Առաջավոր մեխանիզատորի նորարարական առաջարկությունն արմատավորվել է նաև հարևան տնտեսություններում։ Խաչատրյանի օրինակով են աշխատում Ղարալարի, Շիրաղլուի, Ավշարի, Փոքր Վեդու կոլտնտեսությունների շատ մեխանիզատորներ։

Լևոնի մյուս եղբայրը՝ Երվանդը, կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղարն է։ Նա աշխատում և միաժամանակ հեռակայում է Երևանի գյուղատնտեսական ինստիտուտում։ Փոքր եղբայրը՝ Մեսրոպը, ավարտել է Երևանի պետական համալսարանի պատմության ֆակուլտետը և այժմ Երևանում ուսուցիչ է։

Հայրենադարձ Մինաս Մեհրաբյանը բարձրագույն կրթություն է ստացել և այժմ Ավշար գյուղի միջնակարգ դպրոցի ուսմասվարն է, հասարակական կարգով ղեկավարում է ՀԼԿԵՄ շրջկոմի դասախոսական խումբը։ Ծատուր Ամիրյանը հայրենիքում նվիրված աշխատանքի համար տարբեր կազմակերպություններից ստացել է քանից ավելի պատվոգրեր ու գովասանագրեր։ Հինգ տարուց ավելի է, ինչ նա ղեկավարում է Նոր կյանքի և Փոքր Վեդու միացյալ գյուղական սովետի աշխատանքները։

Բազմաթիվ նորկյանքցիներ շրջանային սովետի դեպուտատներ են, ընտրված են գյուղական սովետի կազմում։ Նորկյանքցին դարձել է իր սոցիալիստական հայրենիքի լիիրավ քաղաքացին։ Նա արտադրության առաջավոր է, հանրային դաշտերի հիանալի մշակ, խիզախ նորարար, ուսուցիչ և բժիշկ, հասարակական ակտիվ աշխատող։ Հայրենադարձ հայը քայլում է նոր հասարակարգ կառուցողների առաջին շարքերում։

Անցյալ տարի գյուղի նորակառույց կուլտուրայի տան դահլիճում Նոր կյանքի բնակիչները հանդիսավոր կերպով նշեցին իրենց նոր բնակավայրի հիմնադրման, նորոգ կյանքի քսանամյակը։ Հայտնելով իրենց ջերմ երախտագիտությունը, նրանք խոստացան այսուհետև էլ չխնայել իրենց ուժերն ու եռանդը հանուն իրենց գյուղի, իրենց հայրենիքի առավել շենացման ու բարգավաճման։

Քսանամյա Նոր կյանքը, նրա հայրենադարձ բնակիչները լցված են պայծառ ապագայի վառ երազներով, որոնք իրականություն կդառնան նրանց ջանքերով ու աշխատանքով։

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ԱՐ. Մ.

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

## ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԵՎ ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԳՅՈՒՂԱՑԻՈՒԹՅԱՆ ՄԻՋԵՎ ԵՂԱԾ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎԵՐԱՑՈՒՄԸ

ՄԵՂՐՅԱՆ Գ. Ս.

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը գիտականորեն հիմնավորեցին նոր հասարակության պայմաններում քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած հակադրության վերացման, իսկ հետագայում նաև նրանց էական տարբերությունների հաղթահարման անհրաժեշտությունն ու անխուսափելիությունը։ Մարքսը գրում էր, որ կոմունիզմի բարձրագույն փուլին հասնելը հնարավոր է միայն այն դեպքում, «Երբ կչքանա մարդուն ստրկացնող նրա հպատակումն աշխատանքի բաժանմանը, երբ դրա հետ միասին կանհետանա մտավոր և ֆիզիկական աշխատանքի հակադրությունը, երբ աշխատանքը կդադարի լոկ ապրուստի միջոց լինելուց, այլ ինքը կդառնա կյանքի առաջին պահանջը, երբ անհատի բազմակողմանի զարգացման հետ միասին կաճեն նաև արտադրողական ուժերը և լիառատ հեղեղի նման կհոսեն հասարակական հարստության բոլոր աղբյուրները...» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 2, 1950, էջ 19)։

Դասակարգային տարբերությունների հաղթահարումը զարգացման բարդ ու երկարատև պրոցես է։ Դասակարգերի առաջացման, ինչպես նաև նրանց անհետացման համար անհրաժեշտ են որոշակի օբյեկտիվ պայմաններ։ Այդ պայմաններն ստեղծվում են ոչ թե միանգամից, այլ աստիճանաբար՝ անհրաժեշտ նյութական և հոգևոր նախադրյալների կուտակման և հասունացման համեմատ։

Մեր երկրում դասակարգերի վերացման պրոցեսն անցել է երկու հիմնական էտապ։ Նախ, սովետական իշխանության գոյության առաջին տարիներին վերացվեցին կապիտալիստների և կալվածատերերի շահագործող դասակարգերը, իսկ բանվոր դասակարգը շահագործվող դասակարգից վերածվեց տիրապետող դասակարգի։ Երկրորդ, կոլեկտիվացման ժամանակաշրջանում վերացվեց կուլակությունը, որպես վերջին շահագործող դասակարգ։

Շահագործողական դասակարգերի վերացումից, սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաղթանակից հետո մեր երկրում մնացին բանվորների և գյուղացիների բարեկամ դասակարգերը, որոնց միջև չկան

անտագոնիստական հակասություններ: Սոցիալիստական հասարակության շինարարության ընթացքում այդ դասակարգերը, ինչպես նաև նոր, ժողովրդական ինտելիգենցիան սոցիալական լուրջ փոփոխությունների ենթարկվեցին, որի շնորհիվ հիմք դրվեց մեր հասարակության սոցիալ-քաղաքական ու գաղափարական անխախտ միասնությանը: Այստեղ մարդկանց միջև տիրապետում են բազմակողմանի օգնության, բարեկամական և ընկերական համագործակցության հարաբերություններ, որովհետև նրանց արմատական շահերը հիմնականում լրիվին համընկնում են: Նրանց նպատակն է կառուցել անդասակարգ կոմունիստական հասարակություն: Դա ամրապնդում է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի տնտեսական, քաղաքական ու հոգևոր ընդհանրությունը, այդ միասնությունը վերածում սոցիալիստական հասարակության զարգացման հզոր շարժիչ ուժի:

Այժմ մեր հասարակությունը թևակոխել է դասակարգային տարբերությունների հաղթահարման եզրափակիչ՝ երրորդ էտապը: Այդ էտապում տեղի են ունենում սոցիալական խոր փոփոխություններ: Այն, ամենից առաջ, կապված է քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական տարբերությունների հաղթահարման հետ:

Այդ ժամանակաշրջանի բնորոշ գծերից մեկն էլ այն է, որ էկոնոմիկայի և կուլտուրայի, սոցիալ-հասարակական հարաբերությունների զարգացման հետ միասին ավելի է ուժեղանում դասակարգային տարբերությունների հաղթահարման պրոցեսը: Սակայն անհրաժեշտ է նշել, որ դասակարգերը պատմական ասպարեզից հեռանում են ոչ թե մեխանիկորեն, այլ դիալեկտիկական զարգացման ճանապարհով: Նրանք պետք է զարգանան և կատարելագործվեն այնքան, քանի դեռ դասակարգային ձևերը չեն սպառել իրենց պատմական միսիան: Դա կլինի դիալեկտիկայի հիմնական օրենքներից մեկի՝ բացասման-բացասումի օրենքի կոնկրետ արտահայտությունը մեր հասարակության դասակարգային կառուցվածքի զարգացման պրոցեսում: «Դասակարգեր,— գրել է Վ. Ի. Լենինը,— կոչվում են մարդկանց մեծ խմբերն, որոնք տարբերվում են հասարակական արտադրության պատմականորեն որոշ սիստեմում իրենց գրաված տեղով, արտադրության միջոցների նկատմամբ իրենց ունեցած (մեծ մասամբ օրենքներով ամրապնդված և ձևակերպված) վերաբերմունքով, աշխատանքի հասարակական կազմակերպման մեջ իրենց ունեցած դերով և, հետևաբար, հասարակական հարստության այն բաժնի ստեղծման եղանակներով ու չափերով, որ իրենց տրամադրության տակ ունեն» (Երկեր, հ. 29, էջ 515):

Սոցիալիստական հեղափոխության հաղթանակով բանվոր դասակարգը և կոլտնտեսային գյուղացիությունը դառնում են արտադրության միջոցների տեր: Դա մերձեցնում և ամրապնդում է նրանց միասնությունը: Սակայն այդ չի նշանակում, որ սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաղթանակով, նույնիսկ սոցիալիզմի վերջնական հաղթանակով, վերանում են դասակարգերը կամ դասակարգային տարբերությունները:

Սոցիալիզմի ժամանակ բանվորների և գյուղացիների միջև դեռևս մնում են էական տարբերություններ, որոնք ոչ թե բնական տարբերություններ են, այլ սոցիալական, տնտեսական: Այդ տարբերությունների հիմքը կազմում են արտադրության միջոցների սեփականության երկու ձևերը: Բանվոր դասակարգը կապված է պետական, համաժողովրդական, իսկ կոլտնտեսային գյուղացիությունը՝ կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության հետ: Դա



արտադրողական ուժերի, հասարակական, արտադրական հարաբերությունների զարգացման որոշակի էտապի արդյունքն է: Կոլտնտեսային գյուղացիությունը մի շարք ցուցանիշներով ետ է մնում բանվոր դասակարգից: Այն արտահայտվում է արտադրության զարգացման, աշխատանքի մեքենայացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, կուլտուր-տեխնիկական մակարդակի զարգացման, կյանքի կենցաղային պայմանների մեջ և այլն: Սեփականության ձևերի և սոցիալ-տնտեսական այլ տարբերությունների առկայությունը պայմանավորում է տարբեր դասակարգերի գոյությունը:

Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության սոցիալ-տնտեսական տարբերությունների հաղթահարման համար անհրաժեշտ է որպեսզի արտադրության միջոցների նկատմամբ նրանք ունենան միատեսակ հարաբերություն: «Դասակարգերը ոչնչացնելու համար,— գրել է Վ. Ի. Լենինը,— պետք է ոչնչացնել բանվորի և գյուղացու տարբերությունը, բոլորին աշխատավորներ դարձնել» (Երկեր, հ. 30, էջ 122): Այստեղից երևում է, որ սոցիալիստական սեփականության երկու ձևերի միաձուլումից հետո բոլոր աշխատավորները միատեսակ վերաբերմունք կունենան համաժողովրդական միասնական սեփականության, արտադրության միջոցների նկատմամբ:

Բանվոր դասակարգը, աշխատելով պետական ձեռնարկություններում, աշխատանքի հասարակական կազմակերպման մեջ առաջատար տեղ է գրավում գյուղացիության նկատմամբ: Այն իր կազմակերպվածությամբ, աշխատանքային առաջավոր փորձով և կուլտուրայով սիստեմատիկաբար ներգործում է գյուղատնտեսական արտադրության զարգացման և կոլտնտեսականների կուլտուրական մակարդակի բարձրացման վրա: Նա կոլտնտեսային գյուղացիությանը մշտական, բազմակողմանի օգնություն է ցույց տալիս:

Բանվոր դասակարգը կոլտնտեսականների մեջ ակտիվորեն տարածում է իր տրադիցիաները: Նա կոչված է մինչև իր գիտակցության, կազմակերպվածության ու կարգապահության մակարդակը բարձրացնելու կոլտնտեսային գյուղացիությանը: Առանց բանվոր դասակարգի օգնության անհնարին է գյուղատնտեսական արտադրության մեքենայացումը: Այն բարձրացնում է գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականությունը, մեծ քանակությամբ աշխատուժ ազատելով արտադրության այդ բնագավառից: Այդ կապակցությամբ լուրջ տեղաշարժեր են կատարվում քաղաքային և գյուղական ազգաբնակչության կազմում: Այսպես, հանրապետության քաղաքային բնակչության թիվը 1939 թվականի 366,4 հազարից 1966 թվականի հունվարին հասել է 1210,3 հազարի, կամ ավելացել է ավելի քան 3,3 անգամ: Եթե քաղաքային բնակչությունը 1939 թվականին հանրապետության բնակչության ընդհանուր թվի մեջ կազմում էր 28,6 տոկոս, 1959 թվականին՝ 50, ապա 1966 թվականին հասել է 55,1 տոկոսի (Народное хозяйство Армянской ССР в 1965 году, Статистический ежегодник, 1966, стр. 7):

Ավելի արագ է աճում բանվոր դասակարգի պրոֆեսիոնալ կազմը: Այսպես, 1959 թվականին ներհատ մեքենաների և լեռնային կոմբայնների մեքենավարների թիվը, 1939 թվականի համեմատությամբ, աճել է 8,4 անգամ, էքսկավատորավարների թիվը՝ 20, շինարարական և ճանապարհային մեքենաների մեքենավարների թիվը՝ 15 անգամ և այլն· (Итоги Всесоюзной переписи населения 1959 года, Арм. ССР, 1963, стр. 83):

Արագ է աճում նաև բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մա-

*կարդակը, որի արտահայտման ձևերից մեկն էլ ռացիոնալիզատորական և գյուտարարական շարժումն է։ Եթե 1958 թվականին ռացիոնալիզատորների և գյուտարարների թիվը հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ կազմում էր 6,8 հազար մարդ, ապա 1965 թվականին նրանց թիվը հասնում էր 12,6 հազարի։ Միայն 1965 թվականին ստացվել է 17,7 հազար առաջարկություն։*

*Այդ և մյուս գործոնները որոշում են բանվոր դասակարգի աճի ընդհանուր տենդենցը, որն արտահայտվում է նրա համակողմանի զարգացման և ղեկավար դերի պահպանման մեջ։*

*Բանվոր դասակարգի քանակական և որակական աճը թույլ է տալիս զարգացնել արդյունաբերության արտադրողական ուժերը, կատարելագործել գյուղատնտեսական արտադրության միջոցները և աստիճանաբար հաղթահարել բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միջև գոյություն ունեցող տարբերությունները։*

*Այժմ կոլտնտեսությունները էլեկտրաէներգիայի օգտագործման, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման, քիմիայի լայն կիրառման շնորհիվ ավելի են մերձենում պետական տնտեսություններին։ Աստիճանաբար հաղթահարվում են պետական համաժողովրդական և կոոպերատիվ-կոլտնտեսային սեկտորների միջև գոյություն ունեցող տարբերությունները։ Դա իր արտահայտությունն է գտնում պետության կողմից կապիտալ ներդրումների, կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի քանակական ու որակական աճի մեջ և այլն։ Պետական արտադրության հետ կոլտնտեսային արտադրության մերձեցման գործում կարևոր դեր են խաղում միջկոլտնտեսային արտադրական, շինարարական կազմակերպությունները, որոնք կոլտնտեսային սեփականությունը աստիճանաբար մերձեցնում են համաժողովրդական սեփականությանը։*

*Այսպիսով, պետական և կոլտնտեսային սեկտորների արտադրողական ուժերի միջև տեղի է ունենում բարդ, փոխադարձ կապակցված դիալեկտիկական զարգացման պրոցես, որով պետք է հաղթահարվեն բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միջև գոյություն ունեցող տարբերությունները։*

*Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միջև եղած տարբերությունները հաղթահարվում են նաև հոգևոր կյանքի բնագավառում։ Այսպես. քաղաքային բնակչության գրագիտությունը 1926 թվականի 68,8 տոկոսից, 1959 թվականին հասել է 98,3 տոկոսի, իսկ գյուղական բնակչությանը՝ 30,5-ից 98,4 տոկոսի* (Итоги Всесоюзной переписи населения 1959 года, Арм. ССР, стр. 27)։

*Արագ կերպով կրճատվում են բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող քաղաքային և գյուղական բնակչության քանակական տարբերությունները։ Եթե 1939—1959 թվականների ժամանակաշրջանում բարձրագույն կրթություն ունեցող բնակչության թիվը քաղաքում ավելացել է 6,4 անգամ, թերի բարձրագույն, միջնակարգ մասնագիտական, ընդհանուր միջնակարգ և ոչ լրիվ միջնակարգ կրթություն ունեցողներինը՝ մոտավորապես 4,5 անգամ, ապա գյուղում համապատասխանաբար ավելացել է 7,1 և 5,6 անգամ։*

*Այժմ հանրապետությունում ստեղծվել է ինտելիգենցիայի մի մեծ բանակ, որն ամեն տարի համալրվում է բարձրագույն և միջնակարգ ուսումնական հաստատություններն ավարտած հազարավոր երիտասարդներով։*



*Ինտելիգենցիան, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը «ինքնուրույն տնտեսական դասակարգ չէ...»* (Երկեր, հ. 11, էջ 475), *բայց նա ունի իր առանձնահատկությունները ու զարգացման օրինաչափությունները։ Նա իր բոլոր արմատներով կապված է բանվորների և գյուղացիների հետ։ Գիտա-տեխնիկական առաջադիմության, արտադրության տեխնոլոգիական պրոցեսների բարդությունների շնորհիվ մեծ չափերով աճել է ինտելիգենցիայի դերը։ Գիտա-տեխնիկական առաջադիմության, նոր մարդու դաստիարակության համար մղվող պայքարում նա ընթանում է առաջին շարքերում, աջակցում քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունների հաղթահարմանը։*

*Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական արտադրական հարաբերությունների հետագա զարգացման ու կատարելագործման պրոցեսում անընդհատ կաճի մտավոր աշխատանքի դերը։ Այն լիովին բխում է երկրի տեխնիկա-տնտեսական ու կուլտուրական զարգացման պահանջներից։ Դա ոչ միայն չի մեկուսացնում ինտելիգենցիային, այլ ուժեղացնում է մտավոր և ֆիզիկական աշխատանքի մարդկանց սահմանագծերի ջնջումը, արագացնում բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միջև եղած տարբերությունների հաղթահարման պրոցեսը։ Բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության մեջ օրեցօր հանդես են գալիս նորարարներ, ռացիոնալիզատորներ, գյուտարարներ, որոնք զբաղվում են ոչ միայն ֆիզիկական աշխատանքով, այլև ակտիվորեն մասնակցում են արտադրողական ուժերի զարգացմանն ու կատարելագործմանը։*

*Դասակարգային տարբերությունների հաղթահարման պրոբլեմն իր մեջ ընդգրկում է նաև մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև գոյություն ունեցող տարբերությունների հաղթահարումը։ Այդ խնդրի լուծման կարևորագույն պայմանը բանվորների և կոլտնտեսականների կուլտուր-տեխնիկական մակարդակի տարբերության հաղթահարումն է, որն այսօր մեծ թափով իրականացվում է մեր երկրում։*

*Գյուղում մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև գոյություն ունեցող տարբերությունների հաղթահարման գործում վճռական դեր է խաղում գյուղատնտեսական աշխատանքն արդյունաբերական աշխատանքի տարատեսակի վերածումը։ Գյուղատնտեսական արտադրության էլեկտրիֆիկացումը, կոմպլեքսային մեքենայացումը, քիմիացումը աշխատողներից պահանջում են ոչ միայն մեքենայական ամբողջ սիստեմի կառավարման հմտություն, այլև տեխնիկա-տնտեսագիտական և ագրոնոմիական խոր գիտելիքներ։*

*Կոմունիստական հասարակության շինարարության պրոցեսում աստիճանաբար կհաղթահարվեն բանվորի և կոլտնտեսականի աշխատանքի տեխնիկական զինվածության խզումը և դրա հիման վրա կոլտնտեսային գյուղացու կուլտուր-տեխնիկական մակարդակը կմոտենա բանվորի մակարդակին։ Սակայն այդ դեռևս չի նշանակում, որ դրանով ընդհանրապես կհաղթահարվեն մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած տարբերությունները։ Ամենից առաջ անհրաժեշտ է հաղթահարել աշխատանքի միակողմանիությունը, հասնել արտադրության մեքենայացման և ավտոմատացման այնպիսի աստիճանի, որը հնարավորություն ընձեռի ներդաշնակ կերպով զուգորդելու մտավոր և ֆիզիկական աշխատանքը։*

*Երկրի լիակատար էլեկտրիֆիկացումը, արտադրական պրոցեսների*

կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, ժողովրդական տնտեսության մեջ քիմիայի լայն կիրառումը, արտադրության նոր, տնտեսապես արդյունավետ ճյուղերի բազմակողմանի զարգացումը թույլ են տալիս վերափոխել արդյունաբերական ու գյուղատնտեսական, մտավոր և ֆիզիկական աշխատանքի նյութական հիմքը, աստիճանաբար հաղթահարել բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դասակարգային տարբերությունները:

Սոցիալական առավել բարդ պրոբլեմ է մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների հաղթահարումը, որը ենթադրում է արտադրողական ուժերի, ֆիզիկական աշխատանքի աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակի զարգացման էլ ավելի բարձր աստիճան, քան այն, որն անհրաժեշտ է քաղաքի և գյուղի, բանվորի և կոլտնտեսականի միջև տարբերությունների հաղթահարման համար: Մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև գոյություն ունեցող տարբերությունների հաղթահարումը տեղի կունենա բավականին երկարատև ժամանակաշրջանում, երբ բանվորների և կոլտնտեսականների կուլտուր-տեխնիկական մակարդակը կբարձրանա տեխնիկա-տնտեսական ու ագրոնոմիական անձնակազմի, գիտության ու կուլտուրայի աշխատողների մակարդակին:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը թույլ կտա կատարելագործել սոցիալիստական արտադրական հարաբերությունները, անցնել միասնական համաժողովրդական սեփականության, ստեղծել անհրաժեշտ նյութական և հոգևոր նախադրյալներ մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև գոյություն ունեցող տարբերությունների հաղթահարման համար: Այդ պատճառով էլ նրա հաղթահարումը կլուծվի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումից հետո:

Այսպիսով, դասակարգային տարբերությունների հաղթահարման պրոբլեմի վերլուծությունը ցույց է տալիս, որ բանվոր դասակարգը և կոլտնտեսային գյուղացիությունը, ինչպես նաև նրանց ծոցից ելած ինտելիգենցիան մերձեցման ընդհանուր տենդենց ունեն: Դա կհասցնի դասակարգային տարբերությունների սահմանագծերի ջնջման: Արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողների միջև կպահպանվեն միայն այնպիսի տարբերություններ, որոնք պայմանավորված կլինեն ոչ թե սոցիալական տարբերություններով, այլ արտադրության յուրահատուկ առանձնահատկություններով:



# ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ-ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՀԱՅ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼՆ ԻԲՐԵՎ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐ

ՍԵՎՅԱՆ Վ. Գ.

Սովետական պատմագիտությունը հսկայական աշխատանք է կատարել ինչպես սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման, այնպես էլ պատմական նոր ժամանակաշրջանում կոմունիստական մամուլի դերը վեր հանելու ուղղությամբ: Հրատարակված են բազմաթիվ գիտական արժեքավոր աշխատություններ, գրված են մի շարք դիսերտացիաներ: Քիչ աշխատանք չի կատարված նաև հայ բոլշևիկյան մամուլի գիտական պատմությունը ստեղծելու բնագավառում[1]: Հրապարակված այդ ուսումնասիրություններից զատ լույս են տեսել նաև հայ պարբերական մամուլի մի քանի բիբլիոգրաֆիաներ[2]:

Այդուհանդերձ պրոլետարական-երիտասարդական մամուլի պատմությունը մինչև օրս պատշաճ գիտական ուսումնասիրության չի ենթարկված: Երիտասարդական մամուլի պատմության վերաբերյալ մեզանում չկա հրապարակված որևէ աշխատություն, պաշտպանության չի ներկայացված որևէ ուսումնասիրություն: Ավելին, հայ պարբերական մամուլի հրապարակված բիբլիոգրաֆիաներում դուրս են մնացել երիտասարդական մի շարք թերթեր, թերթիկներ և էջիկներ: Այդ պատճառով էլ հրապարակի վրա եղած ինչպես Գ. Լևոնյանի, այնպես էլ Հովհ. Պետրոսյանի բիբլիոգրաֆիաները թերի են այն իմաստով, որ լիակատար պատկերացում չեն տալիս հայ երիտասարդական մամուլի մասին:

Ուսումնասիրությունների ընթացքում մենք պարզել ենք երիտասարդական յոթ օրգաններ, որոնք չեն հիշատակված հիշյալ բիբլիոգրաֆիաներում: Դրանք են՝ «Մեր գործը» (1917 թ. Բաքու), «Բանվոր երիտասարդություն» (1920 թ. Բաքու), «Կարմիր երիտասարդություն» (1921 թ. Թիֆլիս), «Կոչնի կրոնը» (1923 թ. Թիֆլիս), «Կարմիր մայիս» (1923 թ. Թիֆլիս), «Բանվոր երիտասարդի թերթիկ» (1921 թ. Դոնի-Ռոստով), «Կարմիր երիտասարդության թերթիկ» (1921 թ. Կրասնոդար) թերթերն ու թերթիկները:

---

1 Հիշատակման արժանի են Խ. Բարսեղյանի «Բոլշևիկյան հայ պարբերական մամուլի պատմություն 1900—1920» (հայերեն և ռուսերեն հրատարակություններ), Վ. Ամիրբեկյանի «Սովետահայ տեղական մամուլը (1921—1925 թթ)», Ե. Խալեյանի «ՌՍԴԲՊ Կովկասյան միութենական օրգան «Պրոլետարիատի կռիվը» 1903—1905 թթ.», Ե. Տոներյանի «Հայ բոլշևիկյան մամուլը 1905—1907 թվականներին» աշխատանքները:

2 Տես Գ. Լևոնյան «Հայոց պարբերական մամուլը: Լիակատար ցուցակ հայ լրագրության, սկզբից մինչև մեր օրերը (1794—1934)», Երևան 1934 թ., Հովհ. Պետրոսյան «Հայ պարբերական մամուլի բիբլիոգրաֆիա» (երեք հատորով), Երևան, 1954, 1956, 1958, թթ., Խ. Բարսեղյան «Բոլշևիկյան հայ պարբերական մամուլի բիբլիոգրաֆիա 1900—1920», Երևան, 1959 թ.:

Միաժամանակ նշենք, որ այդ բիբլիոգրաֆիաներում տեղ են գտել մի շարք անճշտություններ։ Գ. Լևոնյանը իր «բիբլիոգրաֆիայում» նշում է, թե ՀԼԿԵՄ Կենտկոմի օրգան «Երիտասարդ բոլշևիկ» ամսագիրը լույս է տեսել 1925—1934 թվականներին, մինչդեռ հիշյալ ամսագրի 1—2 միացյալ համարը լույս է տեսել 1926 թ. նոյեմբեր-դեկտեմբերին և հրատարակությունը շարունակվել է մինչև 1933 թ. դեկտեմբեր ամիսը։ Հով. Պետրոսյանի «բիբլիոգրաֆիայում» նշված է, թե ՀԼԿԵՄ Կենտկոմի օրգան «Երիտասարդ կոմունիստ» թերթը լույս է տեսել 1921—1922 թվականներին, ընդ որում 1921 թ. լույս է տեսել 33 համար, 1922 թվականին՝ 40 համար։ Իրականում թերթը հրատարակվել է 1921-ի հունվարից մինչև 1923 թ. մարտ ամիսը, ըստ որում ընդամենը լույս է տեսել ոչ թե 73, այլ 79 համար։ Երևանի տպարանի կոմերիտական բջջի օրգան «Տպագրական բանվոր» թերթի մասին Հով. Պետրոսյանի «բիբլիոգրաֆիայում» նշվում է, որ այն մինչև 87-րդ համարը լույս է տեսել որպես պատի թերթ, իսկ 88-րդ համարից՝ որպես բազմատիրաժ։ Իրականում «Տպագրական բանվոր»-ը 12-րդ համարից լույս է տեսել տպագիր և միայն 1-ից մինչև 11-րդ համարն է եղել ձեռագիր։

Այս թերությունները պատմագիտության համար, ըստ էության, բացասական նշանակություն չէին ունենա, եթե երիտասարդական օրգանները ըստ արժանվույն օգտագործված լինեին ինչպես երիտասարդության հեղափոխական շարժումների, լենինյան կոմերիտմիության պատմության, այնպես էլ աշխատավորների հեղափոխական պայքարին և առհասարակ սովետական հասարակության պատմությանը նվիրված աշխատություններում։ Պետք է նշել, որ երիտասարդական թերթերն ու թերթիկները դեռևս լիովին չեն օգտագործվել նաև կոմերիտմիության պատմության տարբեր ժամանակաշրջաններին վերաբերող աշխատություններում։

Թվում է, ավելորդ է նշել, որ երիտասարդական օրգաններից շատերը, որպես կանոն, չեն հիշատակվում նաև կոմունիստական կազմակերպությունների ու ժողովրդի քաղաքացիական պատմության լուսաբանմանը նվիրված աշխատություններում։ Նման վիճակի հետևանքով միայն մամուլի պատմությունը չէ, որ տուժում է։ Դա հարցի մի կողմն է։ Կարևորն այն է, որ գիտական շրջանառությունից դուրս են մնում երիտասարդության օրգանների՝ ոչ միայն երիտասարդության անցյալի հեղափոխական գործունեությունն ու կոմերիտմիության անցած ուղին լուսաբանող էջերը, այլև անմիջականորեն հասարակական, քաղաքական մյուս կազմակերպությունների, ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու արվեստի տարբեր բնագավառների պատմությանը վերաբերող հարուստ ու հետաքրքիր նյութերը։

Ահա թե ինչու հայ երիտասարդական մամուլի պատմության ուսումնասիրությունը դառնում է անհրաժեշտություն և գիտական կարևոր նշանակություն ունի սովետական պատմագիտության համար։ Ներկա հոդվածում նպատակ ենք դրել մի քանի գծերով ցույց տալ հայ երիտասարդական մամուլի դերն ու նշանակությունը, որպես պատմագիտական հետազոտության սկզբնաղբյուրի։

Ուսումնասիրությունների ընթացքում մեզ հաջողվել է արխիվներում, գրադարաններում, բիբլիոգրաֆիական տեղեկատուներում հայտնաբերել 1917—1925 թվականներին լույս տեսած 34 անուն հայ երիտասարդական թերթ, թերթիկ և ամսագիր, երիտասարդական կազմակերպությունների 7 կոչ և թռուցիկ։ Բացի այդ, մեր ձեռքն է ընկել ոչ բոլշևիկյան պլատֆորմի երեք



թերթ և մեկ ամսագիր։ Դրանք են՝ ընդհանուր հայ աշակերտական միության օրգաններ «Միություն» (1917 թ. Թիֆլիս), «Եռանդ» (1917 թ. Շուշի) թերթերը, «Քայլեր» (1919 թ. Գանձակ) ամսագիրը և ամերիկյան որբանոցների որբաշակերտական միության օրգան «Փարոս» (1919 թ. Թիֆլիս) թերթը։

Ելնելով մեր ձեռքի տակ եղած նյութերից երիտասարդական մամուլը ենթարկել ենք հետևյալ խմբավորման։

1. 1917 թ. փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը լույս տեսած երիտասարդական պարբերականներ. ընդամենը 8 անուն[1] (աշակերտական թերթեր են 6-ը, պրոլետարական-երիտասարդական 1-ը, միօրյա 1-ը), որից Հայաստանում լույս է տեսել երեքը՝ «Սպարտակ» (1919 թ. Երևան), «Знамя школы» (1919 թ. Երևան), «Նոր սերունդ (1920 թ. Երևան)։

2. 1920 թվականի նոյեմբերից մինչև 1925 թվականն ընկած ժամանակաշրջանում լույս տեսած երիտասարդական պարբերականներ՝ 26 անուն, որից Ռուսաստանում հրատարակվել է 2, Վրաստանում՝ 3, Ադրբեջանում՝ 1, Լեռնային Ղարաբաղում՝ 1 անուն։ Այս շրջանում լույս տեսած պարբերականների ընդհանուր թվից 11-ը կենտրոնական օրգաններ են, 8-ը տեղական (գավկոմներ), 2-ը սկզբնական կազմակերպության օրգաններ են, 5-ը միօրյա թերթեր։

Ի դեպ, նշենք, որ 1851 թվականից մինչև 1917 թ. փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը Անդրկովկասի տարբեր քաղաքներում լույս են տեսել նաև մի շարք երիտասարդական-պատանեկան պարբերականներ, որոնք հրատարակվել են դեմոկրատական առաջադեմ առանձին գործիչների կողմից. դրանցում արծարծվել են պատանեկության և երիտասարդության հուզող հարցերը, բոլորովին էլ չհանդիսանալով երիտասարդական կազմակերպությունների օրգաններ։

1917—1925 թթ. հայ երիտասարդական թերթերում ամփոփված են պատանեկության և երիտասարդության կյանքի ու պայքարի, նրա հեղափոխական գործունեության վառ էջերը, աշակերտական, երիտասարդական շարժումները, կոմերիտական կազմակերպությունների հայրենանվեր աշխատանքը, անցման ժամանակաշրջանի երիտասարդ մարդու տրամադրությունները, խոհերն ու երազանքները։ Պատմաբանները հաճախ նման տրամադրությունների մասին խոսելիս վկայակոչում են այլ աղբյուրներ, որոնցում հանդես են գալիս համեմատաբար տարեց մարդիկ։ Իսկ այստեղ պատանու և երիտասարդի խոսքն է։ Նա էր կոչված կառուցելու նոր հասարակարգը և, ամենից առաջ, նա էր վայելելու կառույցը։ Ուստի շատ բան էր նշանակում նրա սրտի խոսքը մեծ երթի սկզբին։ Այս հանգամանքը իր հերթին հավաստում է երիտասարդական մամուլի դերը, որպես պատմագիտական հետազոտության սկզբնաղբյուրի։

Հայ երիտասարդական մամուլը խոշոր աշխատանք է կատարել պատանիներին ու աղջիկներին սոցիալիստական հեղափոխության դրոշի տակ համախմբելու համար։ Թիֆլիսում հրատարակվող «Նոր սերունդ» թերթի 1917 թ. դեկտեմբերի 14-ի (№ 17) համարում կարդում ենք. «Հոկտեմբերի 25-ին Ռուսաստանում կատարվեց մի հեղափոխություն, որն իր թափով եզակի է մարդկության պատմության մեջ։ Այլևս չկա տիրող դասակարգի իշխանությունը,

[1] Չհաշված ոչ բոլշևիկյան պլատֆորմի երեք անուն թերթն ու մեկ ամսագիրը։

պրոլետարիատի տիրական ձայնն է, որ տարածվում է Կարմիր Պետերբուրգից մինչև Խաղաղ օվկիանոս և Հայկական բարձրավանդակը։ Եվ այսպիսի խիզախ ընդվզումների ժամանակ չի կարող չիրականանալ նոր դպրոցի գաղափարը»։ Այնուհետև, թերթը կոչ է արել երիտասարդությանը՝ համախմբվել պրոլետարիատի շուրջը, ողջունել Հոկտեմբերյան հեղափոխությունը, որը բացել է համաշխարհային պատմության լուսավոր էջը։

Հայ երիտասարդական մամուլի դերը նշանակալից է նրանով, որ այն իր մեջ ընդգրկում է անցյալ ժամանակների դեպքերն ու իրադարձությունները վերարտադրելու համար փաստական նյութերի մի ամբողջ հարստություն, որի զգալի մասը չի արտացոլված արխիվային փաստաթղթերում։

Հայտնի է, որ սովետական իշխանության համար մղված պայքարում քաղաքական, գաղափարական և կազմակերպական մեծ դեր են խաղացել Երևանի երիտասարդ կոմունիստների «Սպարտակ» կազմակերպության արձակած կոչերն ու թռուցիկները, որոնցից շատերը մեզ չեն հասել։ Դրանցից մեկի մասին մենք գաղափար ենք կազմում (թռուցիկը բաց է թողնվել 1919 թ. ամռանը) Հատիկ Ազիզյանի «Սպարտակյանների բողոքը ազգամիջյան կոտորածների դեմ» հոդվածից, որ տպագրվել է «Ավանգարդ»-ի 1924 թվականի ապրիլի 20-ի № 19/48-ում։ «Թռուցիկը ուղղված էր բոլոր աշխատավորներին,— գրում է նա,— նրանով սպարտակյաններն իրենց բողոքն էին հայտնում կոտորածի դեմ (խոսքը Բեյուք-Վեդիի հայ ադրբեջանական ջարդերի մասին է,— Վ. Ս.) մերկացնում էին դաշնակների բոլոր գաղտնի գործերը։ Վերջում դիմում կար կառավարական զորքերի բոլոր զինվորներին, որոնց կոչ էին անում չկռվել մեր դարավոր հարևանների դեմ, խելացնոր հանցագործության գործիք չդառնալ և սվինները իրենց բախտը որոնողների դեմ չդարձնել... Դա հավասարազոր էր ռումբի պայթյունի»։

Ուսումնասիրողները երիտասարդական մամուլի էջերից հարուստ նյութեր և տեղեկություններ են քաղում կոմերիտական ժողովների, նրանցում քննարկված հարցերի, ընդունված որոշումների մասին։ Երևանի «Կարմիր երիտասարդի թերթիկ»-ը 1921 թ. փետրվարի 5-ի համարում ծավալուն ինֆորմացիա է զետեղել Կողպ գյուղի կոմերիտական կազմակերպության ժողովի մասին, որից մեզ պարզ հայտնի է դառնում, որ տվյալ ժողովին մասնակցել են կոմերիտական ղեկավար աշխատողներ Կ. Պապյանն (Կարճիկ) ու Ալեքսանդր Տեր-Բարսեղյանը, որոնք զեկուցել են «Երիտասարդ կոմունիստների դերը հեղափոխական շարժման մեջ» թեմայով։ Այդ հարցի առթիվ ընդունված որոշման մեջ ասված է.

«Երիտասարդությունը պետք է դուրս գա հին, ճահճացած միջավայրից և պիտի հետևի Ռուսաստանի կարմիր երիտասարդության օրինակին, որը համաշխարհային աշխատավորների շահերի պաշտպանությանն է նվիրվել»։

«Տպագրական բանվոր» թերթը «Կյանքը մեր բջիջում» մշտական բաժնում պարբերաբար տպագրում էր կոմերիտական ժողովների նյութերը՝ արձանագրություններն ու ընդունված որոշումները։ «Տպագրական բջիջի արտակարգ ժողովի արձանագրությունից» հոդվածում, օրինակ, որ տպագրվել է թերթի 1924 թ. մարտի 7-ի համարում, կազմակերպության քարտուղար Ահարոն Մոկացյանը պատմում է, որ 1924-ի փետրվարի 27-ին տեղի ունեցավ բջջի ժողովը, ուր քննարկման էր դրված «Գերմանիայի երեք բջիջների հետ կապ ստեղծելու մասին» հարցը։ Զեկուցումով հանդես է եկել ՀԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար Գումեդինը (Գուրգեն Մելիք-Դադայան)։ Այնուհետև, զեկուցման շուրջ



ծավալված մտքերի փոխանակությամբ հանդես է եկել 12 մարդ։ Ընդունվել է հետևյալ որոշումը. «Նամակագրության միջոցով կապ հաստատել Հայլբրոմ, Հալլե և Մանհեյմ քաղաքների թղթի արդյունաբերության մեջ աշխատող բջիջների հետ։ Միմյանց ծանոթացնել ձեռք բերված հաջողություններին ու աշխատանքի դրական փորձին»։

Մենք բերեցինք երկու օրինակ միայն, բայց չէ՞ որ երիտասարդական թերթերի մշտական բաժիններն են եղել «Կյանքը մեր Միության մեջ» «Միութենական կյանք», «Կյանքը գործարաններում և արհեստանոցներում», «Բանվորական բջիջներում», «Միության աշխատանքները գյուղում», «Մեր գավառում» և այլն, ուր սիստեմատիկաբար նյութեր են հրապարակվել երիտասարդության կյանքի, կոմերիտական կազմակերպությունների հայրենանվեր աշխատանքի, նրանց կազմակերպած միջոցառումների մասին, որոնք մեզ են հասել երիտասարդական պարբերականների միջոցով։

Երիտասարդական մամուլի էջերում հաճախ կարելի է հանդիպել կոմերիտական կազմակերպությունների ստեղծման, նրանց թվական և սոցիալական կազմի մասին տվյալների։

«Լոռվա կարմիր երիտասարդ» թերթը 1922 թ. ապրիլի 9-ի համարում, օրինակ, նշում է, որ ամբողջ գավառում այժմ հաշվվում է 485 կոմերիտական, որից 302 անդամ, 183 թեկնածու։ Կոմերիտականների ընդհանուր թվից բանվորներ են՝ 81, գյուղացիներ՝ 370, ծառայողներ՝ 20-ը, սովորողներ՝ 14 մարդ։

1923 թ. փետրվարի 3-ի համարում Նոր-Բայազետի «Կարմիր երիտասարդ» թերթը «Աշխատանքը թուրքական մասում» թղթակցության մեջ հայտնում է, որ Բասարգեչարի շրջանի ադրբեջանական գյուղերում ստեղծված է 13 կոմերիտական կազմակերպություն՝ 80 անդամներով։

«Սպարտակի ուղիով» միօրյա թերթի տվյալների համաձայն (հրատարակվել է 1932 թ. հունիսի 5-ին) Հայաստանի կոմերիտական կազմակերպության մեջ 1922 թ. կար՝ 7028, 1923 թ.՝ 6807, 1924 թ.՝ 9844, 1925 թ.՝ 12171, 1926 թ.՝ 14455, 1927 թ.՝ 19726, 1928 թ.՝ 20788, 1929 թ.՝ 25 հազ., 1930 թ.՝ 30 հազ., 1931 թ.՝ 35 հազ. և 1932 թ.՝ 52 հազ. ՀամԼԿԵՄ անդամ։

Կուսակցության և կոմերիտմիության փոխհարաբերությունների, հին կենցաղի և սովորույթների դեմ պայքարի, պատանիների և աղջիկների շրջանում տարվող աշխատանքի ձևերի ու եղանակների մասին, և առհասարակ կոմերիտական շինարարության բազմապիսի հարցերը հատուկ տեղ են գրավել երիտասարդական մամուլի էջերում։ Նրանցում տպագրվել են կուսակցության և կոմերիտմիության համագումարների, պլենումների, գավառային և շրջանային կոնֆերանսների նյութերը, կուսակցական և կոմերիտական վերադաս օրգանների շրջաբերականներն ու հրահանգները։

Երիտասարդական մամուլի էջերում տպագրվել են նաև կոմերիտմիության ծրագրի և կանոնադրության նախագծերը։ Օրինակ, Հայաստանի առաջին կոմերիտական կազմակերպության ծրագրի նախաբանը մեզ է հասել այդ կազմակերպության օրգան «Սպարտակ» թերթի միջոցով։

1921 թ. ամռանը, երբ սկսվեց կոմերիտմիության օրգանների ընտրական կամպանիան (մինչ այդ ղեկավար օրգանները չէին ընտրվում, այլ նշանակվում էին) ՀԼԿԵՄ Կենտկոմի «բյուլետենը» համարներից մեկում հրապարակեց կոմերիտմիության շրջանային և գավառային կոնֆերանսներում տրվելիք զեկուցումների թեզիսները։ Ուշադրավ են հատկապես կազմակերպական հար-

ցի մասին զետեղված թեզիսները, ուր տրված է կոմերիտմիության կառուցվածքը, ինչպես նաև շարադրված են տվյալ ժամանակաշրջանում կոմերիտական կազմակերպությունների խնդիրները։ «Կոմերիտմիության հիմքը բջիջն է,— կարդում ենք այդ թեզիսներում,— որը կազմվում է «արտադրողական» նշանացույցով։ Կոմերիտական բջիջները կատարում են քաղաքական-լուսավորական, տնտեսական և ռազմասպորտային աշխատանքներ, մասնակցում են զանազան կամպանիաներ անցկացնելու գործին, ապահովում կոմերիտականների ակտիվ մասնակցությունը պետական շինարարության ասպարեզում»[1]։

Երիտասարդական թերթերն ու ամսագրերը բազմաթիվ էջեր են նվիրել կոմունիստական կուսակցության քաղաքականության, սովետական կառավարության դեկրետների պրոպագանդմանը։ Նրանցում երիտասարդությանը պարզաբանել են կուսակցության և կառավարության որոշումների, անցկացվող միջոցառումների էությունը։

«Այժմ մեր ֆրոնտը պատերազմից անցել է տնտեսությանը,— գրում է Իջևանի «Երիտասարդ մաճկալ»-ը,— պետք է լարել բոլոր ուժերը կարգի բերելու տնտեսությունը։ Հայաստանի կառավարությունը և կոմունիստական կուսակցությունը արդեն սկսել են աշխատանքները։

Մենք՝ կոմերիտմիության անդամներս, որպես նրանց ջահել ընկերներ, նրանց գործը մեր սրտին մոտ ընդունողներ ու ապագայում էլ նրանց գործը շարունակողներ պետք է այդ աշխատանքների ժամանակ ամենաեռանդուն մասնակցություն ցույց տանք»[2]։

Պարզաբանելով նոր տնտեսական քաղաքականության նշանակությունը, Վրաստանի «Կարմիր երիտասարդություն» թերթը գրում է. «Մեր հիմնական և գլխավոր գործն է պարենտուրքի հավաքմանը ակտիվ մասնակցություն ցույց տալը։ Դրա համար մենք պետք է ամենից առաջ ագիտացիա մղենք գյուղացիության մեջ, կազմակերպելով ագիտ-կիրակնօրյակներ, հրավիրելով միության անդամների և անկուսակցական երիտասարդների շրջանային խորհրդակցություններ»[3]։

Բազմազան է եղել երիտասարդական մամուլի թեմատիկան։ Ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտներում երիտասարդության մասնակցության, կադրերի պատրաստման ու դաստիարակության, բանվոր երիտասարդության հանրակրթական ու պրոֆեսիոնալ ուսուցման և շատ ուրիշ ակտուալ հարցերը իրենց արտացոլումն են գտել երիտասարդական մամուլի էջերում։

Երիտասարդական մամուլի էջերից մենք տեղեկանում ենք, թե ինչպես առաջադեմ երիտասարդական միությունները և կոմերիտական կազմակերպությունները համառ պայքար են մղել հակահեղափոխական, նացիոնալիստական կուսակցությունների, բոլշևիկյան կուսակցության գծից բոլոր տեսակի շեղումների դեմ։

Երիտասարդական մամուլի հիմնական թեմաներից է եղել երիտասարդությանը պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելու հարցերը։

«Խորհրդային Ռուսաստանում», «Անդրկովկասում», «Խորհրդային միության երկրներում», «Արտասահմանում», «Կարմիր գծից դուրս», «Արևմուտքի երիտասարդությունը մեզ հետ» ընդհանուր խորագրերի տակ թերթերն ու ամսագրերը լուսաբանել են երիտասարդության իրական վիճակը, նրա կյանքն ու գործունեությունը, պրոպագանդել Ռուսաստանի և Անդրկովկասի եղբայրական հանրապետությունների երիտասարդության նվաճումները։

Հայ երիտասարդական թերթերի էջերում Սովետական Ռուսաստանը հանդես է գալիս, որպես օրինակ, որպես ուսուցիչ, որպես կառուցման և ստեղծագործության ուղեցույց։ Հայ երիտասարդությունը նոր կյանքի սեմին ուսուցիչներ էր որոնում, ելման ու վերելքի ուղիներ հարթում։ Եվ հենց այդ հարցում էլ նրան օգնության էր հասնում Ռուսաստանի կոմունիստական երիտասարդության հարուստ փորձը։

Հայ երիտասարդական մամուլի էջերում հանդես են եկել կուսակցական և պետական ականավոր գործիչներ Ա. Մյասնիկյանը, Ս. Կասյանը, Ս. Լուկաշինը, Ա. Հովհաննիսյանը, Ա. Մռավյանը, Ա. Խանջյանը և ուրիշներ։

Երիտասարդական մամուլի էջերում իրենց առաջին ստեղծագործություններով հանդես են եկել Ե. Չարենցը, Ա. Բակունցը, Գ. Սարյանը, Վ. Ալազանը, Ն. Զարյանը, Գ. Մահարին, Վ. Նորենցը, Սարմենը, Միրասը, Գ. Բեսը, Ա. Շայրոնը, Ս. Տարոնցին և սովետահայ ուրիշ գրողներ ու բանաստեղծներ։

Երիտասարդական մամուլի միջոցով հայ ընթերցողին է հասցվել ռուս և եվրոպական գրականության շատ ներկայացուցիչների գործերը։

Երիտասարդական մամուլի էջերում լայնորեն լուսաբանվել է բանվոր և գյուղական երիտասարդության գրական գեղարվեստական ստեղծագործությունները։

Մենք ընթերցողին ներկայացրինք հայ երիտասարդական մամուլի, որպես պատմագիտական հետազոտության սկզբնաղբյուրի մի քանի դրվագներ միայն։ Հարկավ, հայ երիտասարդական մամուլի ուսումնասիրությունը անհրկրա է, քանզի այն աշխատավոր երիտասարդության հեղափոխական պայքարի, լենինյան կոմերիտմիության անցած ուղու տարեգրությունն է, որն իր մեջ է առնում սովետական երիտասարդության, նրա ավանգարդ լենինյան կոմերիտմիության հերոսական պատմության փառավոր էջերը։

Վերջում կուզենայինք մի ցանկություն հայտնել։ Խոսքը վերաբերում է ընդհանրապես մամուլի, մասնավորապես երիտասարդական մամուլի պահպանմանը։ Բանը նրանում է, որ անցյալ ժամանակներից մեզ հասած շատ հազվագյուտ թերթեր ու ամսագրեր հանրապետության (և ոչ միայն հանրապետության) գրապահոցներում, արխիվային ֆոնդերում, գրադարաններում պահվում են անխնամ։ Դրանց մի մասը խունացել է, առանձին էջեր պատառոտվել, դարձել են դժվար ընթեռնելի։

Կան երիտասարդական մի շարք թերթեր ու ամսագրեր, որոնց առանձին համարներ չկան, օրինակ, Մյասնիկյանի անվան հանրապետական գրադարանում, մինչդեռ դրանք կան մատենադարանում և ՄԼԻ-ի հայկական ֆիլիալի գրադարանում, կամ հակառակը։

Ուստի լավ կլիներ, կազմակերպել դրանց վերահրատարակությունը, կամ հանել ֆոտոպատճենները։ Դա մի կողմից հնարավորություն կտար, որը և ամենակարևորն է, ապահովելու այդ պարբերականների պահպանությունը, մյուս կողմից բոլոր գրադարանները ձեռք կբերեին դրանց լրիվ (համենայն դեպս պահպանված օրինակների) կոմպլեկտը։

1 «Բյուլետեն», № 1, հուլիսի 24, 1921 թ., Երևան։

2 «Երիտասարդ մաճկալ», № 4, մայիսի 19, 1922 թ., Իջևան։

3 «Կարմիր երիտասարդություն», № 27, սեպտեմբերի 25, 1921 թ. Թիֆլիս։

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



# ՀՐԱՊԱՐԱԿԻ ՎՐԱ Է ՍՊԱՍՎԱԾ ԳԻՐՔԸ

Հայ ժողովրդի անցյալ դարի պատմությունն իր վրա է բևեռել ինչպես եվրոպական ու ռուսական, այնպես էլ առանձնապես հայ և թուրք պատմաբանների սևեռուն ուշադրությունը: Եվ դա պատահական չէ: 19-րդ դարը հայ ժողովրդի գոյատևման ամենակնճռոտ, հակասություններով, պայքարով ու ողբերգություններով լի ժամանակաշրջանն է, որի պատմության մարքս-լենինյան գնահատումը մեր պատմագիտության հրամայական պահանջն է: Մի շարք լուրջ պատճառների հետևանքով մինչև օրս սովետահայ պատմագիտությունը ցավոք, տակավին չի մշակել մեր ժողովրդի խոշորագույն հատվածի՝ արևմտահայության լիակատար ու գիտական պատմությունը: Վերոհիշյալ խնդրի ակտուալությունը և կարևորությունը թելադրված է նաև այն հանգամանքով, որ օտարերկրյա շատ պատմաբաններ, ելնելով դասակարգային շահերից և իրենց պետությունների նվաճողական քաղաքականությունից, վոլյունտարիստական մոտեցում են ցուցաբերել փաստերի ու դեպքերի գնահատմանը, իսկ թուրք պատմագրությունը ուղղակի խեղաթյուրել, նենգափոխել և այսօր էլ շարունակում է կեղծել Թուրքիայի և նրա տիրապետության տակ ապրած հնագույն ժողովուրդների հազարամյա պատմությունը:

Ահա թե ինչու հարկ է ողջունել Հայաստանի գիտությունների ակադեմիայի պատմության ինստիտուտի և հրատարակչության նախաձեռնությունը, որոնք վերջերս լույս ընծայեցին Հայկ Ղազարյանի Արևմտահայերի սոցիալ-տնտեսական և քաղաքական կացությունը 1800—1870 թթ. արժեքավոր մենագրությունը, որը երիտասարդ գիտնականի երկար տարիների տքնաջան աշխատանքի արդյունքն է, մի լուրջ ներդրում՝ սովետահայ պատմագիտության մեջ.

Հ. Ղազարյանի աշխատությունը նվիրված է զարգացման ֆեոդալական աստիճանի վրա գտնվող թուրքական բռնակալության ծանրագույն լծի տակ կքած հայ ժողովրդի արևմտյան հատվածի 1800—1870-ական թթ. տնտեսական և սոցիալ-քաղաքական կյանքի բազմապիսի և բազմաբնույթ հարցերի քննարկմանն ու վերլուծությանը, աշխատություն, որն իր հարցադրումների նորությամբ, արխիվային և հրապարակի վրա եղած նյութերի ընդգրկմամբ, խնդիրների լուծման գիտականությամբ պատշաճ տեղ կգրավի մեր պատմագրության մեջ: Հեղինակը ընթերցողի առջև վերակենդանացնում է 19-րդ դարի շուրջ ութ տասնամյակների Թուրքիայի և առանձնապես Արևմտահայաստանի սոցիալ-տնտեսական, քաղաքական ու մշակութային կյանքի ընդհանրական պատկերը:

Ամենից առաջ պետք է ընդգծել, որ աշխատությունը շարադրելիս հեղինակը հետևողականորեն ղեկավարվել է մարքս-լենինյան մեթոդոլոգիայով: Արտադրահարաբերությունների զարգացումը, ամբողջությամբ վերցրած Արևմտահայաստանի և գաղթօջախների սոցիալ-տնտեսական, քաղաքական կացությունը, դասային ու դասակարգային կառուցվածքը, ազատագրական շարժումները, հասարակական-քաղաքական հոսանքների վայրիվերումները, որոնք լայն ու համակողմանի վերլուծության են ենթարկվում աշխատությունում, հետևողականորեն քննարկվում են օրգանական կապի ու միասնության մեջ, մի բան, որ հեղինակին հնարավորություն է ընձեռել գիտական պատասխան տալու մինչև այժմ լուծման կարոտ և շատ դեպքերում աղավաղված՝ մի շարք կնճռոտ հարցերի:



Աշխատության հեղինակը միանգամայն տեղին, առավել մանրակրկիտ հետազոտության է ենթարկում արևմտահայ հատվածի քննարկվող ժամանակաշրջանի պատմության առանձնապես այն դրվագները, որոնք ինչ-ինչ պատճառներով դուրս են մնացել սովետահայ պատմագիտության տեսադաշտից, գիտական շրջանառության մեջ է դրել բազմաթիվ նոր փաստեր ու վավերագրեր, արժեքավորել դրանք և այդ հիման վրա արել մի շարք նոր ու հիմնավոր եզրահանգումներ:

Ուսումնասիրության առաջին բաժինը նվիրված է 1800—1830 թթ. Արևմտահայաստանի և Հայկական Կիլիկիայի սոցիալ-տնտեսական և քաղաքական վիճակին. Նյութի խորագիտությամբ վերլուծված են այդ ժամանակահատվածում ժողովրդի սոցիալ-տնտեսական և քաղաքական կյանքում կատարված այն տեղաշարժերը, որոնք հասցրին «Թանզիմաթի» հրապարակմանը:

Համադրելով բազմաթիվ հակասական փաստերն ու տվյալները, նա համոզիչ կերպով ցույց է տալիս, թե ինչպիսի կարևոր դեր էր խաղում երեք միլիոնանոց արևմտահայությունը (առանձնապես վեց հարյուր հազար քաղաքաբնակները), զարգացման համեմատաբար ավելի ցածր աստիճանի վրա գտնվող օսմանյան կայսրության տնտեսական կյանքում: Այս բաժնում հեղինակը առանձնահատուկ տեղ է հատկացնում հարկային հարստահարություններին, սոցիալական ու ազգային ճնշումներին, հայերի քաղաքական իրավազրկության հարցերին:

Բազմաստիճան հարկային դաժան սիստեմը՝ ամուսնության հարկից մինչև հանգուցյալի թաղման թույլտվության հարկը, հյուծում, քայքայում էին գյուղացիության և քաղաքային բնակչության տնտեսությունը: Խոսքն, իհարկե, միայն այն մասին չէ, թե հարկահավաքության ժամանակ պաշտոնական անձանց կողմից թույլ էին տրվում օրինազանցություններ: Գոյություն ունեցող հարկային սիստեմը, նրա բնույթը, հեղինակի բերած բազմաթիվ ցնցող փաստերի վկայությամբ, ողբերգական վիճակի էին հասցրել արևմտահայությանը, պարբերաբար կործանում էին երկրի արտադրաուժերը:

Դրությունն ավելի օրհասական էր քրդահպատակ վայրերում, որտեղ, հեղինակի վկայությամբ, քուրդ բեկերը «օրինականից» բացի, բնակչությունից գանձում էին այնքան, որքան ցանկանային, որքան կարողանային: Եթե այս ամենին ավելացնենք նաև այն, որ արևմտահայության ուսերին ծանր բեռի նման նստած էր նաև եկեղեցու և հայ հոգևորականության հարկապահանջությունն, ապա պատկերն ավելի լրիվ կլինի:

Բանը, սակայն, տնտեսական հարստահարումով ու կեղեքումով չէր վերջանում: Օսմանյան կայսրության տերիտորիայում անլուր չափերի էին հասնում քրիստոնյա ժողովուրդների ազգային ճնշումները և անձի արժանապատվության ոտնահարումները: Հեղինակը բազմաթիվ և անհերքելի փաստերի միջոցով ապացուցում է, որ արևմտահայությունը ենթակա էր ազգային ու քաղաքական բիրտ ճնշումների, կրոնաբարոյական անարգանքի, մարդկային արժանապատվության սանձարձակ ոտնահարման, որ այստեղ անապահով վիճակում էր հայի ոչ միայն սեփականությունը, այլև ամեն րոպե անարգանքի վտանգի տակ էր նրա ընտանիքի պատիվը, ընդհուպ մինչև թաղման արարողությունը:

Մենագրության առաջին բաժնում Ղազարյանն առավել մեծ տեղ է հատկացնում արևմտահայ քաղաքային բնակչության կյանքի, քանակի, նրա տիրապետած տնտեսական մարզերի բնութագրության, արհեստագործության և առևտրի պատմության ու մի շարք այլ հարցերի մեկնաբանմանը: Եվ դա ինքնանպատակ ու պատահական չէ: Չնայած մենագրության առաջաբանում հեղինակը համեստորեն գրում է, որ իր «նպատակներից դուրս է սպառիչ քննադատության ենթարկել ժամանակակից թուրք պատմագրության կեղծ կոնցեպցիան», այնուամենայնիվ, ինչպես այս բաժնում, այնպես էլ ամբողջ աշխատությունում բերված փաստական հարուստ նյութը՝ նոր վավերագրերն ու փաստաթղթերը, հեղինակի կատարած գիտական ընդհանրացումները մարքսիստական պատմագրության դիրքերից՝ օբյեկտիվորեն հիմնահատակ խորտակում են թուրք ռեակցիոն պատմաբանների մտահնար շինությունը:

Ի պատիվ հեղինակի պետք է ասել, որ նա փաստական հարուստ նյութի հմուտ օգտագործմամբ է քննարկում հայ ժողովրդի պատմության կնճռոտ շատ հարցերը, աշխատում է օբյեկտիվորեն գնահատել պատմական դեպքերը, առանձին խավերի ու կազմակերպությունների գործունեությունը, ձգտելով ամեն կերպ հեռու մնալ միակողմանիությունից: Այս առավել ցայտունությամբ է դրսևորում ազգային բուրժուազիայի, հայ եկեղեցու, հասարակական-քաղաքական հոսանքների գնահատման հարցում:

Մենագրության հաջորդ բաժնում հեղինակը բազմակողմանի քննության է ենթարկում 1830—1870 թվականների արևմտահայության պատմության առանցքային հարցերը, փաստական հարուստ նյութի հիման վրա վերլուծում է արևմտահայերի սոցիալ-տնտեսական, քաղաքական կացությունը, տնտեսական ու սոցիալական հարաբերություններում կատարված տեղաշարժերը.

Աշխատությունում լայն տեղ է հատկացված պոլսահայ ու զմյուռնահայ համայնքների պատմությանը, Ազգային սահմանադրության հաղթանակի համար արևմտահայ էսնաֆական կազմակերպությունների խաղացած դերին, պանդխտության պատճառների բացահայտմանն ու դարի կեսերին Պոլիս գաղթած հայ պանդուխտների ապրելակերպին և այլն։

Անցյալ դարի 40—50-ական թվականներին Թուրքիայի կենտրոնական կառավարությունը ջանքեր է գործադրում դերբեյական անարխիային վերջ տալու համար։ Հեղինակը ցույց է տալիս թե ինչպես հայ, հույն, սլավոն ծագում ունեցող առևտրական բուրժուազիան օժանդակություն էր ցույց տալիս կառավարությանը այդ հարցում։ Միանգամայն ճիշտ է նա, որ ենիչերիական զորամիավորումների և քրդական դերբեյությունների ոչնչացումը դրական դեր ունեին Թուրքիայի ներքին կյանքում և կյանքի ու ունեցվածքի որոշ ապահովություն են բերում հպատակ ժողովուրդներին։ Դրա հետ մեկտեղ Ղազարյանը տնտեսական, սոցիալական ու քաղաքական կյանքից վերցրած անհերքելի փաստերով բացահայտում է «Թանզիմաթի», ինչպես նաև թուրքական կառավարության հրաչակած մյուս ռեֆորմների խաբուսիկ բնույթը, որոնք, հեղինակի դիպուկ բնութագրությամբ «իրավական տեսակետից վերածվում էին թղթյա խոստումնագրի»։ Դրանք իրավազուրկ ռայայի մոտ միայն անորոշ պատրանքներ առաջացրին և ուրիշ ոչինչ։

Հեղինակը նոր և ընդունելի մեկնաբանություն է տալիս դարերի խորքից եկող հայ-քրդական ու հայ-թուրքական հարաբերություններին։ Ցույց տալով դրանց ընդհանուր կողմերը, միաժամանակ նա ընդգծում է, որ եթե առաջինը մեծ մասամբ տնտեսական կերպարանք ունեին, ապա երկրորդը՝ հիմնականում քաղաքական, որը կերպարանափոխվելով, նոր ու «հայաջինջ» բովանդակություն էր ստանում։

Միանգամայն ճշմարիտ և գիտականորեն հիմնավորված է հեղինակի այն եզրահանգումը, որ ետթանզիմաթյան շրջանում կատարված բարեփոխությունները, հայերի կարճատև աշխուժությունը միայն ժամանակավոր ու անցողիկ բնույթ ունեին, որ կառավարության կողմից հրահրվող ազգամիջյան ատելությունը, այլադավան հպատակների ուծացումը, պանթուրքիստական բուրժուազիայի շահերից ելնելով ասիական Տաճկաստանի հիմնիվեր համաձուլումը «մոլի նացիոնալիստ» թուրք արիստոկրատների, սուլթանների քաղաքականության գլխավոր նպատակն էր։

Բազմաթիվ հավաստի փաստերի մանրազնին ու խոր գիտական վերլուծության հիման վրա աշխատության հեղինակը ծառանում է պատմագրության մեջ երկար ժամանակ տիրապետած այն կարծիքի դեմ, թե մինչև 1890-ական թվականները օսմանյան բռնապետությունը բավարարվում էր հայերի միայն ուծացմամբ, սոցիալ-քաղաքական ճնշումների ուժեղացմամբ, որ եթե չլինեին հայդուկային խմբերը, չկազմակերպվեին հայ ազգային կուսակցությունները, կամավորական ջոկատները, ապա թուրք սուլթանները չէին կազմակերպի հայկական ջարդեր։ Հեղինակի վկայակոչած բազում փաստերի վկայությամբ իրողությունն այն է, որ թուրք բռնապետությունը հայերի բնաջնջման պլանավորված ծրագիր էր մտահղացել այդ կազմակերպությունների ու խմբերի երևան գալուց շատ առաջ։ Որ դա իրոք պլանավորված քաղաքականություն էր, ապացուցում է հեղինակի վկայակոչված բազմաթիվ և անկապտելի փաստերից թեկուզ և մեկը։ «...Պետական իրավունքը կը պահանջե,— դեռևս 1879 թվականին գրում էր Աբդուլ Համիդի մեծ վեզիր Քյամիլ փաշան,—որ որևիցե կասկածելի տարրը անհետ ընենք, որպեսզի ապագան ապահովենք, ուրեմն այդ հայ ազգը վերցնելու, անհետ և անտես ընելու ենք։ Եւ այդ ի գլուխ հանելու համար բան չի պակսիր մեզ, ամէն գործիք պատրաստ ունինք, քուրդ, չերքեզ, կուսակալ, դատավոր, հարկահան, ոստիկան, վերջապես ամենայն ինչ, կրոնական պատերազմ մը կը հրատարակենք և դիւրին պատերազմ մը կը հրատարակենք և դիւրին պատերազմ այնպիսի ազգի մը դէմ, որ ո՛չ զէնք ունի, ո՛չ զինուորութիւն և ո՛չ պաշտպան» (էջ 356)։

Որքան դառն լինի ճշմարտությունը և որքան ցինիկ թուրք բարձրաստիճանավորի մտահղացած հայաջինջ ծրագիրը, պատմական իրողությունն, այնուամենայնիվ, այդ է։

Մինչև հիմքերը մերկացնելով օսմանյան բռնապետության հայաջինջ քաղաքականությունը, հեղինակը միաժամանակ բացահայտում է արևմտյան մեծ տերությունների դիվանագիտական խաղը «հայկական հարցի» շուրջը։ Նա համոզիչ կերպով ապացուցում է, որ եվրոպական քրիստոնյա մեծ տերությունները հետամուտ էին ոչ թե հավատակիցներին թուրքական յաթաղանից փրկելուն, այլ Մերձավոր Արևելքի այդ շատ կարևոր հանգուցակետում տնտեսական ու ռազմաստրատեգիական առավել հարմար հենակետեր գրավելուն. Նրանք, ինչպես նկատում է հեղինակը, հայերին փաստորեն դիտում էին իբրև մանրադրամ, հեռուն գնացող իրենց նպատակները իրագործելու ճանապարհին։ Աշխատությունում միաժամանակ բացահայտված է դարի երկրորդ կեսին «հայկական հարցի» նկատմամբ ցարական Ռուսաստանի վարած քաղաքականության մեջ կատարված փոփոխությունները։

Արևմտահայերի սոցիալ-տնտեսական կացու-



թյան վերլուծությունը հեղինակի համար հիմք է ծառայել բացահայտելու նրանց հասարակական կյանքում կատարված տեղաշարժերը, որոնք հասցրին ազգային ազատագրական շարժումների ծավալմանը, արևմտահայ իրականության մեջ հասարակական-քաղաքական հոսանքների երևան գալուն, ազգային զարթոնքին։

Աշխատությունում միանգամայն իրավացիորեն լայն տեղ է հատկացված արևմտահայերի ազգային ազատագրական շարժումներին, որտեղ հեղինակը նորահայտ փաստերի մանրախույզ քննական վերլուծության հիման վրա հիմնավորում է Զեյթունի ապստամբության հասարակական-քաղաքական դրդապատճառները, նրա կապը նախորդ և իր ժամանակակից ազատագրական շարժումների հետ, ընդգծելով հատկապես այն խոշոր դերը, որ ունեցան հիշյալ ժամանակաշրջանի ազատագրական շարժումները ազգային զարթոնքի համար։ Հեղինակը միանգամայն իրավացիորեն գրում է, որ «Ուլնիան դառնալու էր հայ ժողովրդի ազատաբաղձության խորհրդանշանն ու ներշնչման աղբյուրը» (էջ 484)։ Եվ իրոք, 1862 թվականի Զեյթունի ապստամբությունը լայն արձագանք գտավ հայ իրականության մեջ, համազգային նշանակություն ձեռք բերեց և դարձավ ոգեշնչման աղբյուր թուրքական բռնապետության ճիրաններում հեծեծող մի աշխատասեր ու ազատաբաղձ ժողովրդի համար։

Մենագրությունում մանրազնին վերլուծության է ենթարկված 19-րդ դարի 50—60-ական թթ. արևմտահայ իրականության մեջ գոյություն ունեցող հասարակական-քաղաքական հոսանքների պատմությունը։ Աշխատության այս, ինչպես նաև նախորդ հատվածները, արժեքավոր են ոչ միայն փաստական հարուստ նյութի առկայությամբ, այլև հարցադրումների ինքնատիպությամբ, առաջադրված խնդիրների հանգամանալի վերլուծությամբ, նոր ու համոզիչ տեսակետներով։ Գնալով որոնումների նոր ուղիով և հենվելով փաստերի ընձեռած հնարավորությունների վրա, Հ. Ղազարյանը վերանայում է մեր պատմագրության մեջ իշխող կոնցեպցիան և անցյալ դարի 50—60-ական թթ. արևմտահայ իրականության մեջ տարբերանշում և հիմնովին ապացուցում է հասարակական-քաղաքական չորս հոսանքների՝ կղերա-ամիրայական, լիբերալ-բուրժուական, ազգային-պահպանողական և ազգային-դեմոկրատական հոսանքների առկայությունը։ Հեղինակը ոչ միայն տարբերանըշում, այլև տալիս է հասարակական-քաղաքական այդ հոսանքների ընդհանուր բնութագիրը, նրանց ղեկավարների ճշտված դիմապատկերը։ Այստեղ ևս հեղինակը հանդես է բերում ոչ միայն նյութի իմացություն, այլև քննարկվող հարցերին բազմակողմանի, դիալեկտիկական մոտեցման ունակություն. Նա պատմական դեմքերը ու հասարակական-քաղաքական հոսանքները քննարկում է նրանց գործունեության դրականի ու բացասականի դիալեկտիկական միասնության մեջ, բացահայտում նրանց գործունեության հակասական կողմերը, այն շահերի տարբերությունները, որոնց արտահայտիչներն են այդ հոսանքները։

Մենագրության հեղինակի համար չկան բացարձակ ստատիկ վիճակ, քարացած, մեռած փաստեր։ Խոսելով հասարակական-քաղաքական հոսանքների մասին նա ոչ թե արձանագրում է փաստը, այլ ելնելով փաստերից նրանց գործունեությունը քննարկում է իրենց դինամիկայի, էվոլյուցիայի մեջ, տեսնելով այդ հոսանքների ներկայացուցիչների տատանումները, վերընթացն ու վայրընթացը։ Հենց այդ դիրքերից էլ նա քննարկում է կղերա-ամիրայական հոսանքի էվոլյուցիան։

Իր դինամիկայի, մակընթացության ու տեղատվության միասնության մեջ է քննարկում հեղինակը նաև լիբերալ-բուրժուական հոսանքի գործունեությունը։ Նա ճիշտ է նշում, որ այս հոսանքի ներկայացուցիչները տարված արևմտաեվրոպական լիբերալ հովերով, պայքարելով կղերա-ամիրայական հոսանքի դեմ և շփվելով ու գործակցելով պոլսահայ էսնաֆական տարրերի հետ, մասնակի դեմոկրատական մղումներ ստացան։ 19-րդ դարի 50—60-ական թթ. այդ հոսանքը գլխավորող «լուսավորական» սերունդը, որն իր հետ բերել էր եվրոպական գաղափարներ և ձգտում էր կյանքի մի շարք բնագավառներում բարեշրջումներ կատարել, որոշակի պրոգրեսիվ դեր խաղաց արևմտահայության գրական ու մշակութային կյանքում։ Այդ ամենի հետ մեկտեղ Հ. Ղազարյանը բացահայտում է այդ հոսանքի ռեակցիոն շրջադարձը, երբ Ազգային սահմանադրությունը դեմոկրատացնելու պահանջով հրապարակ իջան ժողովրդական լայն մասսաները։ Լիբերալ-բուրժուական հոսանքը հեռու մնաց ժողովրդական շարժումներից, քաղաքական-սոցիալական պայքարից։

Միանգամայն նոր և ուրույն մոտեցում է ցուցաբերում Հ. Ղազարյանը ազգային պահպանողական հոսանքի և նրա գործունեության գնահատման հարցին։ Հեղինակի ճիշտ բնորոշմամբ այդ հոսանքը ներկայացնում էր գավառահայ բուրժուազիայի ազգային պահպանողական հայացքները։ Գործելով բուն ժողովրդի մեջ, որն իր վրա ամենից ավելի էր կրում և զգում տնտեսական ու քաղաքական ճնշման բոլոր զարհուրանքները, այդ հոսանքի ներկայացուցիչները և ամենից առաջ Մ. Խրիմյանը, Գ. Սրվանձտյանցը, Երեմիա Տևկանցը և ուրիշներ, մի կողմից պաշտպանելով գավառահայ բուրժուազիայի շահերը, իսկ մյուս կողմից իրենց գաղափարական սնունդը ստանալով գավառահայ իրա-

# ՄՆԱՑՈՒՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆ

Հրապարակի վրա է ճանաչված գրականագետ, բանասիրական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Էդվարդ Ջրբաշյանի Աշխարհայացք և վարպետություն գիրքը, որտեղ զետեղված են հեղինակի ուսումնասիրությունները՝ նվիրված էսթետիկայի, գրականության տեսության ու պատմության հարցերին։

Գրքի առաջին մասում ներկայացված են հեղինակի հոդվածները՝ նվիրված մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, Պլեխանովի էսթետիկական ժառանգության հարցերին, լուսաբանված են Բելինսկու հայացքները գրական ժանրերի զարգացման մասին։ Բնութագրելով արվեստի հարցերի մեկնաբանությունը Մարքսի և Էնգելսի երկերում, հեղինակը տեղին է ընդգծում մարդկային հանճարի տիտանների գեղարվեստասիրությունը։ Գիտական կոմունիզմի հիմնադիրների գեղարվեստական նախասիրություններն ընդգրկում են արվեստի զարգացման բոլոր հիմնական փուլերը՝ անտիկ աշխարհից, միջին դարերից ու վերածնունդից մինչև XIX դարի ստեղծագործական հեռանկարներն ու տեսությունները, իրականության գեղարվեստական յուրացման ընդհանուր հարցերից մինչև կոնկրետ երկերի վերլուծությունը։ Գրքում իրավացի է ասված, որ «ճիշտ է, մարքսիզմի կլասիկները չեն գրել էսթետիկայի գիտական հիմունքները սիստեմատիկորեն շարադրող մի ամբողջական աշխատություն կամ չեն ձգտել տալ պատրաստի ու վերջնական պատասխաններ արվեստի պատմության ու տեսության բոլոր խնդիրներին, բայց նրանք տվել են այն, ինչ ամենից կարևորն է գիտական էսթետիկայի համար՝ նրա տեսական ու մեթոդոլոգիական սկզբունքների հիմնավորումը»։

Հեղինակը հանգամանորեն շարադրում է արվեստի հարաբերական ինքնուրույնության մարքսիստական ըմբռնումը, վերհանում արվեստի զարգացման օրինաչափությունների դիալեկտիկան։ Ռեալիստական արվեստն ընդունակ է հասնելու իրականության պատմականորեն ճըշմարտացի վերարտադրության, նրա զարգացման հեղափոխական տենդենցների բացահայտման՝ նույնիսկ հեղինակի քաղաքական նախապաշարումներին և սոցիալական համակրանքներին հակառակ։

Բովանդակալից էջեր են նվիրված Վ. Ի. Լենինի գրական-գեղարվեստական ժառանգությանը, ուր հատուկ տեղ են գրավում նրա Լև Տոլստոյին նվիրված գործերը։ Լենինը և Տոլստոյի մասին ուսումնասիրության մեջ Ջրբաշյանը ցույց է տալիս մեծ գրողին տված լենինյան բոլոր գնահատականները, որոնք բխում են Տոլստոյը և հեղափոխությունը կենտրոնական հարցից։ Գրքում արդարացի է ասված. հենվելով արտացոլման տեսության վրա, Լենինը ցույց տվեց, որ Տոլստոյի ստեղծագործության և ուսմունքի բոլոր առանձնահատկություններն արտացոլում են ռուսական առաջին հեղափոխության պատմական յուրահատկությունը, նրա ուժն ու թուլությունը։

Մարքս-լենինյան գեղագիտության զարգացման և հիմնավորման գործում մեծ են Գ. Վ. Պլեխանովի ծառայությունները, որի գիտական ժառանգությունը մի ժամանակ մոռացության էր տրված։ Գրախոսվող գրքում ընթերցողը հետաքրքրությամբ կկարդա մարքսիզմի ականավոր պրոպագանդիստի էսթետիկական ժառանգությանը նվիրված հոդվածը, որտեղ շարադրված են Պլեխանովի հայացքներն արվեստի ծագման ու զարգացման հիմնական օրինաչափությունների մասին։

Հերքելով իդեալիստական էսթետիկայի հակագիտական դրույթը, թե արվեստն առաջացել է խաղից («Շիլլեր-Սպենսերի տեսությունը»), Պլեխանովը ցույց է տալիս, որ աշխատանքը միշտ նախորդում է խաղին ու արվեստին։ Ճիշտ է հեղինակի դիտողությունը, թե՝ «Արվեստի ծագման պլեխանովյան մեկնաբանությունը այն կարևոր դրույթներից մեկն է, որով նա հարըստացրեց մարքսիստական էսթետիկան»։ Միաժամանակ հեղինակը տեղին է քննադատում Պլեխանովի ոչ ճիշտ բնորոշումները գեղագիտական առանձին երևույթների մասին։ Բացի էսթետիկական ընդհանուր հարցերից, Պլեխանովը զբաղվել է արվեստի ու գրականության ամենատարբեր հարցերով։ Ընթերցողն, անշուշտ, ուսանելի շատ բան կքաղի հոդվածի և այն էջերից, որտեղ խոսվում է Տոլստոյի և Գորկու ստեղծագործությունների պլեխանովյան գնահատականների մասին։ Հեղինակը ճիշտ է նկատում, որ Պլեխանովի էսթետիկական և գրականքննադատական հոդվածներն աչքի են ընկնում ոճի և շարադրանքի հստակությամբ, կենդանությամբ, պատկերավորությամբ և բանավեճային կրքով։ Նույնիսկ ամենաբարդ գեղագիտական և փիլիսոփայական հարցերի մասին խոսելիս նա կարողանում է պահպանել խոսքի բացառիկ պարզությունը, ձևակերպումների որոշակիությունը, աշխատության բոլոր մասերի տրամաբանական կապն ու հետևողականությունը։

Ջրբաշյանի ուսումնասիրություններն արձագանքում են գրական-հասարակական կյանքի հրատապ խնդիրներին, պատասխանում չլուծված որոշ հարցերին։ Բելինսկին գրական ժանրերի զարգացման մասին հոդվածում հեղինակի հարցադրումները և եզրահանգումները համահնչում են մեր օրերի արվեստի առջև ծառացած պրոբլեմներին։ Հայտնի է, որ մեծ քննադատը ստեղծագործության ժանրային նկարագիրը համարում էր ոչ թե արտաքին, անկարևոր մի հանգամանք, այլ նրա բովանդակալից ձևի էական տարրերից մեկը։

Հեղինակը պաշտպանում է Բելինսկու այն կարծիքը, թե նոր ժամանակների հասարակության կյանքի ամենալայն և խոր արտացոլման միջոցը վեպն է, որի զարգացումը XIX և XX դարերի գրականության հասունության ու խոստումնալից ապագայի անհերքելի հայտանիշն է։

Գրականության պատմություն ու տեսություն բաժնում ներկայացված ուսումնասիրությունները նվիրված են հայ գրականության առանձին ոլորտների գիտական վերլուծությանը։ Այստեղ առավել ցայտուն է դառնում հեղինակի խորիմացությունը։ «Մի թեմայի երեք լուծում» հոդվածում հեղինակը իրավամբ գտնում է, որ կյանքի թելադրանքով «...թեմաներն էլ երբեմն կարող են «ժառանգաբար փոխանցվել» գրական մի սերնդից մյուսին, ենթարկվելով նորանոր մշակումների»։ Թեման համանման է Րաֆֆու «Ոսկի աքաղաղ», Շիրվանզադեի «Գործակատարի հիշատակարանից» և Թումանյանի «Գիքորը» ստեղծագործություններում, — գյուղացի կամ գավառացի պատանու ճակատագիրը քաղաքում, առևտրական բուրժուազիայի միջավայրում։ Ինչպես նկատում է հեղինակը, թեմայի լուծումն իր հասարակական գեղագիտական բովանդակությամբ տվյալ երկերից յուրաքանչյուրում տարբեր է. «Նույն թեմայի այդ երեք տարբեր լուծումները կապված են ինչպես գրողների ստեղծագործական անհատականության, գաղափարական տարբեր մոտեցման, այնպես էլ նրանց դավանած գեղարվեստական մեթոդների ներքին տարբերությունների հետ, եզրակացնում է հեղինակը։

Շիրվանզադեի պայքարը ռեալիզմի համար բովանդակալից ուսումնասիրության մեջ Ջրբաշյանը հանգամանորեն քննել է մեծանուն վիպասանի էսթետիկական հայացքները, ցույց տվել, որ մեծ գրողի լավագույն երկերը նրա աշխարհհայացքի առաջավոր, դեմոկրատական միտումների արդյունք են, իսկ նրա ռեալիզմը եղել է խորապես մտածված ու գիտակցված գեղագիտական սկզբունքների դրսևորում»։ Շիրվանզադեի էսթետիկական ըմբռնումների հատկանշական գծերից մեկը՝ արվեստի և հասարակական կյանքի սերտ կապն է։ Իսկական արվեստագետի համար գեղեցկությունն այնտեղ է, ուր նա տեսնում է կյանքի լիարյուն դրսևորումը։

Տեսական մեծ արժեք են ներկայացնում ականավոր գրողի ռեալիստական սկզբունքները։ Ջրբաշյանն այստեղ նշել է, թե ինչպես համընկնում էին Շիրվանզադեի և Բելինսկու մտքերը ճշմարտության և գեղեցկության անբաժանելիության մասին, նրանց գեղարվեստական դրույթները։ Հետևողական ռեալիստը անզիջում պայքարում է բոլոր տեսակի անկումային, հակառեալիստական հոսանքների դեմ։ «Ստեղծագործելով մի այնպիսի ժամանակաշրջանում,— կարդում ենք գրախոսվող գրքում,— երբ բուրժուական արվեստի ներկայացուցիչները բացահայտորեն դավաճանեցին ռեալիզմի ավանդներին և մեկը մյուսի ետևից հրապարակ էին հանում նորանոր անկումային «դպրոցներ» և «դպրոցիկներ» Շիրվանզադեն հենց սկզբից կռահեց ու ցույց տվեց նրանց հակաժողովրդական էությունը։ Նա երբեք չհեռացավ իր ռեալիստական դիրքերից, երբեք չշլացավ ու չըխաբվեց այդ հոսանքների կեղծ ցուցանակներով»։

Շիրվանզադեն դարձավ «առաջավոր ու ամենափրկիչ ռեալիզմի ջատագովն ու կիրառողը մեր գրականության մեջ», գրում է Ջրբաշյանը, որով նա «մասնակցում է ռեալիզմի համար մըղվող ժամանակակից պայքարին։ Եվ դրա մեջ է նրա գեղագիտական ժառանգության հիմնական արժեքը»։

Գրականագիտական վերլուծության փայլուն օրինակ է Չարենցը և Թումանյանը ուսումնասիրությունը, ուր հեղինակն անառարկելիորեն ցույց է տալիս մեր գրականության ամենացայտուն նորարար արվեստագետներից մեկի կապը հայ և համաշխարհային դասական գրականության փորձի հետ, մասնավորապես նրա վերաբերմունքը Թումանյանի ժառանգության նկատմամբ։

Արտացոլելով սիմվոլիզմի, ֆուտուրիզմի բացասական ներգործությունը մեծ պոետի գրականագիտական հայացքների, սկզբնական շըրջանի ստեղծագործությունների վրա, նրա սխալներն ու խոտորումները, տատանումները անցյալի ժառանգության գնահատման խնդրում, Ջրբաշյանը ցույց է տվել այն ուղին, որը Չարենցին բերել է «հայ կլասիկ բանաստեղծների նշանակության ճիշտ ըմբռնմանը»։ Կարդալով այս ամենը, ընթերցողը համոզվում է, որ պոեզիայի գագաթների ստեղծագործական կապը հաստատում է այն հանրահայտ դրույթը, թե սոցիալիստական ռեալիզմի գրականությունը նախընթաց գեղարվեստական ողջ զարգացման, հատկապես անցյալի ռեալիստական մեծ նվաճումների օրինական ժառանգորդն ու շարունակողն է։

Ահա և Գրական ոճավորման պրոբլեմը և Չարենցի Սայաթնովյան տաղերը, ուր Ջրբաշյանը գրում է. «Հայ բանաստեղծներից ոչ ոք, բացի Հովհաննես Թումանյանից այնպիսի մեծ հետաքրքրություն հանդես չի բերել դեպի Սայաթնովան, այնքան չի նպաստել նրա անվան և պոեզիայի մասսայականացմանը, ինչպես Չա-

օգոստոսի 2-ի համարը։

Պայմանները նույնն են, արդյունքները տարբեր հոդվածում խմբագրությունն իրականացնում է իր փայլուն նախաձեռնություններից մեկը՝ ստուգում է մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարումը, համադրում մրցակից սովխոզների արած ու չարած գործերը։ Եվ ահա թե ինչպես։ Նախ՝ գլուխը կորցնում ես «երկու տնտեսությունների» արտահայտությունն անընդմեջ կարդալուց, ապա զարմանում և, ի վերջո, տխրում ստանդարտ, երբեմն անիմաստ նախադասությունների ու արտահայտությունների առատությունից։

«Սովխոզը տաս գլխով գերակատարել է կովերի, 286-ով մանր եղջերավոր անասունների գլխաքանակի մրցությամբ ստանձնած պարտավորությունները»։

«...եթե չհաշվենք, որ 465 գլուխ էլ ներարկվել են ճարկաղիր մորթի»։

Ջոր ու ցամաք, աղքատիկ լեզու, ոչ-ճիշտ արտահայտություններ, ճապաղ նախադասություններ։ Այս ամենը հոդվածը տարրալուծում են, նպատակը կորչում է, ստվերվում։

Դժվար է գուշակել, թե կրթական ինչպիսի՞ մակարդակ պետք է ունենալ հետևյալ նախադասությունը հասկանալու համար (Դեռ պատրաստ չեն)։ «Դեռ չենք խոսում այն մասին, որ ոչինչ չի արվում կաթսայատան շինարարության ուղղությամբ, որը խիստ անհրաժեշտ է գոնե այս ուսումնական տարում կենտրոնական ջեռուցման սիստեմը, որի ներքին աշխատանքներն ավարտված են դեռևս երեք տարի առաջ, գործարկելու համար»։ Իսկ «խոտհնձի օրվա անը դանդաղ է ընթանում», «ճանրային ճոտի կուշտ ու տաք ձմռան ճամար», «աշխատում է վերանորոգման վրա» արտահայտությունների համար կարելի էր գտնել գրական ավելի ճիշտ ձևեր։

Օրինակներն առատ են և, ցավոք, խմորը հունցվում է առանց ալյուրը գոնե մեծ ցանցով մաղելու։ Այս ամենից մի հետևություն կարելի է անել. թերթը կարելույն չափ պետք է ջանա տուրք չտալ անհարկի, մտացածին արտահայտությունների, չմեղանչի մեր բազմահարուստ, ճկուն լեզվի առաջ, ջանա մտքերը ձևակերպել հստակ և լակոնիկ ոճով։ Միայն այս դեպքում կստեղծվի ձևի և բովանդակության ներդաշնակ միություն, կվերանան լեզվական թերությունները, կբարձրանան թերթի մակարդակն ու հեղինակությունը։ Չենք կասկածում, որ «Բարեկամության» խմբագիր ընկ. Ծատուրյանը այսուհետ լուրջ ուշադրություն կնվիրի թերթի կուլտուրային։

ԽՈՒԴՈՅԱՆ ԼԻԴԱ



Խմբագրության հասցեն՝ Երևան—16

Հեռախոսներ, գլխավոր խմբագիր՝ 7—16—90, պատասխանատու քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 15/I 1968 թ.։

ՎՖ 04218 Պատվեր 2736 Տիրաժ 10.948 Գինը 25 կոպ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայ ժողովրդի պատմություն։ Հատոր է։ Սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում։ Հայկական Սովետական Սոցիալիստական հանրապետությունը սոցիալիստական շինարարության ժամանակաշրջանում 1917—1941, Եր., ԳԱ հրատ., 1967, 654 էջ։

ՀՍՍՀ ԳԱ Պատմության ինստիտուտի հրատարակած այս հատորը ընդգրկում է 1917 թվականի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից մինչև 1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմի սկիզբն ընկած ժամանակաշրջանը, որն ինչպես սովետական բոլոր ժողովուրդների, այնպես էլ հայ ժողովրդի կյանքում տեղի ունեցած մեծ վերափոխումների շրջան էր։

ՊԱՐՍԱՄՅԱՆ Վ. Ա.—Հայ ժողովրդի պատմություն (1801—1917 թթ.), III հ.։ Եր., «Հայաստան» հրատ., 1967, 535 էջ։

Արխիվային նյութերի ու գրականության հիման վրա հեղինակը շարադրել է հայ ժողովրդի պատմությունը։ Դասագիրքը նախատեսված է ԲՈՒՀ-երի ուսանողների համար։

Հայաստանի Կոմունիստական կուսակցության պատմության ուրվագծեր։ Եր., «Հայաստան» հրատ., 1967, 822 էջ։ Նույնը ռուսերեն՝ 639 էջ։

Հայերեն և ռուսերեն հրատարակված ներկա «Ուրվագծեր»-ում հեղինակային կոլեկտիվը շարադրել է Հայաստանի կոմկուսի պատմությունը՝ սկսած մարքսիստական գաղափարների տարածման, բանվորական շարժման առաջին քայլերից մինչև մեր օրերը։ Ներկա հրատարակությունը լրացված է նոր նյութերով և հաշվի են առնվել 1963 թվականին լույս տեսած ուրվագծերի վերաբերյալ արված քննադատական դիտողությունները։

ՀԱԿՈԲՅԱՆ Թ., ՕՀԱՆՅԱՆ Կ., ԱՎԱԳՅԱՆ Գ., ՆԱԶԱՐՅԱՆ Խ.,—Սովետական Հայաստան (Հայրենագիտական ուրվագիծ)։ Եր., «Միտք» հր., 1967, 256 էջ։

Այս գրքում ներկայացված են Հայաստանի պատմական անցյալի, ներկա աննախընթաց նվաճումների և հայ ժողովրդի կուլտուրայի, գիտության զարգացման ընթացքը։ Այն ունի ճանաչողական մեծ արժեք։

ԳԱՎՐԻԼՈՎ Լ. Մ. ԵՎ ԿՈՒՏՈՒԶՈՎ Վ. Վ.—ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ։ Կարևորագույն դեպքերի ժամանակագրություն։ Մ., Քաղհրատ, 1967, 160 էջ։

Այստեղ նկարագրված են 1917 թվականի փետրվարի 27-ից մինչև 1918 թվականի հունվարը տեղի ունեցած կարևորագույն իրադարձությունները։

ՇՈՒՄՍԿԻ Վ. Ս.—Քաղաքականություն առանց ապագայի։ ԳՍԴԿ Աջ լիդերների հակակոմունիզմը։ Մ., «Международное отношение», հրատ., 1967, 344 էջ։

Բազմապիսի տվյալներով հեղինակն արտացոլել է Գերմանական Սոցիալ-դեմոկրատ կուսակցության աջ ղեկավարների հակակոմունիստական քաղաքականությունը, որը ծառայում է միայն ֆաշիստական ուժերին։

Կուսակցական-կազմակերպական աշխատանք—Հարցեր և պատասխաններ։ Եր., «Հայաստան» հրատ., 1967, 249 էջ։

Սույն գրքույկում շարադրված են կուսակցական կազմակերպչական աշխատանքների ընթացքում ծագած հարցերը (ՍՄԿԿ շարքերի ընդունելություն, կուսակցական ժողովներ, երաշխավորություն, քննարկում, քվեարկություն և այլն) և դրանց պատասխանները։ Այն մեծ չափով կօգնի կուսակցական գործիչներին և, հատկապես, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին։

Նյութեր Ներսիսյան դպրոցի պատմությունից—Եր., 1967, 80 էջ։

Ներսիսյանցիների կամավոր ընկերության խմբագրական մարմինն այս գրքույկում զետեղել է իրենց առաջին գիտական նստաշրջանում կարդացված զեկուցումները. հետաքրքրական տեղեկություններ կան դպրոցի կազմակերպման, ականավոր մտավորական գործիչների մասին։

ԳԻՆԸ 25 Կ. 

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԵՌԱԽՈՍ-ԺԱՄԱՑՈՒՅՑ

ԱՄՆ-ում վերջերս պատրաստել են մինիատյուր հեռախոսային ապարատ, որը կրում են ձեռքի վրա, ինչպես ժամացույցը։ Ապարատի գործողության շառավիղը 60 մետր է։ Այդպիսի հեռախոսը շատ հարմար է արտադրության մեջ օգտագործելու համար։

## ՏԱՔԱՑՎՈՂ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐ

Արևելագերմանական ֆիրմաներից մեկն արտադրում է սարքեր ճանապարհների սառցումը կանխելու և վերացնելու համար։ Սարքը կազմված է ուղղահայաց միացված պողպատե խողովակներից, որոնց մեջ տեղադրված են տաքացնող հաղորդալարեր։ Այն կարելի է օգտագործել ինչպես նոր ճանապարհներ պատրաստելիս, այնպես էլ ճանապարհածածկը վերանորոգելիս։

## ՃԱՌԱԳԱՅԹԸ ՁԵՎՈՒՄ Է ՄԱՀՈՒԴԸ

«Էլիոտ—Աուտոմասիոն» ֆիրման պատրաստել է լազեր, որը կոստյումի կտորներ է ձևում 3 մետր/րոպե արագությամբ։ Այդպիսի ձևման առավելությունն այն է, որ կտորի եզրերը շատ հավասար ու հարթ են ստացվում, միաժամանակ մաքրվում են եզրերի թելերը։

## ԱՌԱՆՑՔԱԿԱԼՆԵՐ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ

Առաջին առանցքակալների գործարանի ինժեներներն ու կոնստրուկտորները գիտատեխնիկական ընկերության սկզբնական կազմակերպության պլաստմասսաների սեկցիայի ակտիվ մասնակցությամբ վերջերս մշակել են գնդիկավոր առանցքակալներ, որոնց օղակները պատրաստում են պլաստիկայի և գրաֆիտի խառնուրդից։

Այդպիսի օղակների պատրաստման ինքնարժեքն իջել է երեք անգամ։

## ԼՈՒՅՍԸ ԿԱՐԳԱԴՐԻՉ

Խճուղային մայրուղիները զարդարում են հարյուրավոր ժամանակակից ինքնատիպ կառուցվածք ունեցող ավտոտաղավարներ։ Լուսավորող լամպերի միացման ու անջատման համար ծախսվող էլեկտրաէներգիան խնայելու նպատակով ռացիոնալիզատոր Ի. Եֆրեմովը մոնտաժել է ոչ բարդ Ф—2 ավտոմատը, որի մեջ օգտագործում են ФСК—1 ֆոտոռեզիստորը և երկու ռելե. բնական արտաքին լուսավորությունը մեծացնելիս ռեզիստորի դիմադրությունը խիստ իջնում է։ Համապատասխանաբար աճում է գործադիր ռելեի հոսանքը, և այն անջատում է էլեկտրալամպերը տաղավարում։ Մութն ընկնելիս տեղի է ունենում հակառակ պրոցես, և ավտոմատը միացնում է արհեստական լուսավորությունը։

Սարքը կարելի է հարմարեցնել տարբեր աստիճանի լուսավորվածության համար։

Ф—2 ֆոտոանջատիչների մասսայական թողարկումն սկսված է Բելգրադի ձուլման մեխանիկական գործարանում և Մոսկվայի մետաղյա իրերի երկրորդ գործարանում։

## ՆԵՅՏՐՈՆԸ ՄՆՈՒՄ Է ՉԵԶՈՔ

Մի ժամանակ ֆիզիկոսների միջավայրում կասկած առաջացավ, որ բացարձակ չեզոք համարվող նեյտրոնը իրականում կրում է (թեև աննշան) էլեկտրական լիցք։

Որպեսզի վերջնականապես փարատեն այդ կասկածը, Մասսաչուսեթսի տեխնոլոգիական ինստիտուտի գիտնականների մի խումբ կատարեց մի շարք փորձեր, որոնք ցույց տվեցին, որ եթե նեյտրոնը էլեկտրական լիցք ունենա էլ, ապա նրա մեծությունը չի գերազանցում էլեկտրոնի $1,9 (\pm 3,7) \cdot 10^{-18}$ լիցքին։ Կարելի է հաշվել, որ նեյտրոնը իսկապես էլեկտրականապես չեզոք է (ԱՄՆ)։